### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։




# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5

ՄԱՅԻՍ 1972

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание







Пролетарии всех стран, соединяйтесь!

Коммунистическая партия Советского Союза

# ПРАВДА

Газета основана 5 мая 1912 года В. И. ЛЕНИНЫМ

Орган Центрального Комитета КПСС

№ 127 (19635) • Суббота, 6 мая 1972 г. • Цена 3 коп.

## ՎԱԹՍՈՒՆԱՄՅԱ ՓԱՌԱՊԱՆԾ ՈՒՂԻ

Վաթսուն տարի առաջ, 1912 թվականի մայիսի 5-ին, Ռուսաստանի հեղափոխական մարտերի փոթորկոտ ալիքների մեջ ծնվեց բոլշևիկյան «Պրավդա» թերթը, որի բազմաբեղուն գործունեությունն անխզելիորեն կապված է կոմունիստական կուսակցության հերոսական պատմության հետ:

«Պրավդայի» առաջին համարի լույսընծայումը Լենինն անվանեց «Առաջին ծիծեռնակը այն գարնան, երբ ամբողջ Ռուսաստանը կծածկվի բանվորական թերթեր ունեցող բանվորական կազմակերպություններով»: Հեղափոխական գարնան այդ «առաջին ծիծեռնակը» միաժամանակ դարձավ մարդկության գարնան՝ մեծ Հոկտեմբերի ավետաբերը, սոցիալիստական աշխարհացունց հեղափոխության մրրկահավը, նոր հասարակարգի կառուցման պրոպագանդիստը, ագիտատորն ու կազմակերպիչը, աշխատավոր զանգվածների կոմունիստական դաստիարակության դպրոցը, մեր բազմազգ երկրի բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամության, նրանց ինտերնացիոնալ միասնության ջահակիրը, լենինյան գաղափարների ճշմարտության տարածողը ողջ աշխարհում:

Վաթսունամյա փառապանծ ուղի անցած «Պրավդան» իր գործունեությունը խարսխեց հեղափոխական մարքսիզմի մարտական օրգանների հարուստ ավանդույթների վրա:

Բոլշևիկյան մամուլի վիթխարի շենքի հիմնաքարը դրեց Ռուսաստանի առաջին մարքսիստական թերթը՝ լենինյան «Իսկրան»: Այստեղ էր, որ առաջին անգամ Լենինը ձևակերպեց բանվոր դասակարգի հեղափոխական մամուլի սկզբունքները՝ կուսակցականությունը, մարքսիստական բարձր գաղափարայնությունը: Թերթը փայլուն կատարեց իր պատմական դերը՝ մարքսիզմի հիմունքները օպորտունիզմից պաշտպանելու, նոր տիպի կուսակցություն հիմնելու լենինյան պլանը կենսագործելու, Ռուսաստանում բոլշևիկյան կուսակցություն ստեղծելու գործում:

«Իսկրայի» գործը, նրա ավանդները, հեղափոխական նոր մամուլի սկզբունքները շարունակեցին ու զարգացրին բոլշևիկյան մյուս թերթերը: Ռուսա-

կան առաջին հեղափոխության ժամանակաշրջանում այդ ուղղությամբ մեծ դեր խաղացին «Վպերյոդ», «Պրոլետարի», «Նովայա ժիզն» բոլշևիկյան թերթերը: Իսկ ցարական ռեակցիայի դաժան տարիներին, երբ բոլշևիկներն ստիպված էին անցնել խոր ընդհատակ, կուսակցության գործը, բանվոր դասակարգի հեղափոխական շահերը պաշտպանում էին Լենինի ղեկավարած «Սոցիալ դեմոկրատ» և «Ռաբոչայա գազետա» թերթերը:

«Պրավդան» իր մարքսիստական ուղղությամբ, հեղափոխական մտքի սրությամբ, նոր, կոմունիստական գաղափարների թարմությամբ, աշխատավոր մարդու ամենակենսական շահերի պաշտպանությամբ արմատապես տարբերվում է ժամանակի բոլոր թերթերից: Ուստի, պատահական չէ, որ կարճ ժամանակամիջոցում այն ձեռք բերեց մեծ հեղինակություն, նվաճեց բանվորա-գյուղացիական լայն կանգվածների սերն ու համակրանքը: Թերթը լույս էր տեսնում 40 հազար օրինակ տպաքանակով, որը ժամանակի համար բավական պատկառելի թիվ էր:

Լենինյան «Պրավդայի» շուրջը համախմբվել էին մեծ թվով բանվոր թղթակիցներ, որոնք հետագայում դարձան կուսակցության գործուն աշխատողները, կոմունիզմի անմահ գաղափարների տարածողները: Թերթին ակտիվորեն աշխատակցում էին կուսակցության լավագույն ուժերը՝ Ն. Ն. Բատուրինը, Կ. Ս. Երեմեևը, Ն. Կ. Կրուպսկայան, Մ. Ս. Օլմինսկին, Ն. Ի. Պոդվոյսկին, Ն. Գ. Պոլետաևը, Կ. Ն. Սամոյլովան, Յա. Մ. Սվերդլովը, Ի. Վ. Ստալինը, Ն. Ա. Սկրիպնիկը և ականավոր այլ բոլշևիկներ: «Պրավդայի» ոգին, նրա ղեկավարը Վ. Ի. Լենինն էր: Բավական է ասել, որ միայն նախահեղափոխական շրջանում «Պրավդայի» համար նա գրել է ավելի քան 280 հոդված, որոնք էապես որոշում էին թերթի դեմքը, գաղափարական ու քաղաքական գիծը, նրա բնույթը:

Նախահոկտեմբերյան «Պրավդան» վիթխարի դեր խաղաց Ռուսաստանի հեղափոխական շարժումների պատմության, կուսակցության ողջ գործունեության մեջ: Թերթն անողոք պայքար էր մղում օպորտունիզմի, լիկվիդատորների, բանվոր դասակարգի գործին դավաճանող բոլոր ուժերի դեմ, մերկացնում նրանց երեսպաշտությունն ու հակահեղափոխական գործելակերպը, վեհորեն ծածանելով մարքսիզմի դրոշը: «Պրավդան» կոլեկտիվ պրոպագանդիստ ու ագիտատոր էր, աշխատավոր ժողովրդի շահերի համար պայքարող գիտակից մարտիկների դաստիարակողը, պրոլետարիատի հեղափոխական գալիք մեծ գոտեմարտի նախապատրաստման մարտնչող օրգանը, որն կգալիորեն նպաստեց բոլշևիկյան շարքերի աճին ու միասնությանը, ամրապնդեց կուսակցության կապը մասսաների հետ:

Աշխատավոր մարդիկ սիրեցին թերթը, այն համարելով իրենց ամենօրյա խորհրդատուն ու բարեկամը: Իսկ ցարական կառավարությունն ի դեմս նրա տեսավ իր ոխերիմ թշնամուն:

1914 թվականին, առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին, ցարական իշխանություններն ավերեցին «Պրավդայի» խմբագրությունը, փակեցին թերթը և ձերբակալեցին աշխատակիցներին: Սակայն ռեակցիայի ճիգերն ապարդյուն էին: Կոմունիստական գաղափարներն ամուր արմատներ էին գցել աշխատավոր կանգվածների շրջանում, և այլևս հնարավոր չէր կասեցնել հեղափոխության օրեցօր աճող ալիքը:

Իմպերիալիստական պատերազմի տարիներին բոլշևիկյան կուսակցությունը, գտնվելով խոր ընդհատակում, պրոպագանդիստական ու կազմակերպական հաստատակամ աշխատանքով համախմբում էր հեղափոխության ուժերը, պայքարում հանուն հեղափոխության հաղթանակի:



1917 թվականին, երբ բուրժուա-դեմոկրատական հեղափոխության հողմերը ջարդուփշուր արին ինքնակալությունը, բոլշևիկյան կուսակցությունը դուրս եկավ ընդհատակից: 1917 թվականի մարտի 5-ին, եռամյա ընդհատումից հետո, Պետրոգրադում սկսեց լույս տեսնել «Պրավդան»: Հեղափոխական մասսաները նորից լսեցին իրենց հին բարեկամի ճշմարտության ձայնը: «Պրավդան» դարձավ սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման մարտական օրգանը:

Ինչպես միշտ, «Պրավդայի» ոգին Վ. Ի. Լենինն էր, որը, 1917 թվականի ապրիլի 3-ին, տասնամյա հարկադրական վտարանդիությունից վերադառնալով Պետրոգրադ, մտավ խմբագրության կազմում և անմիջականորեն ստանձնեց կուսակցության կենտրոնական օրգանի ղեկավարությունը: Մեծ առաջնորդը «Պրավդայի» էջերում հանդես էր գալիս հեղափոխության ամենահրատապ պրոբլեմներին նվիրված հոդվածներով: Միայն 1917 թվականի մարտից մինչև հոկտեմբեր թերթը տպագրել է ավելի քան 200 լենինյան գործեր:

Ժամանակավոր կառավարությունը, սոցիալիստական հեղափոխության մոտալուտ հաղթանակից սարսափած, հուլիսյան օրերին կատաղի հարձակում գործեց բոլշևիկների և «Պրավդայի» դեմ: Կառավարությունը չորս ամսվա ընթացքում վեց անգամ արգելեց թերթի տպագրությունը: Բայց հակահեղափոխությունը չկարողացավ ճնշել բոլշևիկյան օրգանի մարտական ու լենինյան ոգին: Թերթը, այլ անվանումներով, շարունակեց իր պայքարը հանուն սոցիալիստական հեղափոխության հաղթանակի: Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո այն լույս տեսավ իր հին անունով: Հետհոկտեմբերյան առաջին համարում տպագրված «Հին դրոշի ներքո» խմբագրական հոդվածում կարդում ենք. «Այսօրվանից մեր թերթը սկսում է լույս տեսնել իր հին անունով՝ «Պրավդա»... Երկու օր առաջ Կերենսկու կառավարությունը որոշել էր երկրի երեսից ջնջել «Ռաբոչի պուտը»: Բայց երկրի երեսից ջնջվեց Կերենսկու կառավարությունը, պրոլետարական-գյուղացիական հեղափոխությունը հաղթանակել է...

Այսուհետև մենք պայքարը կշարունակենք «Պրավդայի» հին դրոշի ներքո, թերթ, որի մեջ աշխատավոր կանգվածները վաղուց վարժվել են տեսնել իրենց հեղափոխական մտքի ու կամքի արտահայտությունը»:

Հիրավի, երբ թերթում ենք «Պրավդայի» արդեն պատմություն դարձած էջերը, մեր առջև հառնում են կոմունիստական կուսակցության, սովետական ժողովրդի փառապանծ գործերը, նրանց ավելի քան կեսդարյա հերոսական ուղին: Այստեղ ընթերցողը տեսնում է սովետական երկրի առաջին պատմական քայլերը, խաղաղության, հողի վերաբերյալ լենինյան դեկրետները, որոնք վիթխարի նշանակություն ունեցան ո՛չ միայն մեր երկրի ժողովուրդների, այլև ամբողջ աշխարհի կարգացման համար:

Քաղաքացիական պատերազմի տարիներին «Պրավդան», կուսակցության ղեկավարությամբ, մեծ դեր խաղաց հեղափոխության նվաճումները պաշտպանելու, սովետական իշխանությունն ամրապնդելու, օտարերկրյա ինտերվենտներին ջախջախելու գործում: Թերթը բանվորա-գյուղացիական կանգվածներին տոգորում էր սոցիալիզմի հաղթանակի նկատմամբ աներեր հավատով, բարձրացնում նրանց հեղափոխական ոգին, փառաբանում աշխատավորների հե-

րոսական գործերը ռազմաճակատներում և թիկունքում: Անշեղորեն ու հաստատակամորեն վարելով լենինյան գիծը, թերթը հսկայական գործ կատարեց պրոլետարիատի դիկտատուրայի ամրապնդման, շահագործող դասակարգերի ճնշման, բանվորների ու գյուղացիների դաշինքի սերտացման, հակահեղափոխական կուսակցությունների և մենշևիկների, էսեռների, տրոցկիստների ու այլ խմբավորումների ջախջախման ուղղությամբ:

«Պրավդան» բոլոր միջոցներով նպաստում էր հաջողությամբ լուծելու տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրները, կուսակցությանն օգնում իրականացնելու մեկ երկրում սոցիալիզմի կառուցման լենինյան տեսությունը, հետևողականորեն պայքարում երկրի ինդուստրացման ու էլեկտրիֆիկացման, գյուղատնտեսության կոոպերացման, կուլտուրական հեղափոխության, ժողովուրդների բարեկամության ամրապնդման համար:

Սովետական առաջին հնգամյակների տարիներին «Պրավդան» փառաբանում էր սոցիալիզմ կառուցող մարդկանց աշխատանքային սխրանքները, ուղղություն և տոն տալիս նրանց լավագույն նախաձեռնություններին: Այդ տարիներին երկրի բոլոր խոշոր կառույցներում գործում էին թերթի շրջիկ խմբագրությունները, որոնց թղթակիցներն ամեն օր ընթերցողներին իրազեկ էին դարձնում գործերի վիճակի, կատարվող իրադարձությունների մասին:

Հայրենական մեծ պատերազմի ահեղ օրերին, երբ վճռվում էր մեր հայրենիքի բախտը, ֆաշիզմի դեմ կատաղի գոտեմարտում պաշտպանվում ո՛չ միայն սովետական ժողովրդի, այլև աշխարհի բոլոր ժողովուրդների ազատությունն ու անկախությունը, «Պրավդան», սովետական մամուլի ծանր հրետանին, իր գրավոր խոսքի հզոր կրակն ուղղել էր թշնամու դեմ: Թերթն ամեն օր լուսաբանում էր մեր կուսակցության ու ժողովրդի տիտանական ջանքերը ռազմաճակատում և թիկունքում: Նրա էջերում արտացոլված է Հայրենական մեծ պատերազմի հերոսական ողջ տարեգրությունը, որը սոցիալիստական կարգերի հզորության ու անխորտակելիության, լենինյան գաղափարների կենսահաստատության փայլուն վկայությունն է:

Հետպատերազմյան շրջանում «Պրավդան», օգտագործելով տպագիր խոսքի բոլոր միջոցները, հետևողական պայքար ծավալեց ժողովրդական տնտեսության վերականգնման, սոցիալիստական շինարարության հետագա զարգացման, սովետական պետության և սոցիալիստական լագերի երկրների ամրապնդման համար:

Սովետական մամուլի վաթսունամյա առաջատարը՝ «Պրավդան», ինչպես սոցիալիստական մեր մեծ հայրենիքի պատմության բոլոր ժամանակահատվածներում, այնպես էլ այսօր շարունակում է իր հերոսական ավանդույթները, պաշտպանում սովետական ժողովրդի ամենակենսական շահերը, հաջողությամբ իրականացնում կոմունիստական կուսակցության առաջադրանքները:

Ներկայումս Սովետական Միության բազմամիլիոն աշխատավորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, մեծ ոգևորությամբ կենսագործում են ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, անձնուրաց աշխատանքով իրագործում նոր հնգամյակի վիթխարի կանխագծումները: «Պրավդան», ինչպես նաև սովետական ողջ մամուլն իրենց բոլոր ուժերը կենտրոնացրել են ՍՄԿԿ XXIV համագումարի մեծ ծրագրումները պրոպագանդելու և իրականացնելու, նոր հնգամյա պլանը հաջողությամբ կատարելու համար:

ՍՄԿԿ XXIV համագումարում, ասաց Լ. Ի. Բրեժնևը, իններորդ հնգամ-



յակի գլխավոր խնդիրն է՝ սոցիալիստական արտադրության տեմպերի աճագացմամբ, արտադրության արդյունավետության բարձրացմամբ, գիտատեխնիկական պրոգրեսի ծավալմամբ և աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ կզալիորեն բարելավել ժողովրդի կենսամակարդակը: Այս կարևոր խնդիրը լուծելու համար հնգամյա պլանով նախատեսվում է առաջիկայում ևս մեծապես զարգացնել ծանր արդյունաբերությունը, որպես մեր երկրի տնտեսական հզորության ու պաշտպանության հիմք, ինչպես նաև ապահովել արագ վերելքը, որոնք արտադրում են ժողովրդական սպառման առարկաներ: Հնգամյակում համակողմանիորեն զարգանալու է նաև գյուղատնտեսությունը: Մեծ չափով կավելանա հացահատիկի, տեխնիկական կուլտուրաների, գյուղատնտեսական մթերքների արտադրությունը:

Այս վիթխարի պրոբլեմների խոր լուսաբանմամբ են տոգորված «Պրավդայի» ամենօրյա էջերը: Մասսաների շրջանում ջերմ համակրանք վայելող «Պրավդան» ինչպես և մեր մամուլի մյուս օրգանները ղեկավարվում են լենինյան այն ցուցումներով, որ ամբողջ պրոպագանդան պետք է խարսխված լինի տնտեսական շինարարության առաջավոր փորձի, կոնկրետ, կենդանի օրինակների վրա:

Հիմք ընդունելով լենինյան դրույթները, «Պրավդան» լայնորեն լուսաբանում է արդյունաբերության, գյուղատնտեսության առաջավորների փորձը, նրանց ստեղծագործական նախաձեռնությունը, սովետական մարդկանց աշխատանքային սխրանքները: Թերթը հետևողականորեն անդրադառնում է գիտատեխնիկական առաջընթացի, արտադրության տնտեսական արդյունավետության, խնայողության խստագույն ռեժիմի հաստատման, կապիտալ շինարարության բարելավման, ձեռնարկությունների վերակառուցման, գյուղատնտեսության հետագա վերելքի, աշխատավորների գիտակցականության բարձրացման հրատապ պրոբլեմներին:

Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ XXIV համագումարից հետո մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն ընդունեց մի շարք կարևորագույն որոշումներ՝ սոցիալիստական մրցության հետագա զարգացման, կոմունիստական աշխատանքի դպրոցների գործունեության, աշխատավորների տնտեսագիտական կրթության բարելավման, բնակչության աթեիստական դաստիարակության, գրական-գեղարվեստական գրականության քննադատության վերաբերյալ: «Պրավդայի» օրինակով այդ որոշումների անդուլ պրոպագանդումը դարձել է սովետական մամուլի սևեռուն ուշադրության առարկան:

Մեր օրերում անհամեմատ բարձրացել է սոցիալիստական մրցության մակարդակը: ՍՄԿԿ XXIV համագումարից հետո մոսկվացիների ու լենինգրադցիների նախաձեռնությամբ սկսվեց սոցիալիստական մրցության մի հուժկու ալիք՝ հնգամյա պլանները հաջողությամբ կատարելու համար: «Պրավդան», մեր երկրի մամուլի բոլոր օրգաններն անմիջապես սկսեցին տոն տալ այդ շարժմանը: Այժմ սոցիալիստական մրցությունն իրոք դարձել է համաժողովրդական, ընդգրկելով ավելի քան 75 միլիոն աշխատավորների:

Սովետական բազմամիլիոն ընթերցողներին քաջ հայտնի է այն հարձակողական ու արգասաբեր պայքարը, որ «Պրավդան» մղում է իմպերիալիզմի պրոպագանդիստական մեքենայի քաղաքական ու գաղափարական դիվերսիաների դեմ: Մերկացնելով բուրժուական գաղափարախոսների մանյովրները և

իմպերիալիստների գաղութատիրական նկրտումները, «Պրավդան» ակտիվորեն պաշտպանում է խաղաղության, ազատության և սոցիալական առաջընթացի համար մարտնչող բոլոր ուժերին:

Խաղաղության և ժողովուրդների բարեկամության, նրանց ազատության ու ազգային անկախության, դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի համար մղվող պայքարի ազնիվ նպատակներով է տոգորված կոմունիստական կուսակցության և սովետական պետության արտաքին քաղաքականությունը: Ղեկավարվելով ՍՄԿԿ արտաքին քաղաքական այդ կուրսով, «Պրավդան» ժուռնալիստական մեծ վարպետությամբ է լուսաբանում միջազգային հարցերը: Թերթը պարբերաբար պարզաբանում է Սովետական Միության խաղաղասիրական արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքները, հաստատակամորեն պայքարում ռեակցիայի ու պատերազմի իմպերիալիստական ուժերի դեմ, պաշտպանում ամերիկյան ագրեսորների դեմ Հնդկաչինի ժողովուրդների հերոսական պայքարը, հետևողականորեն մերկացնում համաշխարհային հետադիմական ուժերի պրովոկացիոն գործողությունները: Ժամանակակից պայմաններում լենինյան արտաքին քաղաքական գծի կենսագործման համար, գրում է «Պրավդան», հսկայական նշանակություն ունի խաղաղության և միջազգային համագործակցության ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած կոնստրուկտիվ և ռեալիստական ծրագիրը: Համագումարի գաղափարները նպաստում են համաշխարհային սոցիալիստական համագործակցության, կոմունիստական և բանվորական շարժման հետագա համախմբմանը, բարերար ազդեցություն են գործում ամբողջ միջազգային իրադրության վրա:

«Պրավդան» պատշաճ տեղ է հատկացնում սոցիալիստական երկրների վերընթացի, դրանց ժողովուրդների բարեկամության ու միասնության ամրապնդման հարցերին: Նրա էջերում հաճախակի հանդես են գալիս արտասահմանյան երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավար գործիչները, տպագրվում են եղբայրական կուսակցությունների կարևորագույն փաստաթղթերը, պարզաբանվում են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և նրանց համերաշխության մարքսիստական-լենինյան սկզբունքները: Միաժամանակ, «Պրավդան» մեծ ջանքեր է թափում միջազգային կոմունիստական շարժման միասնության համար, անաղարտ պահում մարքսիստական-լենինյան տեսությունը, սկզբունքային քննադատություն ծավալում ռևիզիոնիզմի, դոգմատիզմի, նացիոնալիզմի ամեն կարգի դրսևորումների դեմ:

Հիրավի, «Պրավդայի» բազմաբեղուն գործունեության մեջ կարևորագույն տեղ են գրավում մարքսիստական լենինյան տեսության հարցերը: Կուսակցության կենտրոնական օրգանը պատշաճ ուշադրություն է նվիրում աշխատավորներին կոմունիստական գաղափարախոսության և բարոյականության ոգով դաստիարակելու հարցերին, սովետական մարդկանց գիտակցությունից ու կենցաղից մեր հասարակարգին խորթ երևույթների, անցյալի մնացուկների վերացմանը: «Պրավդան» ընթերցողներին դաստիարակում է լենինյան գաղափարայնությամբ, թշնամական գաղափարախոսությունների, շովինիզմի ու նացիոնալիզմի բոլոր դրսևորումների նկատմամբ անհաշտվողականության ոգով:

Լրագրի կիզակետում է մնում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը, որը վճռական ազդակ է նոր մարդու հոգևոր կերպարի ձևավորման գործում: Կոմունիստական շինարարության արդի էտապում ինտերնացիոնալ դաստիարակության էությունը, գրում է «Պրավդան», ամենից առաջ, ժողովուրդների բարեկամության լենինյան սկզբունքների, մեր կուսակցության լենինյան ազգային քաղաքականության ու նրա իրական նվաճումների խոր պարզաբանումն է, սովետական յուրաքանչյուր աշխատավորի մեջ այնպիսի իհանալի գծերի կարգացումը, ինչպիսիք են սոցիալիստական հայրենասիրությունը և ինտերնացիոնալիզմը: Այդ գործում պետք է համակողմանի օգտագործել Սովետական Միության բոլոր հանրապետությունների բանվոր դասակարգի, աշխատավորների հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթները, լայնորեն ցույց տալ, որ մեր ժողովուրդների ազգամիջյան հարաբերությունների հետագա զարգացումը, բարեկամության ամրապնդումը բարերար են ազդում սովետական հասարակության կյանքի բոլոր ոլորտների՝ էկոնոմիկայի ու քաղաքականության, գաղափարախոսության ու բարոյականության, մշակույթի ու կենցաղի վրա: Գլխավորն այն է, որ մասսաների մեջ ըստ ամենայնի ամրապնդվի միասնական սոցիալիստական հայրենիքին, կոմունիզմ կառուցողների ինտերնացիոնալ մեծ ընտանիքին պատկանելու գիտակցությունը:

Այս տարի մեր սոցիալիստական հայրենիքի բոլոր ժողովուրդներն անհուն բերկրանքով, աշխատանքային ու քաղաքական ակտիվությամբ նշելու են իրենց փառապանծ պատմության դարակազմիկ տարելիցը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կեսդարյա հոբելյանը: «Պրավդան», սովետական մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը համակողմանիորեն լուսաբանում են ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը՝ «ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին», սովետական հանրապետությունների կյանքը, լենինյան ազգային քաղաքականության նվաճումները:

«Պրավդայում» և սովետական մամուլի մյուս օրգաններում տպագրված հոդվածներում ու կանապան նյութերում հար ընդգծվում է, որ միայն ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների ստեղծարար ջանքերի ու ռեսուրսների միավորումը հնարավորություն ընձեռեց պատմական կարճ ժամանակամիջոցում հաղթահարելու տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը, ինդուստրացնելու երկիրը, սոցիալիզմ կառուցելու և Սովետական Միությունը դարձնելու կարգացած հզոր տերություն: Սոցիալիստական մեր մեծ հայրենիքի պետական միասնությունն ապահովեց նրա անխորտակելի պաշտպանական հզորությունը, որը սովետական բոլոր ժողովուրդների ազատության ու անկախության հուսալի երաշխիքն է: «Պրավդան» իր ուշագրավ հոդվածներով ու ճոխ բովանդակությամբ իմաստավորում է սովետական տասնհինգ հանրապետությունների միության ստեղծագործական վիթխարի խիզախումները:

Սովետական մամուլի ուժը այն է, որ նա սերտորեն կապված է աշխատավոր մասսաների հետ, հանդիսանում է նրանց ամենանվիրական իղձերի ու խոհերի թարգմանը, հենվում լայն հասարակայնության վրա: Սովետական մամուլը հիրավի ժողովրդական է: Ամեն օր «Պրավդան» մեր երկրի, ինչպես նաև աշխարհի շատ վայրերից ստանում է հազարավոր նամակներ, թղթակցություններ: Նրա էջերում հաճախակի հանդես են գալիս անվանի գիտնականները, գրողները, արվեստագետները, արդյունաբերության ու գյուղատնտեսության առաջավորները, կուսակցական ու պետական գործիչները:

Մեր կուսակցության հավատարիմ օգնականները՝ սովետական մամուլի բոլոր օրգանները, այդ թվում և «Պրավդան», ղեկավարվելով լենինյան տրադիցիաներով, պաշտպանում են այն ամենը, ինչը նոր է, առաջավոր, համարձակ ու սկզբունքային, քննադատում են տնտեսական ու կուլտուրական շինարարության, կուսակցական ու պետական ապարատում եղած թերությունները, խարազանում բյուրոկրատիզմը, քարացածությունը, քաշքշուկը, անցյալի տհաճ մնացուկները: Չկա սովետական հասարակարգի, կոմունիստական կուսակցության գործունեության մի ոլորտ, որը չլուսաբանեն «Պրավդան», սովետական մամուլը:

Անցնելով գաղափարական վեհ խոյանքների վաթսունամյա փառահեղ ուղի, «Պրավդան» դարձել է աշխարհի ամենաճանաչված ու հեղինակավոր թերթերից մեկը: Նա երկրագնդի բոլոր ծայրերում ունի բազմաթիվ բարեկամներ, որոնք սիրում են ունկնդրել սովետների հզոր երկրի, մեր կուսակցության ճշմարիտ խոսքին:

Սովետական ժողովրդի ու աշխարհի առաջադեմ մարդկության սիրված թերթն այժմ ամեն օր լույս է տեսնում 9 միլիոն 200 հազար տպաքանակով: Այն իր ընթերցողների թվով աշխարհի ամենատարածված օրաթերթն է, մի հանգամանք, որը մեծապես որոշում է նաև տպագրվող նյութերի բնույթը, որոնք պետք է պարզ ու հասկանալի լինեն միլիոնավոր ընթերցողների համար և, միաժամանակ, համապատասխանեն կուսակցության տպագիր այն օրգանի մակարդակին, որը իսկական ներգործություն է ունենում համաշխարհային քաղաքականության վրա:

«Պրավդան» իր մարտական լենինյան տրադիցիաներով, անցյալ ու ներկա վաստակաշատ գործունեությամբ սովետական մյուս բոլոր թերթերի համար բարձր կուսակցականության ու սկզբունքայնության վառ օրինակ է ծառայում: «Պրավդան», մեր մամուլը անդուլ կերպով մասսաներին են տանում մարքսիզմ-լենինիզմի, կոմունիզմի գաղափարների լույսը, հանդիսանալով կոմունիստական կուսակցության քաղաքականության անխոնջ պրոպագանդիստն ու հավատարիմ առաջամարտիկը:

Սովետական մամուլը մեր ժողովրդի հոգևոր կյանքի բաղկացուցիչ մասն է: Ներկայումս Սովետական Միությունն ունի ապատ, իսկական ժողովրդական մամուլի լայն ցանց: Մեր երկրում լույս է տեսնում 9 հազար թերթ և մոտ 6 հազար ժուռնալ՝ համապատասխանաբար 140 և 150 միլիոն միանվագ տպաքանակով, այսինքն՝ Սովետական Միության յուրաքանչյուր ընտանիքին ընկնում է 4 թերթ և ամսագիր:

Ճշմարտության ու խաղաղության մեծ ջահակիր «Պրավդան» և ողջ սովետական մամուլը, ինչպես միշտ, այսուհետև ևս կմնան մեր կուսակցության մարտական օգնականները, բոլոր ուժերը կնվիրաբերեն կոմունիզմի համար սովետական ժողովրդի հերոսական ու անձնուրաց պայքարի մեծ ու սրբազան գործին:





Ա. Գ. ԱԴՈՅԱՆ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ԱՆԽԱԽՏ ԴԱՇԻՆՔԸ

Բոլոր ազգերն ինքնորոշվելու իրավունք ունեն:
Վ. Ի. ԼԵՆԻՆ

*Ավելի քան մեկ դար առաջ (1866 թ.), միջազգային հեղափոխական բանվորների կազմակերպության կենտրոնական խորհրդի պատգամավորներին հղած հրահանգում, Կ. Մարքսը շեշտել է. Պրոլետարիատի միջազգային կազմակերպության նպատակն է հասնել այն բանին, որ իրենց ազատագրման համար պանապան երկրների մաքառող բանվորները ոչ միայն զգան, այլև գործեն որպես եղբայրներ ու ընկերներ: Մինչ այդ, պատմության համակողմանի հետազոտությունից նա հանգել էր այն հաստատ համոզման, որ մարդկության վերածնության մեծագույն առաքելությունը պրոլետարիատին է վիճակված, որը կիրագործվի բանվորների ինտերնացիոնալ անխախտ դաշնադրությամբ:*

*Հայտնի է, որ իրենց պատմության ընթացքում ազգերն ու ժողովուրդները միմյանց հետ արյունալի կռիվներ են մղել, որովհետև այդպես են թելադրել կեղեքող դասակարգերի, իշխողների շահերը: Ուժեղները ոչնչացրել ու կեղեքել են թույլերին, հզոր ազգերն ու ժողովուրդները շահագործել ու ճնշել են փոքրերին: Այսպիսով, հարյուրամյակների ընթացքում չբավականանալով հայրենի երկրի թշվառների արյամբ ու քրտինքով, մի բուռ կեղեքողներ աշխատավորներին տարբեր պատրվակներով ու նկատառումներով, կռվի են մղել մեկ այլ ժողովրդի կամ ազգի դեմ: Պորտաբույծ դասակարգերը միշտ էլ չուրովի են «լուծել» ազգային հարցը, նորանոր տառապանքներ ու զրկանքներ պատճառելով աշխատավոր մարդկության:*

*Ահա թե ինչու ժամանակին Ֆ. Էնգելսը գրել է. ժողովուրդների միջև խաղաղությունն ապահովելու համար հարկավոր է վերացնել ազգային բոլոր բախումները և յուրաքանչյուր ժողովուրդ պետք է լինի անկախ ու իր սեփական տան տերը:*

Թևակոխելով իմպերիալիզմի փուլը, միջազգային կապիտալիզմն իր շահատենչությանը հագուրդ տալու նպատակով ավելի սաստկացրեց բազում ժողովուրդների ու ազգերի ստրկական կեղեքումը։ Ճնշվող ազգերը հար և ամենուր երկարամյա ազատագրական մարտեր են մղել ու շարունակում են մղել իմպերիալիստական գիշատիչների դեմ։ Սակայն միակ քաղաքական-պատմական ուժը, որը կարողացավ ճիշտ ելք մատնանշել ազգային-ազատագրման միտող ժողովուրդներին, դա մարքսիստ-լենինյաններն էին։ Հիրավի, առաջինը Ռուսաստանի բանվոր դասակարգն էր, որ իր եղբայրական զգացմունքը հեղափոխական գործի վերածեց և հենված Ռուսաստանի կեղեքված ժողովուրդների եղբայրական բազուկին՝ մեկընդմիշտ տապալեց բուրժուական կարգերը, որով և ցարիզմի լծի տակ հեծող ազգերին վերջնական ազատություն պարգևեց։ Ազատագրելով իրեն կեղեքումից, Ռուսաստանի՝ ինտերնացիոնալիստական ոգով տոգորված պրոլետարիատը, լենինյան կուսակցության ղեկավարությամբ, վերածնության և անարգել զարգացման նոր ուղիներ հարթեց աշխարհի կեղեքվող պրոլետարիատի և ազգերի համար։

Մինչև սոցիալիստական հեղափոխության հաղթանակը, Լենինն իր համախոհներին անդուլ ուսուցում էր. որևէ ազգի ազատագրումը կարևոր ու անհրաժեշտ քայլ է իր իսկ սոցիալական ազատագրման ճանապարհին, մանավանդ որ մեր դարում բոլոր ժողովուրդների թշնամին իմպերիալիզմն է, որի դեմ ազգերի մղած ազատագրական կռիվն օրգանապես շաղկապվում է բանվոր դասակարգի հեղափոխական գործողությունների հետ։ Չպետք է մոռանալ, որ ազգային-ազատագրական մարտերում ժողովուրդների դրսևորած ատելանքն ու ինքնագիտակցությունը շեշտված հակաիմպերիալիստական միտում ունեն, որպիսիք պետք է ուղղել գաղութակալ բուրժուազիայի դեմ։ Ուստի, այդ մեծ պայքարում ճնշված ժողովուրդներին եղբայրության գիտակցությամբ տոգորելը՝ պրոլետարիատի հաղթանակի կարևորագույն ազդակներից մեկն է։

Մարքսիստները մշտապես այն հայացքն են պրոպագանդել, թե միայն դասակարգային շահագործման ու հակամարտությունների վերացմամբ կանհետանան և ազգային բախումները։ Հետևաբար, ըստ էության, ազգային հարցն ակներևորեն սոցիալական է։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության դարակազմիկ նվաճումներից մեկն էլ այն է, որ արմատապես փոխվեցին ազգային հարաբերությունների երբեմնի հիմքերը՝ բուրժուական արտադրահարաբերությունները։ Սովետական կարգերի ժամանակ հաստատվեց սոցիալիստական, հանրային սեփականություն, որը կայուն հիմք դարձավ սովետական ազգերի ու ժողովուրդների անտրոհելի միասնության համար։ Ահա թե ինչու մարդկային պատմության մեջ երբևէ եղած հեղափոխություններից մեծագույնը՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, բուրժուական կեղեքումից ազատելով աշխատավորությանը, ճընշված ազգերի լիակատար զարգացման ուղին հարթեց։

Ռուսաստանի բոլշևիկների կուսակցությունը սոցիալիստական կարգերի հաստատումից շատ առաջ զինված էր ազգային հարցի տեսության լենինյան ծրագրով։ Ուստի, բնականոն էր, երբ 1917 թ. նոյեմբերի 7-ին «Բանվորներին, զինվորներին ու գյուղացիներին» հղված սովետների համառուսաստանյան II համագումարի հաստատած Դիմումում՝ սովետական պետության այդ առաջին ակտում, ընդգծված է, որ սովետական իշխանությունը Ռուսաստանի բոլոր ազգերին ու ժողովուրդներին օժտում է ինքնորոշման և ինքնիշխանության լիակատար իրավունքով։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի այդ վեհ սկզբունքից բխող դրույթը հանգամանորեն սևեռվեց նաև 1917 թ. նոյեմբերի 15-ին ազդարկված Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայում։ Հռչակելով ազգերի հավասարության, ազգային և ազգային-կրոնական ամեն բնույթի արտոնությունների վերացման անհրաժեշտությունը, սովետական իշխանությունն իր տերիտորիայի վրա բնակվող ավելի քան հարյուր ազգերին ու ժողովուրդներին (աշխարհում եղած 900-ից) իրական եղբայրության հաստատուն հիմքերն արկանեց։

Այսպիսով, համաշխարհային պատմական զարգացման նոր, սոցիալիստական փուլը նշանավորող այդ աշխարհաշեն գաղափարների կենսագործման նախապայմաններ ստեղծվեցին։ Արտադրամիջոցների հանրային սեփականությունը և մարդկանց արտադրահարաբերությունների սոցիալիստական էությունը հանդիսացան սովետական բոլոր ազգերի ու ժողովուրդների ինտերնացիոնալ համախմբման վճռական նախադրյալները։ Հեղափոխության ու քաղաքացիական կռիվների կրակներում թրծված նրանց հոգեբանությունը հուսալի երաշխիք դարձավ լենինյան ծրագրի հաջող կենսագործման համար։

Սովետական ազգերի ու ժողովուրդների ավելի քան կեսդարյա դաշինքը կռող կոմունիստական կուսակցությունն իր ազգային քաղաքականությունը կիրառելիս, մշտապես առաջնորդվել է լենինյան այն ցուցումով, որ անհրաժեշտ է հատուկ զգուշություն ցուցաբերել ազգերի ու ժողովուրդների զգացմունքների նկատմամբ, ուշադրությամբ կիրառել նրանց հավասարության սկզբունքը, ջանալ, որպեսզի նրանց ինքնորոշումը լինի իրական, որպեսզի վերանա անվստահության հողը և ամրապնդվի սովետական հանրապետությունների կամավոր դաշինքը։

* * *

Արձագանքելով ազատարար Հոկտեմբերի կոչերին, Ռուսաստանի կեղեքված ազգերն ու ժողովուրդները մեկը մյուսի ետևից փարեցին սովետների դրոշին։ Սովետների հաղթական երթը երկրով մեկ հաջողությամբ պսակվեց. Ուկրաինայում, Բելոռուսիայում, Ադրբեջանում, Բուխարայում, Հայաստանում, Վրաստանում և փոքր ինչ անց՝ Միջին Ասիայում ևս հաստատվեցին բանվորագյուղացիական ազգային իշխանություններ։ Դարերով տառապած ժողովուրդների այդ առաջխաղացը, կենդանի և բախտորոշ արձագանքն էր Լենինի այն խոստումնալի հայտարարությանը (արված տակավին 1917 թ.), որ Ռուսաստանը թող լինի ազատ հանրապետությունների միություն։ Նա ուսուցում էր, որ իմպերիալիզմի ներկա փուլում կապիտալն ամենուր գերաճում է ազգային պետությունների շրջանակները, և սոցիալ-պատմական այդ նոր հանգամանքներում գնալով ազգային կեղեքումը սաստկանում է ու ծավալվում։ Հետևաբար, մարքսիստները պարտավոր են նորովի քննարկել ու լուծել ազգային հարցը, այսինքն՝ հաստատ գիտենալ, որ հաղթական սոցիալիզմի պատմական երթի համար իմպերիալիզմի դեմ մարտնչող ազգային-ազատագրական բանակների գրոհները խոշորագույն նշանակություն ունեն։ Կապիտալիզմը վաղուց դարձել է ազգերի մեծագույն կեղեքիչը։ Եվ միջազգային հեղափոխական պրոլետարիատի ազատագրական պայքարը վարող կոմունիստներին է վիճակված ազգերի ազատագրական կռիվներն իմպերիալիզմի դեմ՝ օրգանա-

պես զուգորդել պրոլետարիատի սոցիալական մարտերի հետ։ Ահա թե ինչու հեղափոխական պրոլետարիատի շահերը պահանջում են ազգերի իրական հավասարության ու եղբայրության հետևողական իրագործում։

Տակավին 1919 թ. դեկտեմբերին Ուկրաինայի բանվորներին ու գյուղացիներին հղած պատմական իր նամակում, Վ. Ի. Լենինը հիմնավորեց սովետական ազգերի եղբայրության պետական ձև տալու իր գաղափարը, ասելով. «Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում, այնպիսի միություն, որը ոչ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի նկատմամբ, այնպիսի միություն, որը հիմնված լիներ լիակատար վստահության վրա, եղբայրական վստահության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա» (հ. 30, էջ 368)։

Սակայն ազգային հարաբերությունների այս նոր և վեհ գաղափարի առաջադրմամբ հանդերձ, Լենինը խորապես գիտեր նման միության գոյավորման իրական դժվարությունները, դժվարություններ, որոնք խոր արմատներ ունեին ճնշված ու ճնշող ազգերի դարավոր բախումներում, դրանից բխող ազգային ատելության, նախապաշարումների, հոգեբանության ու զգացմունքների ոլորտներում։ Հանգամանք, որի անտեսումը կարող էր խափանել լենինյան ծրագրի կենսագործումը։ Ահա թե ինչու սովետական ազգերի ու ժողովուրդների անկեղծ եղբայրության պետական միավորման կերտող Լենինը նշված նամակում ընդգծում էր. «Այդպիսի միությունը չի կարելի միանգամից իրագործել, դրան հարկավոր է հասնել մեծագույն համբերությամբ և զգուշությամբ աշխատելով, որպեսզի գործը չփչանա, որպեսզի անվստահություն չառաջանա, որպեսզի վերացվի կալվածատերերի և կապիտալիստների դարավոր ճնշումից մասնավոր սեփականության և դրա բաժանման ու վերաբաժանման համար եղած դարավոր թշնամանքից մնացած այդ անվստահությունը» (նույն տեղը)։

Այսպիսով, 1919 թ. Լենինը հստակ և սպառիչ բանաձևել է սովետական հանրապետությունների միության անտրոհելի սկզբունքները՝ հանրապետությունների իրավահավասարություն, կամավորություն, լիակատար վստահություն ու անկաշառ եղբայրություն։ Սույն սկզբունքների անշեղ կիրառմամբ միայն հնարավոր եղավ պատմության մեջ երբևէ չեղած աշխատավորների այնպիսի միասնություն, որը խորտակեց սոցիալիզմի հայրենիքի դեմ իմպերիալիստական տերությունների գործադրած ոտնձգությունները և պարարտ հող ստեղծեց Ռուսաստանի բուրժուական ազգերի սոցիալիստական վերածնության համար։

Սովետական հանրապետությունների կազմավորման առջև ծառացած դժվարությունների մասին խոսելիս Լենինը, անշուշտ, նկատի ուներ և սուբյեկտիվ բնույթի արգելքները։ Նրան շատ լավ հայտնի էր, որ կոմունիստներին վիճակվել է երկար տարիների ընթացքում հետևողական պայքար մղել ազգերի ճնշման ու կեղեքման դեմ, ցեղային ու ազգային թշնամության կոսմոպոլիտիզմի ու ազգային նիհիլիզմի, շովինիզմի ու նացիոնալիզմի, ազգային սահմանափակության ու նախապաշարումների դեմ։ Հայտնի է կուսակցության հետևողական պայքարը ազգային հարցում ցուցաբերած «ձախ» հեղափոխականների՝ Ն. Բուխարինի և Գ. Պյատակովի ռեակցիոն հայացքների դեմ։ Այն տարիներին, երբ կուսակցությունը հաշվի առնելով սովետների գործունեության կարճատև փորձը, ձեռնարկեց հանրապետությունների միավորման լե-



նինյան նախագծի կենսագործմանը, Ի. Ստալինն ու Դ. Մանուիլսկին հանդես եկան, այսպես կոչված, «ավտոնոմիզացիայի» իրենց նախագծով։ Սովետական անկախ սոցիալիստական հանրապետությունների պետական միավորումը համարելով «գերկարևոր», Լենինը խստորեն քննադատեց «ավտոնոմիզացիայի» նախագիծը, ընդգծելով, որ այն «արմատապես սխալ էր և վաղաժամ»։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն հավանություն տվեց Լենինի նախագծին՝ ստեղծել միանգամայն նոր պետական կազմավորում, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միություն, որում բոլոր հանրապետությունները միավորվում են հավասար իրավունքներով։ Ուկրաինայի, Բելոռուսիայի, Անդրֆեդերացիայի և սովետների համառուսաստանյան համագումարները լիովին հավանություն տվին լենինյան նախագծին, որի սկզբունքները շարադրվեցին ՍՍՀՄ սովետների առաջին համագումարի դեկլարացիայում։ Բուրժուական աշխարհի ազգային թշնամանքին ու անիրավությանը, գաղութային ստրկությանը և շովինիզմին, ազգային կեղեքումներին ու ջարդերին, իմպերիալիստական կռիվներին ու վայրագություններին, նորաստեղծ սովետների աշխարհը հակադրեց՝ խաղաղության ու ազգերի փոխադարձ վստահության, ազգային ազատության ու հավասարության, ժողովուրդների խաղաղ համակեցության ու եղբայրական համագործակցության վսեմ սկզբունքները։ Ի լուր աշխարհի ողջ մարդկության, Դեկլարացիան հռչակեց լենինիզմի այն սկզբունքը, որ ազգերի ու ժողովուրդների եղբայրական համագործակցությունն իրականություն կդառնա միայն սովետների դրոշի ներքո, պրոլետարիատի դիկտատուրայի ամրապնդման հիման վրա։

«Մեր բազմազգ երկրում,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին որոշման մեջ,— ազգային հարցը հանդես էր գալիս որպես սոցիալիստական հասարակարգի կառուցման արմատական հարցերից մեկը։ Նրա ճիշտ լուծումից էր մեծապես կախված նոր հասարակարգի բախտը։ Միայն կոմունիստական կուսակցությունը, որն արտահայտում է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների կենսական շահերը, որը վարում է լենինյան ազգային քաղաքականություն, կարող է բոլոր ազգերին ու ազգություններին համախմբել միասնական ինտերնացիոնալ եղբայրության մեջ և նրանց ջանքերն ուղղել նոր հասարակարգի ստեղծման նպատակին։ Նա պատվով կատարեց պատմական այդ խնդիրը, որովհետև անշեղորեն առաջնորդվում էր մարքսիզմ-լենինիզմի տեսությամբ»։

Հիրավի, ՍՍՀՄ կազմավորմամբ ու ամրապնդմամբ, մեծ Հոկտեմբերի կենարար գաղափարները մարմնավորվեցին սովետական բոլոր ազգերի ու ժողովուրդների ստեղծագործ աշխատանքում, քաղաքական ու տնտեսական հզոր վերելքում, որի շնորհիվ այդ միությունը դարձավ անպարտելի։ Այն դարձավ կեղեքվող մարդկության առաջավոր տենչերի ու ձգտումների հուսալի փարոսը։ Սովետական Միությունն է այն պատմական ուժը, որը զորավիգ է մնում իմպերիալիզմի դեմ մղվող տարբեր երկրների աշխատավորների՝ հանուն սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության հաղթանակի մղվող պայքարում։

Հանդիսանալով պետականության միանգամայն նոր տիպ, իր շեշտված դեմոկրատիկ, իրոք, աշխատավորական էությամբ, ՍՍՀՄ իր կեսդարյա հրապուրիչ օրինակով ազատագրական լուսավոր ուղի է ցույց տալիս պրոգրեսիվ

մարդկության երթի համար։ Ընթանալով կոմունիստական կուսակցության նշած ուղիով, Ռուսաստանի հեղափոխական պրոլետարիատը երկրի բազմազգ հանրության գլուխն անցած, պատվով է կատարում տառապող մարդկության ազատագրման իր պատմական միսիան։ Ահա թե որն է ազգերի ու ժողովուրդների լենինյան դաշինքի վեհ իմաստը, նրա պատմական վիթխարի դերն ու նշանակությունը մարդկության առաջընթացի համար։

* * *

Որո՞նք են սովետական ազգերին ու ժողովուրդներին պարգևած ՍՍՀՄ անվիճելի բարիքները։

Սովետական անծայրածիր հայրենիքի բոլոր ազգերը, ժողովուրդներն ու էթնիկական հանրությունները կարճ ժամանակամիջոցում հասան տնտեսական, քաղաքական ու կուլտուրական այնպիսի բարձր զարգացման, որի մասին նրանք երբևէ չէին երազել։ Դրա շնորհիվ աննախընթաց բարձրացավ աշխատավորների կենսամակարդակը, նրանք դարձան գրագետ և, իրոք, կուլտուրական։ Մի քանի տասնամյակների ընթացքում ցարական Ռուսաստանի երեկվա հետամնաց, ճեճկված ժողովուրդները սովետական արևի տակ հասակ առան ու բարգավաճեցին. Թևակոխելով սոցիալիստական հասարակության շեմից ներս, նրանք ճաշակեցին իրական հավասարության օգտավետ պտուղները։ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունն իր դրոշի ներքո ապրող բոլոր ժողովուրդներին օժտեց տնտեսա-տեխնիկական ինդուստրիալ հզոր պատվանդանով, որը նրանց հոգևոր ծաղկման և կուլտուրական վերելքի հաստատուն գրավականը դարձավ։

Սովետական հայրենիքի պատմական նվաճումները կարելի է արտահայտել մի քանի պերճախոս փաստերով։

Արդյունաբերական արդյունքի արտադրանքը ՍՍՀՄ-ում

| | 1913 թ. | 1970 թ. | 1975 թ. |
|---|---|---|---|
| Էլեկտրաէներգիա մլրդ կվտ-ժամ | 2,0 | 740 | 1030— 1070 |
| Նավթ (ներառյալ գազի կոնդենսատը) մլն տոննա | 10,3 | 349 | 480— 500 |
| Քարածուխ մլն տոննա | 29,2 | 624 | 689— 695 |
| Բնական գազ մլրդ խմ | — | 198 | 300— 320 |
| Պողպատ մլն տոննա | 4,3 | 110 | 142— 150 |
| Սև մետաղյա գլանվածք մլն տոննա | 3,6 | 92,5 | 101— 105 |
| Հանքային պարարտանյութեր (պայմանական միավորով) մլն տոննա | 0,09 | 55,4 | 90 |
| Սինթետիկ խեժեր ու պլաստմասսաներ— հազար տոննա | — | 1672 | 3457 |
| Ցեմենտ մլն տոննա | 1,8 | 95,3 | 122— 127 |
| Գործվածքեղեն բոլոր տեսակի մլրդ քմ | 2194 | 8852 | 10500—11000 |
| Կաշվե կոշիկներ— մլն զույգ | 68 | 676 | 800— 830 |
| Կենցաղային սառնարաններ— հազար հատ | — | 4140 | 6686 |

Այս թվերը վկայությունն են այն վիթխարի թռիչքի, որպիսին կատարեցին ՍՍՀՄ ազգերն ու ժողովուրդները։ Սովետական իշխանության տարիներին երկրի տնտեսական կյանքի բոլոր բնագավառներում կատարվեցին այնպիսի հսկայական առաջընթաց քայլեր, որոնց շնորհիվ ՍՍՀՄ դարձավ աշխարհի հզորագույն բանվորա-գյուղացիական պետությունը։ Իրավահավասարների կամավոր միության մարմնացում ՍՍՀՄ— կեսդարի ընթացքում այնպիսի մեծ նվաճումներ ձեռք բերեց, որոնք հիմնովին փոխեցին մեր ժողովուրդների հոգևոր աշխարհը։ Երկրի ողջ էկոնոմիկան վարելով սոցիալիստական հարաբերությունների ու արտադրաուժերի ռացիոնալ զարգացման հունով, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը այսօր էլ շարունակում է իր արագընթաց երթը դեպի բարձյալի կոմունիստական հասարակություն։



Տնտեսական, տեխնիկական և կուլտուրական իրենց աննախընթաց հաջողություններով սովետական ազգերը պարտական են այն բախտորոշ և պրոլետարական ինտերնացիոնալիզմի էությունից բխող իսկությանը, որ հաջողվեց կոմունիստական կուսակցությանը տակավին հեղափոխական ընդհատակում ու քաղաքացիական գոռ մարտերում կոփել և հեղափոխական ուժերի դրոշի ներքո համախմբել Ռուսաստանի բոլոր ժողովուրդների առաջավոր մարտիկներին, նրանց տոգորել անձնուրացության վառ օրինակներով՝ հանուն սոցիալիստական հեղափոխության հաղթանակի։ Հաղթանակ, որի դրոշները ներկվեցին սովետների համար զոհված հազարավոր մարդկանց արյունով։ Այդ իսկ հաղթանակի համար, սոցիալիստական կարգերի հաստատման համար մղված դժվարին ու տևական գոռ պայքարում սերտացավ սովետական ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունը։ Եղբայրություն, որը սրբագործված ու ամրակայված է հարյուր հազարավոր կարմիրբանակայինների, Ռուսաստանի բոլոր ժողովուրդների, հատկապես ռուս ժողովրդի անձնվեր զավակների արյամբ։ Եվ պատահական չէր, որ Հայրենական մեծ պատերազմի ծանր օրերին եղբայրական այդ անսասան դաշինքը դարձավ սովետական բանակի թուր-կայծակին։



Կոմունիստական գաղափարներով տոգորված այդ հրաշագործ եղբայրության շնորհիվ էր միայն, որ ծաղկեցին ու առավել մերձեցան սովետական ազգերն ու ժողովուրդները։ Պատմության մեջ առաջին դեպքն էր, երբ հզոր մի ընտանիքի պատկանող հարյուրից ավելի ժողովուրդներ ու ազգեր, մեծագույն հաջողություններով պսակեցին ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական իրենց կուլտուրաները։ Բազմաթիվ ժողովուրդներին գիր ու գրականություն ստեղծելու սքանչելի պայմաններ ստեղծեց սովետական ազգերի լենինյան դաշնադրությունը։ Հաղթանակած սոցիալիզմը կյանքի և ազատ ստեղծագործության կոչելով աշխատավորական զանգվածների աշխարհաշեն ներթաքուն կարողությունները, մեծապես խթանեց նրանց հումանիստական կգացմունքների, ինտերնացիոնալ գիտակցության, աշխատանքային սխրանքների, ազգային ինքնաճանաչման և առողջ հոգեբանության ձգտումների դրսևորմանը ի փառս սովետական մեծ հայրենիքի։ Անցյալի կուլտուրաներից վերցնելով այն ամենը, ինչ, իրոք, արժեքավոր է նոր կյանքի կառուցման համար, ընդամենը կես դարի ընթացքում վերածնված սոցիալիստական ժողովուրդները աննկարագրելի չափով հարստացրին սովետական կուլտուրայի գանձարանը մարդկային հոգու անմահ կոթողներով։

Սնվելով սոցիալիստական արտադրահարաբերությունների բարերար ոլորտից, տոգորված լենինյան աշխարհայացքով, համակված կոմունիզմի կառուցման իդեալներով, սովետական ազգերն ու ժողովուրդները դաստիարակվելով ստեղծագործ աշխատանքի, դասակարգային կռվի ու սոցիալիզմի կառուցման համար մղվող պայքարում, կես դարի ընթացքում հիմնականում մա-



2. «Լենինյան ուղիով», № 5



քըրվեցին անցյալի սոցիալական «բծերից», դարձան սովետական սոցիալիս-
տական նոր ազգեր, և նոր ժողովուրդներ։ Մարդկության պատմության մեջ
կատարված այս թռիչքը, որը սովետական հանրության կազմավորման մեծա-
գույն արգասիքը հանդիսացավ, ինքնին նշանավորեց սոցիալիստական հասա-
րակության զարգացման առավել բարձր աստիճանը։ Սովետական քաղաքա-
ցին սկսեց ապրել ու կերտել հավատարիմ իր նոր կերպարին, կերպար, որի
բնության ցայտուն հատկանիշները՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմն է,
հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին և սովետական
վառ հայրենասիրությունը։

ՍՍՀՄ կազմավորման պատմական հիսնամյակը, ըստ էության, սովետա-
կան ազգերի սոցիալիստական վերածնության, նրանց եղբայրության ու բարե-
կամության նշանավորումն է, ՍՄԿԿ վարած լենինյան ազգային քաղաքակա-
նության հաղթության ցուցադրումը, հաղթություն, որի շնորհիվ սոցիալիզմը
դարձել է համաշխարհային անպարտելի մի համակարգ, բազմաթիվ ազգերի
անսասան դաշնադրություն, իմպերիալիզմի մարդակործան դավերն ու ոտըն-
ձգությունները խորտակող պատվար, աշխարհի բոլոր կեղեքվողների վերջնա-
կան ազատագրման առհավատչյան։

Մեծ է ու խոր ՍՍՀՄ ներգործությունը ողջ աշխարհի գոյավիճակի վրա.
կապիտալիզմի անհամաչափ զարգացման ու նրա ողջ սիստեմի համաշխար-
հային ճգնաժամի խորացմանը, սոցիալիստական լագերը հակադրում է՝ սո-
վետական ազգերի ներդաշնակ և բուռն զարգացումը, ազգային արյունալի բա-
խումներին, սովետական ազգերը հակադրում են փոխադարձ օգնության ու
բարեկամության իրենց վերընթացի արդյունավետ պրակտիկան, վերջապես,
կեղեքող ու գերիշխող ազգերի հոգեվարքին, սոցիալիստական համակարգը
հակակայում է աշխարհի բոլոր պրոգրեսիվ մարդկանց կուռ միասնությամբ։

ՍՍՀՄ ազգերի մերձեցման հաստատուն հիմքը հանրային արտադրու-
թյունն է, արտադրաուժերի վիթխարի մասշտաբով միջազգայնացման պրոցե-
ըր։ Սովետական ազգային հանրապետությունների էկոնոմիկան վաղուց ի վեր
միութենականի օրգանական և բաղկացուցիչ մասն է. Նրա զարգացման հոյա-
կապ արդյունքները՝ եղբայրական բոլոր ազգերի համերաշխ գործունեության
արգասիք։ Նման միասնականության, արտադրաուժերի լիակատար զարգաց-
ման ու ծաղկման պայմաններում միայն հնարավոր դարձավ սովետական
ազգերի համակողմանի մերձեցումն ու ծաղկումը, ողջ սովետական ընտանիքի
աննախընթաց բարգավաճումը։ Սխալվում են նրանք, ովքեր կարծում են, թե
ազգերի սոցիալիստական համագործակցության այդ ներդաշնակ պրոցեսը
սովետական ազգերի ձուլման սկիզբն է։ Այդպես են բարբաջում իմպերիալիզ-
մի ջատագովները, ովքեր չեն ըմբռնում այն իրողությունը, որ սովետական
բոլոր ժողովուրդները լիակատար նախադրյալներ ունեն դարերով իրենց մեջ
ամբարած ստեղծարար կարողությունների բազմակողմանի դրսևորման ու
ծաղկման համար։ Սովետական ազգերի մերձեցումն ու ծաղկումը օրինաչափ և
համընթաց մի պրոցես է, որի ընթացքում ավելի քան աճելու է մեր հայրենիքի
նյութական ու հոգևոր հզորությունը։ Հանդիսանալով բոլոր ազգերի ու ժողո-
վուրդների մեծ հայրենիքը, ՍՍՀՄ իր վերընթացով նպաստում է յուրաքան-
չյուր սովետական հանրապետության զարգացմանը, հարուցում սովետական
հայրենասիրության և ազգային-ինտերնացիոնալ հպարտության զգացմունք-
ների նորանոր պոռթկումներ։ Այս բոլորը հասուն սոցիալիստական հասա-



րակության բնորոշ հատկանիշներն են, որոնք ծագել ու գոյավորվել են ՍՍՀՄ կազմավորման համընթաց։

ՍՍՀՄ զարգացման օրինաչափ արդյունքն է սովետական ժողովուրդ հանրության գոյավորումը, միասնական հայրենիքի, սոցիալիստական միասնական պետականության բարգավաճումը։ Մեծ Միության մեջ միավորված բոլոր հանրապետությունների ընդհանուր և միևնույն սոցիալական կառուցվածքի առկայությունը, դաշնակից ազգերի ու ժողովուրդների նպատակի նույնությունը՝ կոմունիզմի կառուցումը, ինքնին նշանավորում են մարդկության զարգացման նոր դարաշրջանը։ Սոցիալ-պատմական սույն իրողությունները չվերացնելով սովետական ժողովուրդների ազգային կերպարանքը, նպաստում են նրանց հոգևոր աշխարհի միջազգայնացման ընթացքի բյուրեղացմանը, ազգային սահմանափակության, ինքնամեկուսացման ու էգոիզմի հաղթահարմանը, ազգամիջյան՝ ռուսաց լեզվի արմատավորմանը և դրանց համընթաց՝ բոլոր ազգերի լեզուների անարգել զարգացմանն ու սովետական ապրելակերպի նյութա-բարոյական հանգամանքների կատարելագործմանը։

Սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների ազգային պետականությունը նրանց քաղաքական հիմքն է, ազգային առավել առաջավոր հարաբերությունների կոնսոլիդացման և ինտերնացիոնալացման վճռական գործոնը, որից մեծապես կախված է սովետական հանրապետությունների էկոնոմիկայի, կուլտուրայի ու լեզվի հետագա ծաղկումը, եղբայրական, ինտերնացիոնալ հոգեբանության արմատավորումը հասարակական բոլոր խավերի շրջաններում։

ՍՍՀՄ բովանդակ երկրի տնտեսական կյանքի միջազգայնացումը, աշխատանքի սոցիալիստական բաժանումը, բնականաբար, ավելի են սերտացնում սովետական ժողովուրդների փոխադարձ կապերն ու համագործակցությունը։ Այդ հանգամանքն ավելի քան ներդաշնակում է միութենական ընդհանուր և տարբեր ազգերի յուրահատուկ շահերը, համահարթում և իսկապես հավասարեցնում սովետական ազգերի տնտեսական կյանքն իր բոլոր կողմերով։ Ահա թե ինչու ՍՍՀՄ տնտեսական կյանքի միջազգայնացումը միանգամայն օբյեկտիվ, պրոգրեսիվ և օրինաչափ երևույթ է, որն անկասկած նպաստում է ժողովուրդների հոգևոր կյանքի միջազգայնացման թափին, և նմանապես խթանում սոցիալիստական ազգերի կուլտուրաների ծաղկմանը, սովետական քաղաքացիների հոգևոր աշխարհի հարստացմանը։

* * *

Հանդիսանալով Անդրկովկասի սովետական ազգերի ֆեդերացիայի ու ՍՍՀՄ պետականության կազմավորման հիմնադիրներից մեկը, ՀՍՍՀ ավելի քան հիսնամյա իր հոյակապ առաջընթացով վառ կերպով դրսևորեց սոցիալիստական ազգերի կամավոր դաշինքի կենսունակությունը, սովետական հանրապետությունների եղբայրական համագործակցության արդյունավետությունը։ Հայ ժողովրդի զավակները երբեք չեն մոռանա ՍՍՀՄ վիթխարի դերն ու նշանակությունն իրենց ազգային հանրության արագ զարգացման գործում։ Եղբայրական ռուս ժողովրդի անմիջական օգնությամբ Հայաստանում հաստատված սովետական կարգերը միայն ապահովեցին նրա այսօրվա երջանկալի կյանքը։ Տնտեսության, կուլտուրայի, հասարակական-քաղաքական կյանքում ձեռք բերած վիթխարի հաջողություններով Սովետական Հայաստանը պարտական է սովետական ազգերի մեծ ընտանիքին։

Տնտեսական բարգավաճ կյանքից, կուլտուրայի ու լուսավորության ան-
օրինակ ծաղկումից բացի, ՍՍՀՄ իրավազոր անդամ Սովետական Հայաստանը
ձեռք բերեց նաև սոցիալ-քաղաքական բնույթի անգնահատելի հասումներ։
Միայն սովետների շնորհիվ հայ ժողովուրդը վերածնվեց ու դարձավ սոցիա-
լիստական ազգ։ Այս պրոգրեսիվ առաջընթացին զուգընթաց, հաստատվեց և
ամրապնդվեց նրա ինքնիշխան ու եղբայրական բոլոր ազգերին հավասար
ազգային պետությունը՝ իր սահմանադրությամբ և մնացած բոլոր ատրիբուտ-
ներով։ Սովետական կարգերի շնորհիվ է, որ ավելի քան կես դար ծաղկում ու
բարգավաճում է հայ ժողովրդի նորագույն կուլտուրան, կուլտուրա, որն իր
բովանդակությամբ լիովին արձագանքում է սովետական բոլոր ժողովուրդնե-
րի կուլտուրաների սոցիալիստական նկրտումներին։ Նշանակալի է, որ
սովետական տարիներին շեշտակի զարգացավ ազգային հոգեբանության ին-
տերնացիոնալիստական էությունը։

ՍՍՀՄ կեսդարյա փառավոր պատմությունը հոյակապ ապացուցեց լենին-
յան ազգային քաղաքականության անկապտելի վեհությունը։ Վեհություն, որն
առնչվում է Ֆ. Էնգելսի այն պայծառ հայացքին, ըստ որի՝ ազգի ինքնուրույ-
նությունն առավել ինտերնացիոնալիստական է հենց այն դեպքում, երբ այն
իրոք ազգային է։ Պրոլետարիատի ինտերնացիոնալ շարժումն առհասարակ
հնարավոր է միայն ինքնուրույն ազգերի շրջանում։ Իսկ ամեն կարգի ինտեր-
նացիոնալ համագործակցության հիմքը, ազգային անկախությունն է։ Էն-
գելսյան այս մտքերի տեսանկյունից մերձենալով ազգային հարցի լենինյան
հարուստ թեորիային ու պրակտիկային, չենք կարող չդրվատել ՍՍՀՄ կազմա-
վորման սքանչելի կազմակերպչի հանճարեղ մտքի խորատեսությունն ու հե-
ռատեսությունը։

Սոցիալիզմը սովետական ազգերին ու ժողովուրդներին, այդ թվում և հայ
ազգին ինքնուրույն կյանքի կոչեց, խթանեց նրանց ազգային ինքնագիտակ-
ցությունը, քաղաքական ինքնորոշումը, տնտեսական, կուլտուրական և լեզ-
վական անօրինակ զարգացումը։ Այդ ամենը ՍՍՀՄ ընդհանուր զարգացման
արգասիք են, եղբայրական ժողովուրդների դաշինքի անսասանության հե-
տևանք։



Ա. Հ. ԵՍՐՅԱՆ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ՝ ՄԱՐԴԿԱՅԻՆ ՆՈՐ ՀԱՆՐՈՒԹՅՈՒՆ

Սովետական ժողովուրդը հերոսական պայքարի և աշխատանքի փառա-
հեղ ուղի է անցել։ Նա իր ձեռք բերած համաշխարհային-պատմական մեծա-
գույն նվաճումների, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկության հանդեպ իր
ինտերնացիոնալ անգնահատելի ծառայությունների համար վաստակել է հե-
րոսական, տաղանդավոր ժողովրդի հռչակ։ Անշեղորեն կենսագործելով ՍՄԿԿ
XXIV համագումարի որոշումները, մեր երկրի ժողովուրդները հաջողությամբ
լուծում են կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրները, հարթում
են ողջ մարդկության ուղին դեպի կոմունիզմ։

«Սոցիալիստական շինարարության տարիներին մեր երկրում,— ասված
է ՍՄԿԿ XXIV համագումարին տրված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,—
առաջացավ մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողո-
վուրդը։ Համատեղ աշխատանքում, սոցիալիզմի համար մղված պայքարում,
նրա պաշտպանության մարտերում ծնունդ առան դասակարգերի և սոցիալա-
կան խմբերի, ազգերի և ազգությունների նոր, ներդաշնակ հարաբերություն-
ներ՝ բարեկամության ու համագործակցության հարաբերություններ»։

Մարդկանց պատմական նոր, ինտերնացիոնալ հանրությունը՝ սովետա-
կան ժողովուրդը, առաջացել է տնտեսական, սոցիալ-քաղաքական և ազգային
հարաբերությունների բնագավառում տեղի ունեցած արմատական փոփոխու-
թյունների հիման վրա։ Առանց սոցիալիզմի կառուցման և ազգային հարցի
լուծման, անհնար կլիներ տասնյակ ազգերի և ազգությունների ինտերնացիո-
նալ հանրությունը։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ ազգային ճնշման ոչըն-
չացումը, ազգերի մերձեցումը և նրանց ինտերնացիոնալ միասնության ապա-
հովումը հնարավոր են միայն շահագործող դասակարգերի ոչնչացման, արտա-
դրամիջոցների սոցիալիստական սեփականության հաստատման, սոցիալիզմի
կառուցման պայմանով։ «Կապիտալիզմի օրով,— գրել է Վլադիմիր Իլյիչը,—
չի կարելի ոչնչացնել ազգային (և առհասարակ քաղաքական) ճնշումը։ Դրա
համար անհրաժեշտ է ոչնչացնել դասակարգերը, այսինքն՝ անհրաժեշտ է
հասնել սոցիալիզմին» (Երկեր, հ. 22, էջ 438)։

Մեր երկրում շահագործող դասակարգերի ոչնչացումը, սոցիալիզմի կառուցումը և ազգային հարցի լուծումն արմատապես վերափոխեցին բոլոր ազգերի և ազգությունների բնույթը։ Ներկայիս ռուսական, ուկրաինական, բելոռուսական, հայկական, վրացական, ադրբեջանական և մեր երկրի մյուս ազգերն այն չեն, ինչ էին մինչև նրանց մոտ սովետական կարգերի հաստատումը։ Սոցիալիստական շինարարության պրոցեսում նրանք վերածվել են որակապես նոր, ավելի բարձր տիպի ազգերի՝ սովետական սոցիալիստական ազգերի, որոնք բուրժուական ազգերից արմատապես տարբերվում են իրենց տնտեսական և քաղաքական հիմքով, գաղափարախոսությամբ, հոգևոր կերպարով, իրենց շահերով և ձգտումներով։

Սոցիալիստական ազգերի զարգացման տնտեսական հիմքը արտադրամիջոցների սոցիալիստական սեփականությունն է, որը սովետական կարգերի ամրության պատվանդանն է, սովետական մեծ հայրենիքի հարստության և հզորության, սովետական բոլոր ազգերի աշխատավորների բարեկեցության վերելքի աղբյուրը։ Եթե մասնավոր սեփականությունը և կապիտալը ծնում են նացիոնալիզմ և շովինիզմ, ազգերը բաժանում կեղեքողների և կեղեքվողների, բորբոքում ազգային երկպառակությունը, ուժեղացնում ազգային ճնշումը, ազգերին անջատում միմյանցից, ապա սոցիալիստական սեփականությունը և աշխատանքը վերացնում են ազգային ճնշումը, ազգամիջյան թշնամանքը և երկպառակությունը, մերձեցնում, բարեկամացնում, եղբայրացնում, միավորում են ազգերին։ Սոցիալիստական սեփականությունը արմատապես վերափոխում է ազգի տնտեսական կյանքի ընդհանրությունը, նոր բովանդակությամբ է օժտում նրա ներսում դասակարգերի և սոցիալական խմբերի փոխհարաբերությունները։ Բուրժուական ազգերի տնտեսական կյանքը, հիմնված լինելով արտադրամիջոցների մասնավոր սեփականության վրա, իր մեջ կրում է անտագոնիստական հակասություններ։ Այդ ազգերի դասակարգերի և սոցիալական խմբերի տնտեսական կապերը և հարաբերությունները ոչ այլ ինչ են, եթե ոչ մի բուռ շահագործողների ու կեղեքողների և հասարակության կեղեքվող մեծամասնության հարաբերություններ, ուր գնալով ավելի են սրվում դասակարգային հակասությունները։ Բուրժուական հասարակարգում արտադրության հասարակական բնույթի և արտադրանքի մասնավոր յուրացման միջև եղած հակասությունը հասցնում է տնտեսական ճգնաժամերի և ցնցումների, բանվորների գործազրկության աճման, նրանց դրության հարաբերական և բացարձակ վատթարացման, մանր ապրանքարտադրողների քայքայման, աշխատավորական լայն մասսաների աղքատացման։ Հակառակ այդ ամենի, սոցիալիստական յուրաքանչյուր ազգի տնտեսական կյանքը, հիմնված լինելով արտադրամիջոցների հանրային սեփականության վրա, միանգամայն զերծ է անտագոնիստական հակասություններից։ Սովետական կարգերում սոցիալիստական ազգերը, հաղթահարելով տնտեսա-կուլտուրական երբեմնի հետամնացությունը, փոխադարձ օգնությամբ կառուցեցին միասնական սոցիալիստական տնտեսական ընդհանուր բազա։

Սոցիալիստական յուրաքանչյուր ազգի ներսում բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և մտավորականությունը տնտեսական ամուր կապերով կապված են իրար հետ։ Նրանց կապերի, արտադրահարաբերությունների հիմքում դրված է կոմունիզմի կառուցման ընդհանուր նպատակը։ Այդ ընդհանուր նպատակն էլ հենց որոշում է նրանց տնտեսական կա-



պերի և ամեն տեսակ հարաբերությունների բնույթը, հարաբերություններ,
որոնք հիմնված են կոլեկտիվիզմի, փոխադարձ օգնության, սոցիալիստական
մրցության, ընկերական փոխադարձ հարգանքի և այլ ազնիվ սկզբունքների
վրա։ Սոցիալիստական յուրաքանչյուր ազգի ներսում բանվորների, կոլտնտե-
ականների և մտավորականների միջև ամրապնդվող կապերը և հարաբերու-
թյունները բարեկամական և եղբայրական հարաբերություններ են, կոմունիզմ
կառուցող մարդկանց հարաբերություններ։

Միաժամանակ սոցիալիստական ազգերն ունեն նաև ավելի մեծ, ինտեր-
նացիոնալ տնտեսական ընդհանրություն։ Ազգային տնտեսական ընդհանրու-
թյան և ինտերնացիոնալ տնտեսական ընդհանրության միջև անտագոնիստա-
կան հակասություն չկա և չի էլ կարող լինել, որովհետև նրանք միասնական
և իրենց բնույթով սոցիալիստական են։ Յուրաքանչյուր սոցիալիստական ազ-
գի տնտեսական նվաճումները ձեռք են բերված բոլոր ազգերի և ազգություն-
ների ընդհանուր ջանքերով, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների եղբայրական փոխ-
օգնության և սերտ համագործակցության շնորհիվ։ Միութենական բոլոր հան-
րապետությունների և մարզերի տնտեսությունները սերտ կապերով կապված
են միմյանց հետ, ներկայացնում են մեկ միասնական տնտեսական
օրգանիզմ, ամբողջ սովետական ժողովրդի սոցիալիստական անձեռն-
մխելի ունեցվածք։ Նրանք զարգանում են մեկ միասնական տնտեսական
պլանով, մեկ միասնական տեխնիկական քաղաքականության հիման վրա,
փոխադարձաբար պայմանավորում են մեկը մյուսին։ Միութենական հանրա-
պետությունների ու մարզերի միջև ծավալվում է նյութական և հոգևոր ար-
ժեքների, գիտության ու տեխնիկայի նվաճումների, որակյալ մասնագիտաց-
ված կադրերի, առաջավոր փորձի մշտական փոխանակում։

Սոցիալիստական ազգերի միջև ավելի ու ավելի զարգացող տնտեսական
կապերը, նյութական ու հոգևոր արժեքների փոխանակումը, նրանց եղբայրա-
կան փոխադարձ օգնությունն ու համակողմանի համագործակցությունը ապա-
հովում են ինչպես յուրաքանչյուր հանրապետության տնտեսական արագ
վերելքը, այնպես էլ ամբողջ Սովետական Միության ժողովրդական տնտեսու-
թյան բուռն ծաղկումը։ Դա միաժամանակ նպաստում է սովետական բո-
լոր ազգերի մարդկանց կյանքի նյութական մակարդակի բարձրացմանը։

Սոցիալիստական ազգերի զարգացման քաղաքական հիմքը հանդիսանում
է սովետական պետական կարգը։ Սովետական պետությունը բազմազգ պե-
տություն է, որը կազմավորվել է 1922 թվականի դեկտեմբերին։ Մեր երկրի
բոլոր ժողովուրդների եղբայրական համագործակցության և ինտերնացիոնալ
համախմբման ձգտումն իր գործնական մարմնավորումը գտավ բազմազգ
պետության՝ ՍՍՀՄ կազմավորման մեջ։ ՍՍՀՄ ստեղծումը պրոլետարական
ինտերնացիոնալիզմի գաղափարների խոշորագույն հաղթանակն է, լենինյան
ազգային քաղաքականության հետևողական իրագործման արգասիքը։ «Սովե-
տական Միությունը,— ասված է Սովետական Սոցիալիստական Հանրապե-
տությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության
մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— իրենով մարմնավորում է ազատ
ժողովուրդների միասնության ու բարեկամության՝ պատմության մեջ առաջ-
ներում չտեսնված հարաբերություններ։ Այդ բարեկամությունը սոցիալիզմի
մեծագույն նվաճումներից մեկն է, սովետական հասարակության հզոր շար-
ժիչ ուժը, ՍՍՀՄ բոլոր ազգությունների աշխատավորների ստեղծագործական

կառուցման անսպառ աղբյուրը՝ հանուն ամենաազնիվ նպատակի՝ կոմունիզմի կառուցման»։

Սովետական պետությունն արտահայտում է մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների արմատական շահերը, ներկայացնում ինտերնացիոնալիզմի օրինակելի տիպար։ Մեր բազմազգ պետության մեջ ժողովուրդների հարաբերությունները կառուցվեցին պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա, որը շահագործողական դասակարգերի լիակատար վերացման, մարդու կողմից մարդու շահագործման ոչնչացման և սոցիալիստական արտադրահարաբերությունների հաղթանակի հիման վրա փոխարկվեց սոցիալիստական ինտերնացիոնալիզմի։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը բազմազգ երկրի ամբողջ հասարակական, տնտեսական, կուլտուրական, քաղաքական հարաբերությունները, բոլոր հանրապետությունների, մարզերի և երկրամասերի հարաբերությունները կառուցեցին սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիման վրա։

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարներն իրենց մարմնավորումն են գտել սովետական բոլոր ազգերի և ազգությունների փոխադարձ հարգանքի ու վստահության, համակողմանի փոխօգնության ու համագործակցության, նրանց էկոնոմիկայի և կուլտուրայի բարձր զարգացման, նրանց ծաղկման և մերձեցման մեջ։

Սովետական պետական կարգը ո՛չ միայն սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, այլև սոցիալիստական դեմոկրատիզմի տիպար է, դեմոկրատիզմ, որի զարգացումը հսկայական նշանակություն ունի սոցիալիստական ազգերի համակողմանի ծաղկման ու մերձեցման, դեպի կոմունիզմը սովետական հասարակության հաջող առաջընթացի համար։

ՍՍՀՄ պետական իշխանության գերագույն օրգանի Միությունների սովետը և Ազգությունների սովետը ունեն հավասար իրավունքներ, ներդաշնակորեն զուգորդում են ազգային և ինտերնացիոնալ շահերը։ Սովետական սոցիալիստական դեմոկրատիզմի զարգացումը իր վառ արտահայտությունը գտավ այն բանում, որ պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը սոցիալիզմի հաղթանակով փոխարկվեց համաժողովրդական պետության՝ բանվոր դասակարգի առաջատար դերով հանդերձ։

Մեր երկրի ազգերի և ազգությունների ինտերնացիոնալ ընդհանրությունն ամրապնդող հզոր գործոն է նրանց բոլորի համար ընդհանուր, միասնական տերիտորիան։ Ամեն մի միութենական հանրապետության տերիտորիա հանդիսանում է Սովետական Միության ամբողջ տերիտորիայի անքակտելի մասը։ Նա և՛ ազգային, և՛ ինտերնացիոնալ է։ Սովետական հանրապետությունների միջև վաղուց վերացված են սահմանապահ զորքերը, մաքսատները, բաժանման ու անջրպետման այլ պատճառները։ Սովետական սոցիալիստական ազգերի միջև չկան և չեն կարող լինել սահմանային, տերիտորիալ կոնֆլիկտներ և ընդհարումներ, որ հատուկ են բուրժուական ազգերին։ Սովետական հարևան հանրապետությունների միջև սահմանային, տերիտորիալ առանձին փոփոխությունները կատարվում են նրանց փոխադարձ համաձայնությամբ, եղբայրական բարեկամության մթնոլորտում, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիման վրա։ Սովետական հանրապետությունների սահմանները ամբողջ աշխարհի համար ծառայում են սոցիալիստական ազգերի բարեկամության, եղբայրության և խաղաղ համագործակցության օրինակ։ Ինչպես նշ-



ված է կուսակցության ծրագրում, ՍՍՀՄ շրջանակներում միութենական
հանրապետությունների միջև եղած սահմաններն ավելի ու ավելի են կորց-
նում իրենց երբեմնի նշանակությունը, քանի որ սովետական բոլոր ազ-
գերն իրավահավասար են, նրանք զարգանում են արտադրամիջոցների սո-
ցիալիստական սեփականության հիմքի վրա և հավասար չափով բավարար-
վում են նրանցից յուրաքանչյուրի նյութական և հոգևոր պահանջմունքները։
Ցնալով միութենական հանրապետություններն ավելի ու ավելի բազմազգ են
դառնում։ Նրանց շատ քաղաքներ, արդյունաբերական խոշոր ձեռնարկություն-
ներ, մեծ կառույցներ ներկայանում են որպես բազմազգ համերաշխ կոլեկ-
տիվներ, որտեղ տարբեր ազգերի պատկանող մարդիկ աշխատում են կողք-
կողքի, համատեղ ուժերով լուծում կոմունիստական շինարարության խնդիր-
ները։ Սովետական ամեն մի ազգի ներկայացուցիչ, ո՛ր հանրապետությունում
էլ ապրելիս և աշխատելիս լինի, քաջ գիտակցում է, որ տվյալ հանրապետու-
թյունը Սովետական Միության անբաժանելի մասն է, որ ինչպես այդ մասը,
այնպես էլ ամբողջն իր հարազատ, սիրելի սոցիալիստական հայրենիքն է։

Սոցիալիստական ազգերի ինտերնացիոնալ հանրությունը կազմավորվել
է կուլտուրական կյանքի միասնության վրա։ Նրանց զարգացման հիմքում
ընկած է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական միասնական
կուլտուրան։ ՍՍՀՄ-ում տեղի է ունենում ազգային կուլտուրաների փոխադարձ
կարգացման և հարստացման, հոգևոր արժեքների փոխանակման բեղմնավոր
պրոցես։ Յուրաքանչյուր ազգի կուլտուրայի լավագույն գծերը դառնում են
բոլոր ազգերի սեփականությունը, ազգայինից վերածվում են ինտերնացիո-
նալի։ Ի հակադրություն նացիոնալիզմի և շովինիզմի թույնով ներծծված
բուրժուական կուլտուրայի, որը ժողովուրդներին բաժանում է իրարից և խոր-
թացնում, ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարներով տոգորված սովետական
սոցիալիստական կուլտուրան մեր երկրի բոլոր ազգերին և ազգություններին
ավելի ու ավելի մերձեցնում և միավորում է իրենց ընդհանուր նպատակի՝
կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։

Սովետական սոցիալիստական ազգերի ինտերնացիոնալ ընդհանրությունն
իր վառ արտահայտությունն է գտնում նրանց ավելի ու ավելի ամրապնդվող
բարոյա-քաղաքական միասնության, նրանց հոգևոր կերպարում զարգացող
ընդհանուր գծերի մեջ։ Տարբեր ազգությունների պատկանող սովետական
մարդկանց շրջանում ստեղծվել են համասովետական ավանդույթներ, հոգևոր
կերպարի այնպիսի ընդհանուր գծեր, ինչպիսիք են՝ սոցիալիստական վերա-
բերմունքը աշխատանքի նկատմամբ, կոլեկտիվիզմը և ընկերասիրությունը,
սովետական ազգային հպարտությունը, սովետական հայրենասիրությունը,
պրոլետարական ինտերնացիոնալիզմը, անհանդուրժողականությունը հակա-
հասարակական արարքների նկատմամբ և այլն։ Սովետական տարբեր ազգերի
մարդկանց գիտակցության մեջ ամուր կերպով մտել են այնպիսի ընդհանուր
արտահայտություններ, ինչպես՝ սովետական մարդ, սովետական հայրենիք,
սովետական պետություն, սովետական սահմանադրություն, սովետական կուլ-
տուրա, սովետական էկոնոմիկա, սովետական բնավորություն, սովետական
տերիտորիա և այլն։ Անընդհատ տեղի է ունենում սովետական ազգերի կյան-
քի բոլոր կողմերի ինտերնացիոնալացման պրոցես։ Սովետական ժողովուրդն
իր մեջ ներծծում է սոցիալիստական բոլոր ազգերի և ազգությունների լավա-
գույն գծերը և ավանդույթները։

Սոցիալիստական ազգերի հոգևոր կերպարի հիմքը մարքսիզմ-լենինիզմն է, որն իր էությամբ ինտերնացիոնալ է։ Նա արտահայտում է բոլոր ազգերի աշխատավորների արմատական շահերը, հանդիսանում է նրանց միասնական գաղափարախոսությունը։ Մարքսիզմ-լենինիզմը հզոր լուսարձակի պես լուսավորում է կոմունիզմի ուղին, աշխատավորներին դաստիարակում սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի, կոմունիզմի ոգով։

Այսպիսով, սոցիալական և տնտեսական, գաղափարների և նպատակների ընդհանրությունը մեր երկրի ավելի քան հարյուր ազգերին և ազգություններին միավորել է մեկ միասնական ինտերնացիոնալ ընտանիքի մեջ։ Այդ ընտանիքը յուրաքանչյուր սոցիալիստական ազգի համար հարազատ ու սիրելի է, որովհետև նա այդ ընտանիքում է ծաղկում ու բարգավաճում։ Կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի առավելություններից մեկն էլ հենց այն է, որ յուրաքանչյուր հանրապետության նվաճումները, նրա նյութական ու հոգևոր արժեքները ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների փոխօգնության, տնտեսական ու կուլտուրական համագործակցության, մարքսիզմ-լենինիզմի և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարները կյանքում կենսագործելու արդյունքն են։

Որպեսզի պառակտեն սոցիալիստական ազգերի միասնությունը, բուրժուական գաղափարախոսները ջանում են ապացուցել, թե իբր սովետական ժողովուրդը մի նոր ազգ է, որ իբր թե մեր երկրի բազմաթիվ ազգերն ու ազգությունները ձուլվել և վերածվել են սովետական ժողովրդի։ Այսպես, օրինակ, Թեհրանում հրատարակվող դաշնակցական «Ալիք» թերթում գրված է, որ կոմունիստական կուսակցությունը ջանում է «վերացնել ոչ ռուս ժողովուրդների ազգային տարբերությունները, ստեղծելու համար՝ «սովետական մարդ» և «սովետական ժողովուրդ»»։ Դաշնակցական գրչակները հայտարարում են, որ իբր կոմունիստական կուսակցության նպատակն է «ի մի ձուլել ոչ ռուս ժողովուրդների ազգային լեզուները և ազգային մշակույթները»։ Նրանք զըրպարտչական պրոպագանդա են մղում ռուսիֆիկացիայի, այսինքն՝ ոչ ռուս ժողովուրդներին ռուս ազգի մեջ ձուլելու մասին։ Հակակոմունիզմի գաղափարախոսները սովետական բազմազգ պետությունը, սոցիալիստական ազգերի և ազգությունների ինտերնացիոնալ ընդհանրությունն անհամատեղելի են համարում ազգային միասնության, ազգային ընդհանրության հետ։ Նրանք կաշվից դուրս են գալիս, որպեսզի հավատացնեն, թե իբր սովետական բազմազգ պետության մեջ աճող կենտրոնախույս, սեպարատիստական տենդենցներն անխուսափելիորեն կհասցնեն նրա քայքայման, սովետական ազգերի ինտերնացիոնալ միասնության պառակտման։

Միանգամայն չարամիտ և թշնամական են սովետական պետության, սովետական ժողովրդի հասցեին իմպերիալիստների և նրանց գաղափարախոսների հերյուրանքն ու չարամտությունները։ Պատմության անհերքելի փաստերը լիովին ապացուցում են, որ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը՝ ՍՍՀՄ-ը, որի հիսնամյակը հանդիսավորությամբ կնշվի 1972 թվականի դեկտեմբերին, ոչ թե թղթից պատրաստված ինչ-որ տնակ է, այլ ժողովուրդների կամավորության վրա հիմնված հզոր ու անխորտակելի բազմազգ պետություն։ Սովետական ժողովուրդն էլ ոչ թե ազգերի ու ազգությունների կոնգլոմերատ, հասարակ թվաբանական գումար է, այլ ինտերնացիոնալ հանրություն, մոնոլիտ միասնություն։



ՍՍՀՄ կազմի մեջ մտած յուրաքանչյուր հանրապետություն պահպանում է սահմանադրությամբ սահմանված իր իրավունքները, իր ինքնուրույնությունը, ազատ ու արագ տեմպերով զարգացնում է իր էկոնոմիկան և կուլտուրան։ Սովետական Միության բոլոր ժողովուրդները հասել են էկոնոմիկայի և կուլտուրայի բարձր զարգացման։ Դրա վառ օրինակ կարող է ծառայել Սովետական Հայաստանը։ Նա կես դարում ավելի շատ նյութական և հոգևոր արժեքներ է ստեղծել, քան մինչ այդ իր բազմադարյան ամբողջ պատմության ընթացքում։ Հայաստանը ծայրահեղ հետամնաց երկրից վերածվել է ծաղկուն հանրապետության, որն աչքի է ընկնում իր բարձր զարգացած սոցիալիստական արդյունաբերությամբ, գյուղատնտեսությամբ, գիտությամբ և կուլտուրայով։ Բավական է միայն նշել, որ սովետական իշխանության 50 տարում հանրապետության արդյունաբերական արտադրանքի ծավալն աճել է ավելի քան 180 անգամ։

Սովետական Հայաստանը, ինչպես նաև մյուս հանրապետությունները, չտեսնված համակողմանի բարձր զարգացման են հասել շնորհիվ սովետական հասարակական ու պետական կարգերի, լենինյան ազգային ճիշտ քաղաքականության, ժողովուրդների եղբայրական բարեկամության, փոխօգնության և սերտ համագործակցության։ ՍՍՀՄ ժողովուրդների ինտերնացիոնալ ընտանիքում յուրաքանչյուր ժողովուրդ ո՛չ միայն լայն հնարավորություն է ստանում զարգացնելու իր էկոնոմիկան և կուլտուրան, այլև զարգացնելու իր մայրենի լեզուն։ Վերջին մարդահամարի տվյալները լիովին հերքում են ռուսաց լեզվի մեջ ոչ ռուս ժողովուրդների լեզուների ձուլման վերաբերյալ բուրժուական գաղափարախոսների տեսակետները։ 1970 թվականի մարդահամարի տվյալները, համեմատած 1959 թվականի մարդահամարի տվյալների հետ, ցույց են տալիս, որ Սովետական Միության մեջ ո՛չ միայն պահպանվում են ժողովուրդների մայրենի լեզուները, այլև ավելի ու ավելի են զարգանում։ Ռուսաց լեզվի, որպես ազգամիջյան հաղորդակցման լեզվի ուսումնասիրությունը ոչ թե հակասում, այլ ընդհակառակը նպաստում է սովետական յուրաքանչյուր ժողովրդի մայրենի լեզվի զարգացմանը և հարստացմանը, նրան հնարավորություն է տալիս հաղորդակից լինելու Սովետական Միության և արտասահմանյան երկրների գիտությանը, գրականությանը և արվեստին, ընդօրինակելու նրանց մեջ եղած լավագույնը։ Սովետական Միության մեջ ռուսաց լեզվի միջոցով տեղի է ունենում ազգային կուլտուրաների փոխադարձ զարգացման և հարստացման պրոցես։ Այն փաստորեն դարձել է ոչ ռուս ժողովուրդների երկրորդ լեզուն։

Սովետական սոցիալիստական ազգերը փոխադարձաբար զարգանում, հարստանում և մերձենում են, ձեռք-ձեռքի տված, իրար օգնելով ընթանում են կոմունիզմի ուղիով։ Նրանցից յուրաքանչյուրը միասնական ինտերնացիոնալ ընտանիքի՝ ՍՍՀՄ-ի մեջ է տեսնում իր երջանկությունը, իր բարգավաճումը, իր պայծառ ապագան և չկա ու չի էլ կարող լինել մի ուժ, որ նրան անջատի այդ համերաշխ ընտանիքից։

«Բոլոր ժողովուրդները բազմամյա կենսափորձով համոզվել են,— ասված է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— թե ինչպիսի հարուստ պտուղներ է տալիս իրենց համախմբումը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ, թե դա

ինչպիսի անչափ լայն հնարավորություններ է բաց անում ապագայում»: Մեր
երկրի յուրաքանչյուր ազգի և ազգության ամեն մի ազնիվ ներկայացուցիչ
հպարտությամբ իրեն անվանում է սովետական քաղաքացի, սովետական
մարդ, սոցիալիստական ինտերնացիոնալիստ։ Նա, միաժամանակ, հպարտ է,
որ իր ազգի զավակն է, որ դուրս է եկել նրա ծոցից, նրան խորթ է ազգային
նիհիլիզմը, կոսմոպոլիտիզմը։ Նրա համար ազգայինը և ինտերնացիոնալը
կազմում են ներդաշնակ զուգորդություն։

Սովետական ժողովուրդը, որպես ինտերնացիոնալ հանրություն, չի կարող
լինել մի նոր ազգ, որովհետև չի անտեսում ազգային տարբերություններն ու
առանձնահատկությունները, որ դեռ գոյություն կունենան երկար ժամանակ։
Սովետական ժողովուրդը ազգայինի և ինտերնացիոնալի միասնության տի-
պար է։ Սոցիալիստական ազգերի և ազգությունների ինտերնացիոնալ ընդ-
հանրությունն անխոցելի է։ Նրանք ունեն միասնական հայրենիք՝ ՍՍՀՄ-ը,
ընդհանուր աշխարհայացք՝ մարքսիզմ-լենինիզմը, ընդհանուր նպատակ՝ կո-
մունիզմի կառուցումը։

Զարգացած սոցիալիստական հասարակության արդի պայմաններում
սովետական բոլոր ազգերի և ազգությունների ինտերնացիոնալ ընդհանրու-
թյան առավել ամրապնդման խնդիրը կարևոր նշանակություն է ստանում։
Դա կուսակցական և սովետական կազմակերպություններից, գաղափարական
բնագավառի աշխատողներից պահանջում է ուժեղացնել պայքարը բուրժուա-
կան գաղափարախոսության, նացիոնալիզմի և շովինիզմի, ազգային սահ-
մանափակվածության և բացառիկության դրսևորումների դեմ, բոլոր աշխա-
տավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության և սոցիալիստա-
կան ինտերնացիոնալիզմի, կոմունիստական բարձր գաղափարայնության
ոգով։ Որքան ամուր լինեն սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ միաս-
նությունը, նրանց բարեկամությունն ու եղբայրական համագործակցությունը,
այնքան ավելի հաջողությամբ կլուծվեն կոմունիստական շինարարության
մեծ խնդիրները։



# ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

## ՉԱՓԱՆԻՇԸ ԱՌԱՎԵԼԱԳՈՒՅՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆՆ Է

Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆ

ՀԿԿ Երքաղկոմի քարտուղար

Իններորդ հնգամյա պլանն իրենից ներկայացնում է հետևողական գոր-
ծունեության մի ծրագիր, որը միտում է ՍՄԿԿ XXIV համագումարի առաջ
քաշած քաղաքական, սոցիալ-տնտեսական և կուլտուրական մեծ խնդիրնե-
րի իրականացումը։ Այն մի նոր, լուրջ քայլ է ժողովրդական տնտեսության
կատարելագործման, նրա կառավարման մակարդակի բարձրացման, արտա-
դրաուժերի հետագա զարգացման, գիտատեխնիկական առաջադիմության
արագացման, հասարակական արտադրության արդյունավետության և աշխա-
տանքի արտադրողականության բարձրացման գործում։

Սոցիալիստական զարգացած հասարակության աճող տնտեսական ամ-
բողջ հզորությունը և հնարավորություններն ի սպաս են դրված նոր հնգամ-
յակի գլխավոր խնդրի իրականացմանը— աշխատավորների բարեկեցության
էական բարձրացմանը։

Հնգամյա պլանով նախատեսվում է մեր հանրապետության աշխատավո-
րության բարեկեցության և արտադրա-տնտեսական պոտենցիալի զգալի աճ։
Իններորդ հնգամյակի առաջադրանքների իրականացման գործում իր որոշիչ
դերն ունի նաև Երևանը, որի արդյունաբերական արտադրանքի ծավալը
1971—1975 թվականներին պետք է աճի 51, իսկ աշխատանքի արտադրողա-
կանությունը՝ 32 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի աճի 73 տոկոսը
ստացվելու է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Այս առաջադրանքները, հատկապես արդյունաբերական արտադրանքի
ավելացման պլանը, խիստ լարված են։ Հաշվի առնելով այդ, Երևանի կու-
սակցական կազմակերպությունները լայն սոցիալիստական մրցություն են ծա-

վալել և բոլոր ուժերը մոբիլիզացրել՝ իններորդ հնգամյա պլանով սահմանված առաջադրանքները հաջողությամբ կատարելու և երկրին տասնյակ միլիոնավոր ռուբլու արտապլանային արտադրանք տալու համար։ Քաղաքի արդյունաբերական մի շարք ձեռնարկությունների կոլեկտիվներ իրենց կազմակերպված ու լարված աշխատանքի շնորհիվ այդ ասպարեզում գոհացուցիչ արդյունքների են հասնում։ Բայց դրանց կողքին կան նաև ոչ քիչ թվով ձեռնարկություններ, որտեղ գործերը, առանձնապես արտադրության արդյունավետության բարձրացումը, բարվոք վիճակում չեն։

Դրա համար էլ, տվյալ հոդվածում մեր նպատակն է հիմնականում անդրադառնալ Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների գործունեությանը՝ արտադրության արդյունավետության բարձրացման առումով, մանավանդ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած ծրագրային խնդիրներից մեկը վերոհիշյալ պրոբլեմն է, որի ճիշտ լուծումը կնպաստի հնգամյա պլանի հաջող կենսագործմանը։

Նոր հնգամյակի առաջին տարվա արդյունքների վերլուծությունը ցույց է տալիս, որ քաղաքի արդյունաբերական առանձին ձեռնարկություններում արտադրական պլանները տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով կատարելու գործում գոյություն ունեն էական, լուրջ անհանգստություն պատճառող թերություններ։ Դրանք բացատրվում են տվյալ ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների ու տնտեսական ղեկավարների անբավարար աշխատանքով, գործի հանդեպ նրանց ցածր պատասխանատվությամբ, պատշաճ կարգապահության բացակայությամբ։ Առանձին տնտեսվարներ, հրապուրվելով արտադրանքի իրացման պլանները մի կերպ կատարելով, աչքաթող են արել արտադրության որակական ցուցանիշների բարելավումը։ Ավելին, ոչ լարված, իրենց կարողություններից խիստ ցածր պլանային առաջադրանքների ընդունումը և դրանց հեշտությամբ կատարումը նրանց մոտ ստեղծել են կեղծ լավատեսության վիճակ, առաջացրել անհարկի ազմկարարություն, հաջողությունների թմբկահարում, որը ոչ մի ընդհանուր բան չունի աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի հետ։

Կուսակցության քաղկոմն ու շրջկոմներն այս դեպքում հանդես են բերել լիբերալիզմ, ժամանակին չեն սթափեցրել այդ «վայ» ղեկավարներին, նրանցից կտրուկ չեն պահանջել կատարել արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման, հիմնական արտադրաֆոնդերի արդյունավետ օգտագործման ու տեխնիկական առաջադիմության արագ արմատավորման բնագավառներում կուսակցության ու կառավարության առաջադրած խնդիրները։

Անհրաժեշտ պահանջկոտություն չի ցուցաբերվել նաև արտադրության կառավարման առաջավոր փորձի տարածման ու արմատավորման նկատմամբ։ Մինչդեռ արտադրության կազմակերպման ու կառավարման ժամանակակից արվեստը պահանջում է օրեց օր ու ժամ առ ժամ ընթանալ առաջավորների հետ, այն ամենի հետ, ինչ ծնվում է գիտա-տեխնիկական հեղափոխության հարափոփոխ ոլորտներում։ Այն օրից ի վեր, երբ գիտությունը վերածվել է արտադրաուժի, տնտեսա-տեխնիկական և ոչ մի պրոցես չի մնում ստատիկ վիճակում, այլ կատարելագործվում է անսպասելի արագությամբ։ Դա նշանակում է, որ հետզհետե ավելի ակնբախ է դառնում այսօրվա արտադրության կազմակերպման մեր կարողությունների ու գիտելիքների հա-



րաբերականությունը, ուրեմն և՝ ինքնագոհության ու սնապարծության վնասակարությունը։
Կուսակցության XXIV համագումարում նշվեց, որ «ժողովրդական տնտե-
սության հսկայական մասշտաբները, աճած տնտեսական հնարավորություն-
ները և հասարակական պահանջմունքներն անհրաժեշտ են դարձնում լրջորեն
բարձրացնել մեր ամբողջ տնտեսական աշխատանքի մակարդակը, էապես
բարձրացնել էկոնոմիկայի արդյունավետությունը, մեր ողջ վիթխարի տնտե-
սությունը վերածել ավելի լավ աշխատող, լավ կարգավորված մեխանիզմի»։
Համագումարն ամենայն սրությամբ դրեց արտադրության հիմնական
ֆոնդերի և աշխատուժի ռացիոնալ օգտագործման, աշխատաժամանակի կո-
րուստների վերացման, կադրերի հոսունության կրճատման, աշխատանքում
եղած անհամաչափության վերացման հարցերը, որոնց լուծումը սերտորեն
առնչվում է հասարակական արտադրության արդյունավետության բարձրաց-
ման և սահմանված պլանային առաջադրանքների հաջող կատարման հետ։
Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման հար-
ցը ամենայն սրությամբ դրվեց նաև Երևանի կուսակցական կազմակերպու-
թյան առջև և այն քննարկվեց քաղաքային կոմիտեի պլենումում։ Հարցի քըն-
նարկումն սկզբնական կուսակցական կազմակերպություններին և արտադրա-
կան կոլեկտիվներին օգնեց լուրջ միջոցառումների դիմելու տեխնիկական
առաջադիմության արագացման և արտադրության արդյունավետության բարձ-
րացման համար։
ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջներից ելնելով, քաղաքային կոմիտեի
բյուրոն պարբերաբար քննության է առել հիմնական արտադրաֆոնդերի և
աշխատուժի օգտագործման վիճակը տնտեսության տարբեր ճյուղերում,
առանձին արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական և տրանս-
պորտային կազմակերպություններում։ Դա, ինչպես նաև մեր տնտեսական
կազմակերպությունների գործունեության տեխնիկա-տնտեսական ցուցանիշ-
ների վերլուծությունը, մեզ բերել է այն հետևության, որ ներկա էտապում
մայրաքաղաքի արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի գործու-
նեության լուրջ բարելավման և աշխատանքի արտադրողականության բարձ-
րացման ամենամեծ ռեզերվը, որոշիչ գործոնը հիմնական արտադրաֆոնդերի
և աշխատուժի առավել արդյունավետ օգտագործումն է, արտադրության ին-
տագա ինտենսիվացումը։
Մեզ մոտ շատ ձեռնարկություններում կուտակվել է աշխատանքի գիտա-
կան կազմակերպման, արտադրական հիմնական ֆոնդերի և աշխատուժի
ռացիոնալ օգտագործման, արտադրության արդյունավետության բարձրաց-
ման հիանալի փորձ, որը կուսակցական կազմակերպությունների ու աշխա-
տանքային կոլեկտիվների հետևողական և քրտնաջան աշխատանքի արդյունք
է։ Օրինակ, ռելեի գործարանում հետևողական աշխատանք է տարվում հիմ-
նական արտադրաֆոնդերի ռացիոնալ օգտագործման, դրանց նորացման, հին
սարքավորումները նոր, բարձրարտադրողական հաստոցներով և ագրեգատնե-
րով փոխարինելու, դրանց հերթափոխայնության գործակիցը և ծանրաբեռն-
վածության աստիճանը բարձրացնելու համար։ Տեխնոլոգիական պրոցեսների
կատարելագործման և աշխատանքի ճիշտ կազմակերպման շնորհիվ անընդ-
հատ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, ավելանում է

շահույթը, իջնում անարտադրողական ծախսերը, բարձրանում է թողարկվող արտադրանքի որակը։ Որպես կանոն, այստեղ կատարվում են նոր տեխնիկայի ներդրման առաջադրանքները, կազմակերպչական-տեխնիկական միջոցառումները նպատակամղվում են արտադրության արդյունավետության բարձրացմանը, բանվորների աշխատանքային պայմանների բարելավմանն ու աշխատատեղի ռացիոնալ կազմակերպմանը։

Գործարանի կուսակցական կազմակերպությունը միշտ մուտ է լինում արտադրապրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, կադրերի պատրաստման, նրանց որակավորման բարձրացման հարցերին։ Նրա ակներև կոնկրետ որոշումները հետևողականորեն իրագործվում են։ Կուսկազմակերպության նախաձեռնությամբ նախատեսվում է գործարանի վերակառուցման և տեխնիկական վերազինման աշխատանքների մեծ ծավալ, որն առաջիկա տարիներին ավելի կբարելավի նրա տեխնիկա-տնտեսական ցուցանիշները, կբարձրացնի արտադրության արդյունավետությունը։

Ռելեի գործարանի օրինակը եզակի չէ։ Մայրաքաղաքում քիչ չէ այսպիսի դրական ցուցանիշների հասած գործարանների թիվը։ Սակայն, որքան էլ ակնառու են առանձին ձեռնարկությունների հաջողությունները, մայրաքաղաքում, ամբողջությամբ վերցրած, հիմնական ֆոնդերի ու արտադրական կարողությունների օգտագործման վիճակն անմխիթար է, չի համապատասխանում ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջներին։

Առավել վատ է աշխատանքային ռեսուրսների, բանվորական ուժի օգտագործման վիճակը։ Կադրերի հոսունությունը, աշխատանքից բացակայությունները ու պարապուրդները արդյունաբերության, շինարարության մեջ և տրանսպորտում հասել են տագնապալի չափերի և, եթե արմատական միջոցառումներ չկիրառվեն, մենք կկանգնենք ծանր կացության առջև։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ վերոհիշյալ վիճակը հիմնականում սուբյեկտիվ բնույթ ունի և հետևանք է կուսակցական, արհմիութենական, կոմերիտական առանձին կազմակերպությունների, ձեռնարկությունների ղեկավարների աշխատանքներում գոյություն ունեցող անպատասխանատվության, կուսակցական և պետական պատշաճ կարգապահության բացակայության։

Հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման պատկերը բնութագրող ցուցանիշներից կարևորագույնը ֆոնդահատույցն է։ Եթե 1963—64 թթ. քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում այն իջեցման տենդենց ուներ, ապա 1965—66 թթ. կայունացավ, իսկ 1967 թվականից սկսած աճեց և մեկ ռուբլու հիմնական արտադրաֆոնդերի դիմաց տրվեց 2,3 ռ. արտադրանք։ 1970 թ. այն նորից իջավ՝ 2,2 ռ., իսկ 1971 թ. տվյալներով համարյա կայուն է։ Ֆոնդահատուցման ցուցանիշը հատկապես վատ է տրանսպորտային ձեռնարկություններում։ Այսպես. արդյունաբերական շինարարության մինիստրության ավտոտրանսպորտային վարչությունում 1967 թ. մեկ ռուբլու հիմնական ֆոնդերին ընկնող բեռնաշրջանառությունը կազմում էր 46,3 տն-կմ, իսկ 1970 թ. այն 24 տոկոսով կրճատվել է և մեկ ռուբլու հիմնական ֆոնդերին ընկնող բեռնաշրջանառությունը, առանց տրանսպորտային միջոցների արժեքի, նվազել 1,5 անգամ։

ՀՍՍՀ ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության № 3 ավտոտրեստում, 1969 թ. համեմատությամբ, այդ նույն ցուցանիշները նվազել են, իսկ



մեկ ռուբլու հիմնական արտադրաֆոնդերին ընկնող բեռնաշրջանառությունը, առանց տրանսպորտային միջոցների արժեքի, իջել է 1,2 անգամ։ Քաղաքի ավտոտրանսպորտային կազմակերպություններում ֆոնդազինվածությունը 1970 թ., 1966-ի համեմատությամբ, աճել է 40, իսկ աշխատանքի արտադրողականությունն ընդամենը 20—25 տոկոսով։ Ֆոնդահատուցման տեսակետից դրությունը լավ չէ նաև շինարարական կազմակերպություններում։

Պետական կարգապահության բացակայության պատճառով արտադրական կարողությունների գործարկման պլանները հաճախ ձախողում են ինչպես շինարարական կազմակերպությունները, նույնպես և պատվիրատուները։

Հիմնական արտադրաֆոնդերը ժամանակին շահագործման չհանձնելը, կամ ոչ կոմպլեքսային վիճակում շահագործումը մեծապես ազդում են ձեռնարկությունների շահույթի ցուցանիշի վրա, որովհետև հիմնական ֆոնդերի համար պլանային վճարումները (3—6 տոկոսի սահմաններում) հանվում են ձեռնարկությունների հաշվեկշռային շահույթներից։ Մյուս կողմից, այս հանգամանքը հնարավորություն չի տալիս արտադրությունը ժամանակին նախապատրաստելու, այն անհրաժեշտ տեխնոլոգիական հարմարանքներով հագեցնելու, տեխնոլոգիական պրոցեսները կարգավորելու և նոր հզորությունների օգտագործման համար հավաքագրած աշխատուժը լրիվ օգտագործելու։

Այժմ, երբ արտադրության պլանային աճը բարձր է և դրա ապահովումը արդյունաբերության որոշ ճյուղերում պայմանավորված է նոր կարողությունների շահագործմամբ, խիստ կարևոր է, որ կուսակցական կազմակերպությունները, մինիստրություններն ու գերատեսչությունները լուրջ ուշադրություն դարձնեն նշված հարցերին։

Անհրաժեշտ է բարձրացնել յուրաքանչյուր օղակի պատասխանատվությունը շինարարական, վերակառուցման և այլ աշխատանքների իրականացման ժամանակ պետական կարգ ու կանոնի պահպանման գործում, հրաժարվել կարողությունները մի կերպ շահագործման հանձնելու պրակտիկայից։ Պետպլանը և համապատասխան վերադաս կազմակերպությունները չպետք է գնան դիմադրության թույլ ճանապարհով և անհարկի բավարարեն յուրաքանչյուր ձեռնարկության, մինիստրության և գերատեսչության ցանկությունները նոր շինարարության, անտեղի վերակառուցումների համար։ Կապիտալ ներդրումները պետք է կատարվեն ամենից առաջ գիտական հաշվարկներով հիմնավորված ձեռնարկությունների կառուցման և վերակառուցման աշխատանքները սեղմ ժամկետներում իրականացնելու, արտադրական կարողություններն ընդլայնելու և ժամանակին շահագործման հանձնելու, գործող հիմնական արտադրաֆոնդերը, հատկապես հաստոցային պարկը նորացնելու, ժամանակակից սարքավորումներով հագեցնելու համար։

Պետք է հատուկ ուշադրություն դարձնել արտադրական ձեռնարկությունների հզորությունների համամասնական զարգացման վրա։ Քիչ չեն դեպքերը, երբ առանձին ձեռնարկություններում ընդլայնվում է արտադրական հզորությունների մի մասը, հաշվի չառնելով մյուս արտադրամասերի կարողությունները։ Ստացվում է այնպես, որ նոր կառուցված և շահագործման հանձնված կարողություններն անգործության են մատնվում միայն այն պատճառով, որ դրանց արտադրածը լրիվ չի կլանվում մյուս արտադրամասերի կողմից, կամ ընդհակառակը, շատ հաճախ այդ կարողություններն անհրաժեշտ ծանրաբեռնվածությամբ չեն աշխատում կիսաֆաբրիկատների և նյութերի պակասի հետև-

վանքով: 1968 թ. Երևանի կոմպրեսորների գործարանի նոր շահագործման
հանձնված մեխանիկական արտադրամասն իր լրիվ կարողությամբ չի գոր-
ծում միայն այն պատճառով, որ ձուլման արտադրամասն իր կարողություննե-
րով չի բավարարում նրա պահանջները: Որպես կանոն մեքենաշինական գոր-
ծարանների գործիքաշինական արտադրամասերի կարողությունները բավա-
րարում են գործարանների պահանջների միայն 50—60 տոկոսը: Ձեռնարկու-
թյունների ընդարձակման ժամանակ դրա անտեսումը հանգեցրել է այն բանին,
որ մեքենաշինական շատ գործարաններում հաստոցները և սարքավորումները
անհրաժեշտ գործիքներով, հարմարանքներով ապահովված չլինելու հետևան-
քով աշխատում են խիստ թերբեռնված:

Օժանդակ արտադրամասերի և ծառայությունների կարողությունների
ավելացումն առաջնահերթ խնդիր է: Անհրաժեշտ է կարճ ժամանակամիջոցում
ամեն գնով ավելացնել այն ունիկալ, կատարելագործված մեքենաների և
հաստոցների քանակը, որոնք բանում են 2—3 հերթափոխ: Կարևոր է նաև
օժանդակ սարքավորումների միջոցով ունիվերսալ շատ հաստոցներ վերածել
հատուկ հաստոցների, որոնք կբարձրացնեն աշխատանքի արտադրողականու-
թյունը և հնարավորություն կընձեռեն «նեղ» տեղերը վերացնելու:

Որոշ ձեռնարկություններ այսօր հասել են արտադրամիջոցների նախա-
գծային հզորությունների օգտագործման բավական բարձր մակարդակի: Սա-
կայն, ցավոք, քիչ չեն նաև այն ձեռնարկությունները, որոնք դրան չեն հասել
և չեն ապահովել արտադրամիջոցների լրիվ կարողությամբ օգտագործումը:
Դա, բնականաբար, իջեցրել է նրանց ֆոնդահատուցման ցուցանիշն ու շահու-
թաբերության աստիճանը: Այս առումով դրությունն անմխիթար է հաստո-
ցանորմալ, կոմպրեսորների, էլեկտրաշարժիչների և այլ գործարաններում:

Հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործման բնագավառում եղած
ամենացավոտ կողմը՝ դրանց շահագործման հերթափոխության գործակցի
ցածրությունն է: Բավական է ասել, որ քաղաքի արդյունաբերության մեջ հեր-
թափոխության գործակցի 0,1-ով բարձրացումը, հնարավորություն կտա լրա-
ցուցիչ թողարկելու միլիոնավոր ռուբլիների արտադրանք:

Մեքենաշինական ձեռնարկություններում մետաղամշակման սարքավո-
րումների և հաստոցների հերթափոխության գործակիցը չի անցնում 1,3-ից:
Եթե ամբողջությամբ վերցրած Երևանի մեքենաշինական ձեռնարկություննե-
րում այդ գործակիցը 1969 թ. նկատմամբ որոշակիորեն աճել է, ապա 1971 թ.
առանձին ձեռնարկություններում այն իջել է, որի հետևանքով էլ մեքենաշի-
նության մեջ հերթափոխության ընդհանուր միջին գործակիցը ցածր է:

Առավել վատ են օգտագործվում ավտոմատ գծերը, որոնց հերթափոխու-
թյան գործակիցը, որպես կանոն, չի անցնում 1-ից: Վատ են օգտագործվում
նաև մամլման ու ձուլման սարքավորումները: Աշխատանքի վատ կազմա-
կերպման հետևանքով ձեռնարկություններում այսօր էլ արտադրական սարքա-
վորումների պարապուրդները շատ մեծ են: Այսպես, 1970 թ. Երևանում արտա-
դրության պարապուրդը կազմել է 342,7 հազար, իսկ 1971 թ. առաջին կիսամ-
յակում՝ 186,9 հազար մարդ-ժամ: Մայրաքաղաքի շատ ձեռնարկություններում
(ավտոպահեստամասերի, պոմպերի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական,
կենցաղային քիմիայի գործարաններ, հրուշակեղեն-մակարոնի ֆաբրիկա և
այլն) սարքավորումների պարապուրդների հաշվառում չկա, հետևապես ղե-
կավարության կողմից ժամանակին չեն բացահայտվում պարապուրդների



պատճառները, միջոցներ չեն ձեռնարկվում դրանց վերացման և մեղավորնե-
րին պատասխանատվության կանչելու համար:

Մայրաքաղաքի շինարարական շատ ձեռնարկություններում, որպես կա-
նոն, մեքենաներն ու մեխանիզմներն օգտագործվում են մեկ հերթափոխում,
կամ լավագույն դեպքում՝ երկարացված (1—2 ժամ) ռեժիմով: Ավելի վատ է
կազմակերպված ավտոտրանսպորտի օգտագործումը: Առանձին ավտոտնտե-
սությունների պարկերի օգտագործման գործակիցը բարձրանալու փոխարեն
տարեցտարի իջնում է: Այսպես, արդյունաբերական շինարարության մինիս-
տրության տրանսպորտային վարչությունում ավտոպարկի օգտագործման
գործակիցը 0,57-ից (որն առանց այն էլ ցածր է) իջել է 0,55-ի: Ավտոտրանս-
պորտի մինիստրության № 3 ավտոտրեստի պարկերի օգտագործման պլանա-
յին գործակիցը 1966 թ. եղել է 0,6, իսկ 1970 թ. պլանավորվել է 0,55, առան-
ձին ձեռնարկություններում դրանց փաստացի կատարողականը եղել է 0,5-ից
ցածր:

Արդյունաբերական, շինարարական կլինետուրայի, Երևանի երկաթուղա-
յին կայարանի և № 3 ավտոտրեստի անհամաձայնեցված ու վատ աշխատան-
քի պատճառով ավելացել է գործող ավտոմեքենաների պարապուրդը, որը
1970 թ. կազմել է ավտոմեքենաների երթուղային ժամանակի 24 տոկոսը:
Այս վիճակը համարյա չի փոխվել 1971 թ. ընթացքում: Ավտոմեքենաները
նույնպես օգտագործվում են հիմնականում մեկ հերթափոխում, լավագույն
դեպքում երկարացված աշխատանքային օրով:

Ուսումնասիրությունները մեզ բերել են այն համոզման, որ քաղաքի ար-
տադրական ձեռնարկությունների մեքենայական պարկը անհրաժեշտ է հա-
մալրել բարձր արտադրողական ունիկալ և հատուկ հաստոցներով, ավելացնել
մեքենաների սպասարկման զոնան (հատկապես թեթև և սննդի արդյունաբե-
րության մեջ և այնտեղ, ուր հնարավոր է կիրառել բազմահաստոց սպա-
սարկում), կրճատել չօգտագործվող, կամ սակավ օգտագործվող հաստոցների
թիվը և սպասարկող բանվորներին ու կարգավորողներին օգտագործել
հաստոցային-մեքենայական պարկի առավել ինտենսիվ աշխատանքի և
դրանց հերթափոխության գործակցի բարձրացման համար:

Հարկավոր է ամենայն լրջությամբ զբաղվել հաստոցների և սարքավո-
րումների արտադրողականության բարձրացմամբ: Այդ կարևոր հարցը կարելի
է հաջողությամբ լուծել և առավել բարձր արտադրողականության հասնել ոչ
միայն հին հաստոցները նորով փոխարինելով, այլև դրանց աշխատանքի
ինտենսիվացման, օրացուցային ժամանակի ռացիոնալ օգտագործման շնոր-
հիվ: Հաստոցների կոմպլեքսային մոդեռնացումը նույնպես լուրջ ռեզերվ է
դրանց արտադրողականության բարձրացման գործում: Հաշվումները ցույց են
տալիս, որ այդ միջոցով, միջին հաշվով, 20 տոկոսով բարձրանում է հաստոցի
արտադրողականությունը:

Հաճախակի են դեպքերը, երբ առանձին ձեռնարկություններում, առանց
հիմնավոր հաշվարկների, ավելացվում է սարքավորումների և հաստոցների
քանակը, որոնք զբաղեցնելով արտադրական տարածություններ, հետագայում
չեն օգտագործվում և պատճառ են հանդիսանում ձեռնարկությունում ֆոնդա-
հատուցման ցուցանիշի իջեցման: Կան ձեռնարկության ղեկավարներ, որոնք
այս կամ այն ոչ սերիական տեխնոլոգիական մշակումներ իրականացնելու
համար ձեռք են բերում թանկարժեք հաստոցներ և սարքավորումներ, որոնցից

կան Հարևան ձեռնարկություններում և աշխատում են թերբեռնված: Փոխա-
նակ դրանք օգտագործեն և այդ մշակումներն իրականացնեն կոոպերատիվ
կապերի և պատվերների միջոցով, նման ղեկավարները դատում են այսպես.
«ամեն ինչ ինձ մոտ, իմ ձեռնարկությունում լինի, ես ոչ մեկի հետ գործ չու-
նեմ: Թող հաստոցը տարին մեկ անգամ օգտագործվի, միայն թե ես ուրիշին
չխնդրեմ»: Այս հոգեբանությունը վնասակար է: Մեր ձեռնարկությունների
ղեկավարները պետք է փոխադարձ կապեր ունենան միմյանց հետ, օգնեն իրար՝
լրիվ օգտագործելու ունիկալ և դեֆիցիտային հաստոցների կարողությունները:
Հարկավոր է արմատապես բարելավել սարքավորումների վերանորոգ-
ման գործը: Յուրաքանչյուր ձեռնարկությունում ինչպես հիմնական, այնպես
էլ նախազգուշական պլանային վերանորոգումների գրաֆիկները, որպես
օրենք, պետք է կատարվեն: Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել վե-
րանորոգման նորմատիվային ժամկետների խիստ պահպանմանը: Մեր մի
շարք ձեռնարկություններում թանկարժեք, տեխնոլոգիական կարիքների հա-
մար խիստ անհրաժեշտ շատ հաստոցներ և սարքավորումներ ամիսներով
գտնվում են վերանորոգման մեջ և չեն օգտագործվում: Այդ տեսակետից
դրությունը խիստ անմխիթարական է հատկապես ավտոտրանսպորտային ու
շինարարական կազմակերպություններում, ուր էքսկավատորների, կռունկնե-
րի և ավտոմեքենաների վերանորոգումների ժամկետները, որպես կանոն, 3—4
անգամ գերազանցում են պլանային նորմատիվները:
Հիմնական արտադրաֆոնդերի արդյունավետ օգտագործման և այդ միջո-
ցով ֆոնդահատույցի բարձրացման համար կարևոր նշանակություն ունի սար-
քավորումների տեխնիկապես ճիշտ շահագործումը: Ուսումնասիրությունները
ցույց են տալիս, որ գործիքների խափանման, սարքավորումների վթարների
և անսարքությունների 70 տոկոսն աշխատողների ցածր որակավորման ար-
դյունք է: Ներկա սարքավորումների բարդությունը պահանջում է մասնագի-
տական իմացություն, հմտություն, գիտելիքների որոշակի աստիճան:
Մեր արդյունաբերությունը և տրանսպորտը գործում են նոր տնտեսական
ռեֆորմի պայմաններում: Շուտով այդ պայմաններում կաշխատի նաև շինա-
րարությունը: Ինչպես հայտնի է, նոր տնտեսական ռեֆորմի ամենակարևոր
պահանջներից մեկը շահութաբերության ապահովումն է, դրա աստիճանը:
Այդ ցուցանիշի բարձրացումը անմիջականորեն կապված է հիմնական ար-
տադրաֆոնդերի արդյունավետ օգտագործման հետ: Հայտնի է նաև, որ նյու-
թական խրախուսման ֆոնդերի 80 տոկոսը պայմանավորված է շահութաբե-
րության ցուցանիշով: Սա նշանակում է, որ ամեն մի ձեռնարկության կոլեկ-
տիվ անմիջականորեն շահագրգռված է, որպեսզի յուրաքանչյուր մեքենա,
սարքավորում տա առավել շատ արտադրանք և ավելանա դրանց օգ-
տագործման արդյունավետությունը: Այս գործի հաջող իրականացումը մեծա-
պես պայմանավորված է կուսակցական կազմակերպությունների, տնտեսա-
կան ու տեխնիկական ղեկավարների հետևողական աշխատանքով:
Առավելագույն արդյունավետություն— ահա այն հիմնական չափանիշը,
որով պետք է գնահատվի յուրաքանչյուր ձեռնարկության, արտադրամասի
գործունեությունը: Ֆոնդահատուցման աճը այն հիմնական աղբյուրն է, որը
պետք է ապահովի արտադրության ծավալային աճի արագ տեմպերը, ազ-
գային եկամտի և ժողովրդական սպառման ֆոնդի ավելացումը:

# ՊՐՈԳՐԵՍԻ ԿԱՐԵՎՈՐ ԱԶԴԱԿԸ

Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ

Աշխատանքը միշտ և ամենուրեք դիտվել է որպես մարդկանց գոյության
ու զարգացման միջոց: Սակայն շահագործողական հասարակարգերին ներհա-
տուկ է արտադրության միջոցների մասնավոր սեփականության վրա հիմնված
ծանր ու հոգեմաշ աշխատանքը, մինչդեռ ճնշումից ու շահագործումից զերծ
սոցիալիստական հասարակարգին՝ հանրային սեփականության վրա հիմնված
գիտակցական, ստեղծագործական աշխատանքը: Երկու դեպքում էլ աշխա-
տանքը նյութական բարիքների արտադրության ու հարստության աղբյուր է:
Միայն թե առաջինում այն գլխավորապես հոսում է մասնավոր սեփականա-
տերերի, իշխողների գրպանները, ծառայում նրանց հարստացմանը, իսկ երկ-
րորդում՝ աշխատավոր զանգվածների շահերը պաշտպանող պետության,
այսինքն՝ հենց իր՝ ժողովրդի:
Արտադրության միջոցների նկատմամբ սեփականության ձևից բխում են
աշխատանքի բնույթը, բովանդակությունն ու նպատակները: Հոկտեմբերյան
սոցիալիստական մեծ հեղափոխության պատմական նվաճումներից մեկն այն
է, որ արմատական փոփոխություններ մտցրեց աշխատանքի բովանդակու-
թյան մեջ. աշխատանքի հանրայնացման հետ մեկտեղ՝ հանրայնացվեց նաև
նրանով ստեղծված նյութական բարիքների բաշխումը հասարակության ան-
դամների միջև՝ յուրաքանչյուրին ըստ իր աշխատանքի քանակի ու որակի:
Սոցիալիստական հասարակության մարդը քաջ գիտե, որ այն, ինչ ինքն
ստեղծում է, բաժին է հասնում իրեն ու իր նման աշխատավորին: Հետևաբար,
սոցիալիզմի ժամանակ աշխատանքը ոչ միայն հանրային հարստության
աղբյուր է, այլև նրանց փոխադարձ համագործակցության ու երջանկության
աղբյուր: Միանգամայն բնականոն է, որ սովետական յուրաքանչյուր բանվոր,
կոլտնտեսական ու ծառայող ամենայն հաճությամբ իր լուման է ներդնում
հասարակական հարստության ստեղծման ու բազմապատկման գործում,
ամեն ինչ անում ոչ միայն իր, այլև ամբողջ հասարակության երջանկության
համար, սովետական մարդկանց բարեկեցության անշեղ բարձրացման հա-
մար: Դա մի կարևոր խնդիր է, որի լուծումը գտնվում է կոմկուսակցության ու
սովետական կառավարության ամենօրյա ուշադրության կիզակետում:
Մեր հայրենիքի աննախադեպ առաջընթացի համար ՍՄԿԿ XXIV համա-

գումարի մշակած հոյակապ կանխագծումների իրականացման գործում կու-
սակցությունն առավել մեծ տեղ է հատկացնում սովետական մարդկանց աշ-
խատանքային դաստիարակությանը, աշխատանքի նկատմամբ կոմունիստա-
կան վերաբերմունքի արմատավորմանը։ Կուսակցության գաղափարական գոր-
ծունեության մեջ,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,—
առաջին տեղերից մեկում է սովետական մարդկանց աշխատանքի նկատ-
մամբ նոր, կոմունիստական ոգով տոգորելը (տե՛ս ՍՄԿԿ XXIV համա-
գումարի նյութերը, 1971 թ., էջ 110)։ Կոմկուսակցության ու սովետա-
կան պետության հիմնադիր Վ. Ի. Լենինն աշխատանքային դաստիարա-
կությունը համարում էր կոմունիստական դաստիարակության բաղկացուցիչ
մասը։ ՌԿԵՄ համառուսաստանյան III համագումարում արտասանած «Երի-
տասարդական միությունների խնդիրները» հայտնի ճառում նա կոմերիտմիու-
թյան առջև խնդիր էր դնում՝ բոլորին, փոքր հասակից սկսած, դաստիարակել
աշխատանքի ու գիտակցական կարգապահության ոգով։ Ահա թե ինչու ՍՄԿԿ
XXIV համագումարը կուսկազմակերպությունների անհետաձգելի ու առաջնա-
հերթ խնդիրը համարեց սովետական մարդկանց դաստիարակել աշխատանքի
նկատմամբ իսկապես կոմունիստական ոգով, թանկ գնահատել աշխատաժա-
մանակը, ցուցաբերել բանիմացություն, ընկերական համագործակցու-
թյուն ու փոխօգնություն։ Կուսակցությունը դաստիարակչական իր գոր-
ծունեության կենտրոնում դնում է լենինյան այն դրույթը, թե պետք է հաս-
նել նրան, որ հասարակության համար կատարվող աշխատանքը դառնա յու-
րաքանչյուր սովետական քաղաքացու սրբազան պարտականությունը։ Աշխա-
տանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի օրինակ լինել, նշանա-
կում է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, հանդես գալ որ-
պես նորի ու առաջադիմականի նախաձեռնող, բազմապատկել հանրային հա-
րստությունը։

Աշխատանքի նկատմամբ մարդկանց կոմունիստական վերաբերմունքի
ոգով դաստիարակելու գործում անգնահատելի է արտադրական կոլեկտիվների
դերը։ Դրանք, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, սոցիալիստական
հասարակության հիմնական բջիջն են։ Այստեղ են ստեղծվում հանրային նյու-
թական արժեքները, ժողովրդական բարիքները, լուծվում տնտեսական շինա-
րարության ասպարեզում կուսակցության բոլոր կանխագծումները։

Արտադրական կոլեկտիվը մարդկանց աշխատանքային դաստիարակու-
թյան լավագույն դպրոց է։ Բանվորը, կոլտնտեսականը, ծառայողը այս դպրո-
ցում ձեռք են բերում կոլեկտիվիզմի, փոխադարձ օգնության, բարեկամու-
թյան ու ընկերության լավագույն գծեր ու հատկություններ, կոմունիստական
վերաբերմունք դրսևորում աշխատանքի նկատմամբ։ Կարելի է բազմաթիվ օրի-
նակներ բերել, երբ մարդը կոլեկտիվում, իր գործընկերների ամենօրյա ընկե-
րական օգնությամբ ու բարեկամական վերաբերմունքի շնորհիվ ձերբազատ-
վում է բնավորության վատ գծերից, օժտվում այդ նույն կոլեկտիվում գերիշ-
խող լավագույն հատկություններով, հայրենանվեր աշխատանքի հիանալի օրի-
նակ տալիս։ Իզուր չէ, որ սովետական մարդը գործարանն ու ֆաբրիկան,
կոլտնտեսությունն ու սովխոզը համարում է իր երկրորդ տունը, հոգու ողջ թե-
լերով կապվում աշխատանքային կոլեկտիվին, ապրում նույն խոհերով ու
զգացումներով, ինչ որ իր գործընկերները, պայքարում ընդհանուր նպատակի
համար։



Խոսելով աշխատանքային կոլեկտիվի դերի և նշանակության մասին՝
Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում ընդգծեց, որ այստեղ են ձևավոր-
վում աշխատավորների նոր, սոցիալիստական հատկությունները, ստեղծվում
բարեկամության և ընկերական փոխօգնության հարաբերությունները։ Նա սո-
վետական ապրելակերպի անքակտելի մասը համարեց ամեն մեկի պատաս-
խանատվությունը կոլեկտիվի առջև և կոլեկտիվի պատասխանատվությունը՝
յուրաքանչյուր աշխատողի համար։ Երևանի բազմաթիվ ձեռնարկությունների,
մասնավորապես «Էլեկտրոն» գործարանի, Կիրովականի «Ավտոմատիկա»,
Ճշգրիտ հաստոցների, Լենինականի հղկող հաստոցների գործարանների, Կա-
լինինոյի շրջկենտրոնի սովխոզի և Ստեփանավանի շրջանի Վարդաբլուր գյու-
ղի կոլտնտեսության և ուրիշ շատ ձեռնարկությունների ու հանրային տնտե-
սությունների կուսկազմակերպությունների ջանքերի արդյունքը պետք է հա-
մարել այն առողջ մթնոլորտը, որ տիրում է արտադրական այդ կոլեկտիվնե-
րում։ Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի «Մեկը՝ բոլորի, բոլորը՝ մե-
կի համար» սկզբունքը նրանց համար դարձել է գործողության ուղեցույց,
գործելակերպ։ Իզուր չէ, որ սոցիալիստական աշխատանքի հերոսները, շքա-
նշանակիրներն իրենց բարձր պարգևը համարում են նաև գործընկերներինը,
այն կոլեկտիվինը, որի կազմում իրենք անդադրում ստեղծում են նյութական
հանրային բարիքներ։

Այնքան առավել կենսունակ է կոլեկտիվը, որքան ամուր է աշխատանքա-
յին կարգապահությունը։ Դա այն կարգապահությունն է, որը, ինչպես նշեց
ընկ. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում, խարսխված է ոչ թե վախի և կո-
պիտ վարչարարության մեթոդների վրա, որոնք մարդկանց զրկում են վստա-
հությունից, նախաձեռնությունից, ծնում ինքնապահովագրում և անազնվու-
թյուն, այլ հիմնված է մարդկանց բարձր գիտակցականության և պատասխա-
նատվության վրա։ «Սոցիալիստական կարգապահությունը,— ասաց նա,—
այն կարգապահությունն է, որը միասնական է հասարակության բոլոր անդամ-
ների համար, պարտադիր է բոլորի և ամեն մեկի համար» (ՍՄԿԿ XXIV հա-
մագումարի նյութերը, Երևան, 1971, էջ 134)։

Սոցիալիստական կարգապահությունը տնտեսական անշեղ վերելքի, հան-
րային արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր ու անհրա-
ժեշտ պայման է։ Վ. Ի. Լենինը «Սովետական իշխանության հերթական խըն-
դիրները» հոդվածում ընդգծում է, որ ...սոցիալիզմի հաջողությունն անհնար է
առանց պրոլետարական գիտակցական կարգապահության (տե՛ս Երկեր, հ. 27,
էջ 308)։ Առաջնորդը գտնում է, որ մասսաների կողմից աշխատանքային կար-
գապահության նոր հիմունքների արմատավորումը երկար պրոցես է, մարդկանց
միջև հասարակական կապի, նրանց աշխատանքի ներգրավման նոր ձևերի ու
եղանակների կիրառման համար շատ տարիներ են պետք։ Այդ պրոցեսն սկըս-
վեց Մոսկվա—Կազան երկաթուղու բանվորների՝ 1919 թ. կամավոր շաբաթ-
օրյակներով, որոնց պատմական նշանակությունն այն է, որ դրանք դրսևորե-
ցին բանվորների գիտակցական ու կամավոր նախաձեռնությունը նաև նոր
աշխատանքային կարգապահության անցնելու բնագավառում։

Տասնամյակներ են անցել այդ ժամանակներից, որոնց ընթացքում ձևա-
վորվել, ամրապնդվել է աշխատանքային կարգապահությունը, ստացել նոր
որակ, կոմունիստական բովանդակություն։ Կարգապահության վերաբերյալ
լենինյան ցուցումները մշտապես եղել են մեր կուսակցության տեսադաշտում։

Անցած կես դարի ընթացքում կուսակցությունը պայքարել է գիտակցական, սոցիալիզմին բնորոշ կարգապահություն արմատավորելու համար։ ՍՄԿԿ XXIV համագումարը մեր երկրի ժողովրդական տնտեսության հաջողությունները պայմանավորեց նաև ամուր, սոցիալիստական գիտակցական կարգապահություն հաստատելու ասպարեզում կուսկազմակերպությունների հետևողական, արդյունավետ գործունեությամբ։

Մեր հանրապետության շատ ձեռնարկությունների կուսկազմակերպություններ անդրադառնում են աշխատանքային-արտադրական կարգապահության ամեն մի խախտման, կոլեկտիվի անդամներին դաստիարակում բարձր գիտակցականության, աշխատանքի նկատմամբ նոր, կոմունիստական վերաբերմունքի ոգով։ Նրանք ոչ միայն տարածում ու արմատավորում են լավագույն օրինակը, այլև հասարակական կարծիք ստեղծում վատի ու հետամնացի հանդեպ, պարբերաբար քննարկում են աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, կոմունիստական դաստիարակությանը վերաբերող հարցեր։ Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարանում, օրինակ, գործում է «Ո՞վ է մեզ խանգարում ռիթմիկ աշխատել» ցուցափեղկը։ Այստեղ նշվում է թե ում մեղքով է տուժել գործը։ Սա, ինչ խոսք, կոլեկտիվ ու բարոյական ներգործության կարևոր միջոց է։ Այս ասպարեզում կուսկազմակերպության ու դիրեկցիայի արդյունավետ գործունեությունը լավ պտուղներ է տվել։ Բարձրորակ արտադրանքի թողարկումը դարձել է կոլեկտիվի գլխավոր հոգսը։ Այդ կոլեկտիվի մի քանի տասնյակ անդամներ աշխատում են առանց վերահսկչի և ստացել են անձնական դրոշմ օգտագործելու իրավունք։

Երևանի «Էլեկտրոն» գործարանի բոլոր արտադրամասերում ու տեղամասերում, կուսկազմակերպության նախաձեռնությամբ, ստեղծվել են ոչ միայն առաջավորներին նվիրված, այլև խոտանի ցուցափեղկեր։ Դրանցում տեղեկացվում է, թե ո՛ր բրիգադը, ո՛ր աշխատողն է թերացել, թողարկել ցածրորակ, խոտան արտադրանք։ Խոտանի, անհոգության ամեն մի դեպք հանձնըվում է կոլեկտիվի դատին։ Բանվորներին ու ինժեներա-տեխնիկական անձնակազմին պատասխանատվության բարձր զգացումով համակելու և նրանց մեջ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք զարգացնելու շնորհիվ ձեռնարկության կոլեկտիվը հասել է փայլուն նվաճումների, ձեռք բերել միջազգային հեղինակություն։ Անժխտելի է նրա դերը գիտնականների ու կոնստրուկտորների նախագծած «Նաիրի—3» էլեկտրոնային հաշվիչ մեքենայի ստեղծման գործում։ Ուշագրավ շատ բան է արել Կիրովականի արհեստական մանրաթելի գործարանի կուսկազմակերպությունը։ Այստեղ ամեն մի բանվորի պլանների կատարման ցուցանիշները, բացակայության և ուշացման, ինչպես նաև կարգապահության այլևայլ փաստեր ցուցադրվում են հատուկ ցուցափեղկերում, վատն ու մերժելին խարազանվում երգիծական պատի թերթում։

Անտարակույս, թվարկած և մյուս միջոցառումները, որոնք մշակում ու իրականացնում են հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների ու կառույցների, կոլտնտեսությունների և սովխոզների սկզբնական կուսկազմակերպությունները, նպաստում են աշխատանքի նկատմամբ գիտակից, կոմունիստական վերաբերմունքի զարգացմանը։

Անվիճելի է սոցիալիստական մրցության դերը նոր, գիտակցական կարգապահության արմատավորման, մարդկանց աշխատանքի նկատմամբ կոմու-



նիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու գործում։ Սոցիալիստական
մրցությունը կոլեկտիվ ջանքերի դրսևորում է, անհատի ու կոլեկտիվի ճիշտ
փոխգործողության կոնկրետ արտահայտություն, գիտակցական, սոցիալիս-
տական կարգապահության ստեղծման կարևոր պայման։ Մրցության ընթաց-
քում մարդիկ հաղորդակից են դառնում միմյանց ուսանելի փորձին, յուրաց-
նում այն, փոխանում լավ օրինակը, կիրառում աշխատանքի կազմակերպ-
ման առաջավոր եղանակներ, կոմունիստական վերաբերմունք ցուցաբերում
սոցիալիստական սեփականության պահպանության ու աշխատանքի նկատ-
մամբ։ Իսկական, ստեղծագործական, ընկերական փոխօգնություն հետապըն-
դող մրցությունը ներհատուկ է միայն սոցիալիստական հասարակարգին։ Վ. Ի.
Լենինը նշում է, որ սոցիալիզմը, ոչնչացնելով դասակարգերը և մասսաների
ստրկությունը, առաջին անգամ մարդկության պատմության մեջ ճանապարհ
բացեց մրցության համար իսկապես մասսայական մասշտաբով (տե՛ս Երկեր,
հ. 27, էջ 310)։ Առաջնորդն ուսուցանում է, որ սոցիալիզմը հնարավորություն
է ընձեռում աշխատավորների մեծամասնությունը ներգրավել այնպիսի աշ-
խատանքի ասպարեզ (նկատի ունի մրցությունը— Ա. Ս.), որտեղ նրանք կա-
րող են երևան բերել իրենց, կիրառել իրենց ունակությունները, դրսևորել տա-
ղանդներ...

Մեր հանրապետության արտադրական կոլեկտիվների օրինակով կարելի է
ցույց տալ, թե ինչպես սոցիալիստական մրցությունը յուրաքանչյուր աշխա-
տողի մեջ պատվաստում է սեր կոլեկտիվի հանդեպ, պատասխանատվության
զգացում առաջացնում ձեռնարկության մակնիշի պատվի համար, նրան հա-
մակում խանդավառությամբ։ Մրցությունը ձգտում է առաջացնում բանվորի
և կոլտնտեսականի հոգում՝ այսօր ավելի լավ աշխատել, քան երեկ, այսօր
ավելի շատ արտադրել, քան նախատեսված է պետական պլանով կամ թո-
ղարկվում էր նախորդ օրը, նախորդ տարին։

Նախընթաց ամիսներին մամուլում հրապարակվեցին Մոսկվայի և ար-
դյունաբերական մյուս խոշոր կենտրոնների աշխատավորների, այդ թվում
Հայաստանի արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողների
տարանձին խոշոր արտադրական կոլեկտիվների սոցիալիստական պարտավո-
րությունները։ Դրանցում արտացոլված է սովետական մարդկանց անկասելի
ձգտումը՝ բազմապատկելու մեր երկրի հանրային հարստությունը, ամրա-
պնդելու նրա տնտեսական հզորությունը, վճռական քայլ կատարելու կոմու-
նիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ճանապարհին։ Իններորդ
հնգամյակի պլանը, սոցիալիստական բարձր պարտավորություն-
ները և դրանք կատարելու համար մշակված բազում միջոցառումները ինքնին
վկայությունն են այն բանի, թե ինչպես սովետական աշխատավորների մի-
լիոնավոր զանգվածները կոմունիստական, գիտակցական վերաբերմունք են
ցուցաբերում աշխատանքի նկատմամբ, բարձրացնում իրենց բարեկեցությու-
նը, ստեղծագործական խիզախումներով, անձնուրաց աշխատանքով կերտում
իրենց լուսաշող ապագան։

Մեր հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները խոստացել
են ընթացիկ տարում պլանից ավելի արտադրել 20,3 հազար և պետությանը
վաճառել 13 հազար տոննա հացահատիկ, զգալիորեն ավելացնել անասուն-
ների գլխաքանակն ու անասնապահական մթերքների արտադրությունը։ Մի՞
թե աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դրսևորման ձև

չէ, երբ առանձին տնտեսություններ, բրիգադներ ու անհատներ պատրաստակամություն են հայտնում արտադրել ավելի շատ, քան հանրապետության կամ իրենց շրջանի ու տնտեսության միջին ցուցանիշն է։ Այսպես, Հոկտեմբերյանի շրջանի Տանձուտ գյուղի կոլտնտեսության՝ Վ. Ավետիսյանի օղակը խոստացել է ամեն մի հեկտարից ստանալ 270 ցենտներ խաղող, Մասիսի շրջանի Արբաթի կոլտնտեսության՝ Խ. Զաքարյանի օղակը՝ 760 ցենտներ պոմիդոր, Կալինինոյի շրջանի Նորաշենի կոլտնտեսությունը՝ 220 ցենտներ կարտոֆիլ, Սպիտակի շրջանի Մեծ Պարնի և Սարահարթ գյուղերի կոլտնտեսությունները՝ 320—350 ցենտներ շաքարի ճակնդեղ։ Շահումյանի շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսության կթվորուհի Արմենուհի Մինասյանը ամեն մի կովից 5650 կգ կաթ ստանալու բնագիծ է նշել։ Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղի կոլտնտեսության առաջավոր հովիվներ Ս. Բեգլարյանը և Ս. Սաքունցը պարտավորվել են յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստանալ 120 գառ։ Այս ցանկը կարելի է շարունակել։

«Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը (1971 թ.) ըստ ամենայնի գնահատեց այդ պրոցեսը և պարզ ու հստակ դրույթներ սահմանեց նաև աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի մասին։ ՍՄԿԿ Կենտկոմի այդ նոր միջոցառումը մրցության վերաբերյալ Վ. Ի. Լենինի ցուցումների և ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների ուրույն պարզաբանումն է ու կոնկրետացումը։ Կենտկոմն այդ որոշմամբ պահանջում է սոցիալիստական մրցությունը լիովին օգտագործել՝ աշխատանքի և հանրային սեփականության հանդեպ սովետական մարդկանց կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու, բանվորների, կոլտնտեսականների ու ծառայողների նախաձեռնությունն ավելի զարգացնելու, արտադրական ու հասարակական ակտիվությունը բարձրացնելու, համագործակցության և ընկերական փոխօգնության հարաբերությունները, կարգապահությունն ու կազմակերպվածությունն ամրապնդելու համար։

Ժամանակի ընթացքում, սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործման շնորհիվ, նոր որակ ստացավ ու կատարելագործվեց նաև մրցությունը։ ՍՄԿԿ XXIV համագումարը բարձր գնահատեց այն իրողությունը, որ սոցիալիստական կարգերի հաստատումն ու հաղթանակը ծնունդ տվեցին մարդկության պատմության մեջ նախորդը չունեցող նոր իրողությունների, ինչպես կոմունիստական շաբաթօրյակները, ստախանովյան ու աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումները։ Մրցության նոր որակն այժմ առավել քան արտահայտվում է կոմունիստականի բարձր կոչման համար մղվող պայքարում։ Այդ պայքարը դիտվում է որպես սովետական մարդկանց բարձր գիտակցականության, կոմունիստական ամուր կարգապահության, արտադրական չտեսնված խանդավառության կոնկրետ դրսևորում։ Մեր հանրապետությունում կոմունիստական աշխատանքի կոչման են արժանացել 29 ձեռնարկություն, 1269 արտադրամաս, տեղամաս և հերթափոխություն, ֆերմա ու բաժին, ավելի քան 4 հազար բրիգադ։ 71 հազար 500 մարդ կոմունիստական աշխատանքի հարվածայիններ են։ Այժմ այդ բարձր կոչմանն արժանանալու համար պայքարում է ավելի քան 196 հազար մարդ։

Արդեն օրինաչափ երևույթ է դարձել, երբ կոմունիստական աշխատանքի շարժումն ընդգրկում է ամբողջական կոլեկտիվներ, երբ այդ բարձր կոչման



համար պայքարի են ելնում ոչ միայն առանձին անհատներ, բրիգադներ, այլև՝ ձեռնարկություններ, սովխոզներ ու կոլտնտեսություններ։ Կուսկազմակերպությունները տոն են տալիս այդ ազնիվ ձգտմանը, գլխավորում այն, խանդավառում մարդկանց։ Այս առումով բնորոշ է Երևանի «Էլեկտրոն» և Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանների կուսկազմակերպությունների օրինակը։ Նրանք հանդես են գալիս որպես կոմունիստական աշխատանքի շարժման առաջատար ուժ, ամեն կերպ խրախուսում այդ կոչման համար պայքարողներին։ «Էլեկտրոն» գործարանի կոլեկտիվը, ամբողջությամբ վերցրած, այդ կոչման հավակնորդ է։

Հայրենասիրական այս հզոր շարժման ակունքը սովետական իշխանության առաջին տարիներին ծավալված կոմունիստական շաբաթօրյակներն են։ Իզուր չէ, որ Վ. Ի. Լենինն ասում էր, որ շաբաթօրյակների մեջ երևան է գալիս ինչ-որ կոմունիստական բան (տե՛ս Երկեր, հ. 30, էջ 357)։

Կոմունիստական շաբաթօրյակների մեջ Վ. Ի. Լենինը տեսնում էր կոմունիզմի արշալույսը, նրա ծիլերը։ Մարդկային պատմության համար ոչ այնքան էլ մեծ ժամանակահատվածում այդ ծիլերն աճեցին և տվեցին հիանալի պտուղներ։ Կոմունիստականի կոչման համար Սովետական Միության աշխատավորների ծավալած զանգվածային շարժումը և 1969 թվականից սկիզբ առած ու ամեն տարի ապրիլին անցկացվող համաժողովրդական շաբաթօրյակներն այսօր դիտվում են որպես կոմունիզմի որոշակի պտուղներ, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դրսևորման կազմակերպված ձևեր։ Այդ շաբաթօրյակները մասսայական բնույթ են կրում։ Այստեղ անձնական ու հասարակական շահերի միասնությունը, հասարակական շահերը վեր դասելու ձգտումը հասել են օրինաչափ զարգացման բարձր մակարդակի։ Բավական է նշել, որ այս տարվա ապրիլի 15-ի համամիութենական շաբաթօրյակին մասնակցեցին Սովետական Հայաստանի ավելի քան մեկ միլիոն բանվորներ, կոլտնտեսականներ և ծառայողներ, որոնք մեծ ներդրում կատարեցին հնգամյակի ֆոնդում։ Միայն արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները թողարկեցին վեց միլիոն ռուբլու արտադրանք, շաբաթօրյակին մասնակցած բանվոր-ծառայողների աշխատավարձը կազմեց մեկ միլիոն 300 հազար ռուբլի։ Այդ օրը Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը, օրինակ, արտադրեց 100 կվտ հզորության 100 գեներատոր, «ԴԱՁՕ» տիպի մեկ խոշոր էլեկտրական մեքենա, բարձր հաճախականության վեց վերափոխիչ, 30 տրանսֆորմատոր, ութ տրանսֆորմատորային կոմպլեքսային ենթակայան, առևտրական կազմակերպություններին ուղարկեց «Արագած» մակնիշի 400 սառնարան։ Էլեկտրամեքենաշինարարները հնգամյակի ֆոնդը մուծեցին մի քանի տասնյակ հազար ռուբլի (տե՛ս «Սովետական Հայաստան» օրաթերթ, 16 ապրիլի, 1972 թ.)։

Կոմունիստական աշխատանքի շարժման ընթացքում սովետական մարդիկ ձեռք են բերում նոր, լավագույն, միայն կոմունիզմ կառուցող մարդուն յուրահատուկ գծեր։ Նրանց հասարակական կարգապահությունն ստանում է նոր բովանդակություն, կրում ժամանակի պահանջների խոր կնիքը։ Աշխատանքի նկատմամբ կոմունիստական նոր վերաբերմունքը, հայրենիքի համար օգտաշատ գործեր կատարելու վսեմ ձգտումը զարգացնում են բանվորների ու կոլտնտեսականների արտադրական ու հասարակական ակտիվությունը, ծնունդ տալիս հայրենասիրական նոր, բազում նախաձեռնությունների։ Կուս-

կազմակերպությունների կողմից ջերմ պաշտպանություն գտած այդ նախաձեռնություններն ուղղվում են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի առաջադրանքների ժամկետից շուտ կատարմանը, աշխատանքի արտադրողականության անշեղ աճին, հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը։

Տակավին 1969 թվականին ՍՄԿԿ Կենտկոմը հավանություն տվեց աշխատանքի արտադրողականության աճի հաշվին արտադրության ծավալների մեծացման նպատակով աշխատավորների կոլեկտիվի մոբիլիզացման ասպարեզում Շչոկինոյի քիմիական կոմբինատի կուսկոմիտեի աշխատանքի փորձին։ Հայրենասիրական այդ նախաձեռնությունը չտեսնված արագությամբ արձագանք գտավ երկրի ձեռնարկություններում։ Հայաստանի շատ գործարանների ու ֆաբրիկաների կուսկազմակերպություններ ու կոլեկտիվներ ընդօրինակեցին Շչոկինոյի քիմիագործներին և շոշափելի հաջողությունների հասան աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։

Բանվորների ու կոլտնտեսականների, աշխատավոր մտավորականության կողմից ձեռներեցություն, ստեղծագործական մրցություն, համարձակ նախաձեռնություն ցուցաբերելու համար այժմ կան առավել լայն հնարավորություններ։ Այդ նախաձեռնություններն աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դրսևորման նոր եղանակներ են, անձնազոհության փայլուն օրինակներ, աշխատանքային մրցության համաժողովրդական թափի վառ արտահայտություն։

Մեծ է սոցիալիստական մրցությունից ծնունդ առնող հայրենասիրական նախաձեռնությունների առաջմղիչ դերը։ Դրանք կենսական պահանջ են առաջացնում սովետական մարդկանց հոգում՝ հզոր թափ հաղորդել հանրային արտադրության զարգացմանը, որոնել ու գործողության մեջ դնել համաժողովրդական հարստության նոր երակներ, կոմունիստական աշխատանքը դարձնել բարիքների առատության ու երջանկության հորդառատ աղբյուր։

Կուսակցությունը, ինչպես ընդգծվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, համակողմանիորեն խրախուսում է սովետական մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը, բարենպաստ պայմաններ ստեղծում դրանց տարածման, զարգացման ու իրականացման համար։ Հնգամյակը ժամկետից շուտ կատարելու վերաբերյալ Մոսկվայի և Լենինգրադի աշխատավորների հայրենասիրական նախաձեռնությունը վարակիչ օրինակ եղավ երկրի արտադրական կոլեկտիվների համար։ Դրան հետևեցին նոր շարժումներ ու նախաձեռնություններ, որոնք դարձան մեր առաջընթացի հզոր լծակներ։ Լենինգրադի մարզի աշխատավորները որոշել են, ի պատիվ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի, արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը գերակատարել 30 տոկոսով և ընթացիկ հնգամյակում արդյունաբերական արտադրանքի ողջ աճը ապահովել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Վորոշիլովգրադի մարզի աշխատավորների նշանաբանն է՝ չորս տարում հասնել աշխատանքի արտադրողականության այն աճին, որը նախատեսված է հնգամյակի վերջի համար։

Բնորոշ է նաև Լենինգրադի էլեկտրոնային սարքաշինական «Սվետլանա» միավորման օրինակը։ Այս ձեռնարկության ողջ կոլեկտիվը աշխատում է «Կերտել, մտածել, փորձարկել» նշանաբանով։ Կիրովականի «Ավտոմատիկա»



գործարանի կոլեկտիվը պայքարում է «Գործարանը բարձրարտադրողականության և հասարակական օրինակելի կարգ ու կանոնի ձեռնարկություն դարձնելու համար»։ «Աշխատել առանց խոտանի» նախաձեռնության հեղինակ են դարձել Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայի կարող բանվորուհիները։ Երկրի ձեռնարկություններում լայն տարածում են գտել «Հնգօրյակը՝ չորս օրում», «Հնգամյակը՝ չորս տարում» շարժումները։

Հատկանշական է, որ արտադրության առաջընթացին ուղղված հայրենասիրական նախաձեռնություններով հանդես են գալիս ոչ միայն մեծ ու փոքր կոլեկտիվները, այլև առանձին աշխատողներ, արտադրության անվանի առաջամարտիկներ։ Այս երևույթը սովետական մարդկանց խիզախումների, ստեղծագործական պոռթկումների, կոմունիստական աշխատանքի ուրույն դրսևորման վկայությունն է։ Միայն սոցիալիստական հասարակարգի քաղաքացին կարող է երևան բերել այդպիսի վեհ հատկություն, արտադրության արդյունավետության բարձրացումը համարել իր գլխավոր հոգսը, կյանքի նպատակը, բոլորանվեր, եռանդով պայքարել այդ նպատակի իրագործման համար։ Այս տեսակետից շատ բնորոշ է Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի փականագործ-գործիքագործ, սոցիալիստական աշխատանքի հերոս Ռոլանդ Մովսիսյանի՝ իններորդ հնգամյակը 3,5 տարում նախաձեռնությունը, որն արժանացել է ՀԱՄԽ-ի հավանությանը և լայն տարածում գտել հանրապետության բազմաթիվ ձեռնարկություններում։ Ուշագրավ է նաև Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի բանվորուհի, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ն. Զադորկինայի՝ հնգամյակի բոլոր տարիներին աշխատանքի արտադրողականությունը 20 տոկոսով բարձրացնելու վերաբերյալ կոչը։ Զադորկինան ևս շատ հետևորդներ ունեցավ։ Վերջերս Գոմելի հաստոցաշինական գործարանի մի խումբ առաջավոր բանվորներ հանդես եկան յուրաքանչյուր բանվորական տեղում արտադրության արդյունավետության բարձրացման համար պայքար ծավալելու, ոչ մի ետ մնացող արտադրամաս, տեղամաս, նույնիսկ բանվոր չունենալու վերաբերյալ նախաձեռնությամբ։ Այն ինքնաբուխ արձագանք գտավ հայրենի քաղաքում և տարակույս չկա, որ լայնորեն կտարածվի նաև երկրի ձեռնարկություններում, որովհետև պարզապես բխում է մարդկանց սրտերից, որովհետև այդպիսի ձգտումով են համակված նաև միլիոնավոր բանվորներ ու ինժեներա-տեխնիկական աշխատողներ։

Կոլեկտիվ ու անհատական նախաձեռնությունները, որոնք համաժողովրդական և հասարակական մեծ արժեք ու կարևոր նշանակություն են ստանում, արագ թափ են հաղորդում մեր առաջընթացի տեմպերին, երիցս նպաստում ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած հոյակապ խնդիրների լուծմանը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի մասսայական դրսևորումներին։

ՍՄԿԿ XXIV համագումարը յուրաքանչյուր աշխատողի բարձր պահանջկոտության ու պատասխանատվության, գիտակցական կարգապահության ու բարեխղճության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դրսևորման հիմնական չափանիշ համարեց տնտեսական շինարարության խնդիրների լուծման, պետական առաջադրանքների կատարման ասպարեզում մեր ձեռք բերած հաջողությունները։ «Երկրի տնտեսական նվաճումները,— ՍՄԿԿ XXIV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի և շինարարության, գիտության և կուլ-

տուրայի աշխատողների, մեր բազմազգ հայրենիքի բոլոր ժողովուրդների անձնվեր աշխատանքի արգասիք են» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, Երևան, 1971, էջ 49)։ Մեր երկրի բանվորները, կոլտնտեսականներն ու ծառայողները աշխատանքային հրաշքներ գործեցին սովետական պետության գոյության բոլոր տարիներին։ Սովետական ժողովրդի իսկական մեծագործությունների ժամանակաշրջանն էր ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման ութերորդ հնգամյակը։ 1970 թ. արդյունաբերության համախառն արտադրանքը, 1965 թ. համեմատությամբ, ավելացավ 50, գյուղատնտեսության արտադրանքի տարեկան միջին ծավալը՝ 21 տոկոսով։ Հանրային աշխատանքի արտադրողականությունը, յոթերորդ հնգամյակի 29-ի փոխարեն, ութերորդ հնգամյակում բարձրացավ 37 տոկոսով։

Սովետական Միության աշխատավորները չթուլացող խանդավառությամբ, արտադրական ու քաղաքական աննախընթաց ակտիվությամբ նախապատրաստվում են տոնելու ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը։ Մեծ տարելիցի պատվին ամենուրեք ծավալվել է սոցիալիստական գործարար մրցություն։ Սովետական մարդիկ պատրաստակամություն են հայտնում իրենց անձնվեր աշխատանքով, իրենց ջանքերի համակողմանի լարումով արմատական բեկում առաջացնել հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, կուսակցության XXIV համագումարի սահմանած տնտեսական քաղաքականության իրականացման համար մղվող համաժողովրդական պայքարում։ Ամենուրեք նրանք ստանձնում են իններորդ հնգամյա պլանով նախանշած բնագծերը գերազանցող պարտավորություններ, հանդես բերում հայրենասիրական նոր նախաձեռնություններ, դառնում նոր շարժումների հեղինակներ, կոմունիստական վերաբերմունք դրսևորում աշխատանքի նկատմամբ։

Անտարակույս, մեր երկրի էկոնոմիկայի անշեղ վերընթացին, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծմանը զուգընթաց երևան կգան նաև կոմունիստական աշխատանքի նոր ձևեր ու եղանակներ և, իրոք, ինչպես Կ. Մարքսն ու Վ. Ի. Լենինն են կանխատեսել, աշխատանքը կդառնա հաճելի զբաղմունք, հոգևոր պահանջմունք, հանրային բարիքի ու մարդկային երջանկության անսպառ աղբյուր։



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉԸ

*(ՀԱՂԹԱՆԱԿԻ ՕՐՎԱ ԱՌԹԻՎ)*

Հ. Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Պաճեստի գեներալ-մայոր

Սովետական զինված ուժերի ամբողջ պատմությունն անբաժան է ՍՄԿԿ ղեկավար գործունեությունից։ Այդ ղեկավարության մեջ է նրանց ուժի և անպարտելիության աղբյուրը, ռազմական շինարարության ընդհանուր օրինաչափությունը։ ՍՄԿԿ ծրագրի մեջ ընդգծված է՝ «Ռազմական շինարարության հիմքերի հիմքը զինված ուժերի նկատմամբ կոմունիստական կուսակցության ղեկավարությունն է, բանակում և նավատորմում կուսակցական կազմակերպությունների դերի և ազդեցության ուժեղացումը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, Հայպետհրատ, 1962 թ., էջ 534)։

Ռազմական գործում չկա այնպիսի հարց, որը կուսակցության տեսադաշտից դուրս գտնվի։ Կուսակցությունն է որոշում պետության՝ գիտականորեն հիմնավորված ռազմական քաղաքականությունը, զինված ուժերի կատարելագործման ուղիները, լուծում ռազմական տեսության կոնկրետ պրոբլեմները։ Նա ղեկավարում է բանակի և նավատորմի կադրերի պատրաստումը, կազմակերպում քաղաքական-մասսայական աշխատանքը, սովետական մարտիկներին դաստիարակում մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով, սոցիալիստական հայրենիքի նկատմամբ անհուն նվիրվածության ոգով։ Լենինյան կուսակցության ղեկավարությամբ մեր ժողովուրդն անցել է հերոսական ուղի, իր աշխատանքով և ռազմի գործերով բարձրացրել մեր հայրենիքի հեղինակությունը, նրա զինված ուժերի մարտական փառքը։

Նախապատերազմյան տարիներին ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը, զգալով ֆաշիստական Գերմանիայի կողմից սպառնացող վտանգը, սրբությամբ կատարում էին Վ. Ի. Լենինի այն պատգամը, որ «...առանց բանակի, առանց տնտեսական լուրջ նախապատրաստության անհնարին է ժամանակակից պատերազմ մղել իմպերիալիզմի դեմ (Военно-исторический журнал, 1970 г., № 12, стр. 31)։

Նախապատերազմյան հնգամյակների շնորհիվ նյութական նախադրյալ-

Ներ ստեղծվեցին ուժեղ և վտանգավոր թշնամու դեմ հաջողությամբ զինված
պայքար մղելու համար: Կուսակցության համագումարներում, Կենտկոմի
պլենումներում լուծվում էին նաև բանակի և նավատորմի տեխնիկական զին-
ման, պաշտպանունակության հարցերը: Կուսակցության XVII համագումարը
հաստատեց երկրորդ հնգամյա պլանը, որի հիմնական խնդիրն էր՝ ավարտել
ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական վերակառուցումը, ստեղ-
ծել պաշտպանական հատուկ արդյունաբերություն, որը կարողանա բանակն
ու նավատորմն ապահովել նորագույն ռազմական տեխնիկայով: Արդյունքն
իրեն սպասեցնել չտվեց: Երկրորդ հնգամյակում ամբողջ արդյունաբերության
համախառն արտադրանքն ավելացավ 120, իսկ պաշտպանական արդյունա-
բերության արտադրանքը՝ 286 տոկոսով:
1939 թ. մարտին տեղի ունեցած XVIII համագումարը պահանջեց ամեն
կերպ ամրապնդել սովետական զինված ուժերի մարտական հզորությունը:
Պաշտպանական արդյունաբերության արտադրական կարողությունների տա-
րեկան միջին աճը երրորդ հնգամյակում կազմեց 39 տոկոս, երբ ամբողջ ար-
դյունաբերության աճը 13,2 տոկոս էր: 1939 թ. մինչև 1941 թ. հունիս ամիսը
արտադրվեց 17.745 մարտական ինքնաթիռ, ավելի քան 7.000 տանկ, 8.200
հրետանային հրանոթ և ականանետ, մոտ 100.000 ավտոմատ և ամեն տե-
սակի ավելի քան 105.000 գնդացիր:
Երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման ընթաց-
քում մեր երկրի ձեռք բերած հաջողությունները վճռական դեր խաղացին ֆա-
շիզմի դեմ հաղթանակն ապահովելու գործում: Պատմական փորձը բացահայ-
տորեն հաստատում է կուսակցության ռազմական քաղաքականության ճըշ-
տությունը սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում, նախապա-
տերազմյան հնգամյակների վճռական նշանակությունը մեր երկրի պաշտպա-
նական կարողությունն ամրապնդելու համար:
Հայրենական մեծ պատերազմի տարիներին, իրագործելով սոցիալիստա-
կան հայրենիքի պաշտպանության համար պատերազմելու լենինյան սկըզ-
բունքները և նոր պայմաններում ստեղծագործորեն կիրառելով դրանք,
ՍՄԿԿ-ն տվեց ինչպես քաղաքական, տնտեսական, գաղափարական, այնպես
էլ ռազմա-ստրատեգիական ղեկավարության ցայտուն նմուշներ: Կուսակցու-
թյունը հանդես եկավ որպես կոլեկտիվ առաջնորդ, կազմակերպիչ և ղորա-
վար, որը ժողովրդի ամբողջ պայքարն ի սպաս դրեց մեկ նպատակի՝ ֆաշիզմի
ջախջախմանը:
Կուսակցության Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությու-
նը, օգտագործելով արտադրության սոցիալիստական եղանակի և պլանային
տնտեսվարության առավելությունները, երկրի էկոնոմիկան վերակառուցեցին
պաշտպանական կարիքների համար և գլխավորեցին այդ վիթխարի մասշտա-
բի աշխատանքը: Հայրենական մեծ պատերազմի տարիներին Արևելքում վե-
րաբազավորվեցին 1523 արդյունաբերական ձեռնարկություն, այդ թվում՝ 1360
խոշոր գործարան, ավիացիոն ձեռնարկությունների 85 տոկոսը, սպառազի-
նություն արտադրող գործարանների գրեթե երեք քառորդը, տանկաշինական
բոլոր գործարանները: Միաժամանակ՝ ավելի քան 10 միլիոն մարդ էվակուաց-
վեց թիկունքային շրջանները:
Կոմունիստական կուսակցությունը լուրջ ուշադրություն նվիրեց սովե-
տական ռազմական տեխնիկայի կատարելագործման հարցերին, որի շնորհիվ



1942 թվականի վերջերին ստեղծվեց բարդ և արագ աճող ռազմական տնտե-
սություն, որն ի վիճակի էր անհրաժեշտ ամեն ինչ մատակարարել ռազմաճա-
կատին:
1943 թ. ռազմական արդյունաբերության համախառն արտադրանքը,
1942 թ. համեմատությամբ, ավելացավ 17 տոկոսով: Իսկ պատերազմի վերջին
երեք տարում՝ 1943—1945 թթ., տարեկան արտադրվում էին ավելի քան 30
հազար տանկ, մոտ 40 հազար առաջնակարգ մարտական ինքնաթիռ, մոտ
220 հազար հրանոթ և ականանետ, մոտ 450 հազար ձեռքի ու հաստոցավոր
գնդացիր: Նորագույն տեխնիկայի և սպառազինության մասսայական արտա-
դրությունը սովետական պետությանը հնարավորություն տվեց արդեն 1943 թ.
սկզբին կազմավորելու մեծ թվով տանկային ու մեքենայացված կորպուսներ
և տանկային մի քանի բանակ: Սովետական կառավարության հետևողական
ջանքերով մեր զինված ուժերը թշնամուն գերազանցեցին մարտական տեխ-
նիկայի ոչ միայն քանակով, այլև որակով: Դա ապահովեց 1943—1945 թվա-
կանների հարձակողական գործողությունների բարձր տեմպի արդյունավե-
տությունը:
Ինչպես նշված է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ թե-
զիսներում, ֆաշիզմի դեմ մղվող պատերազմը վերջացավ մեծ հաղթանակով,
որովհետև սոցիալիզմն ապահովեց ամբողջ սովետական հասարակության
անխորտակելի միասնությունը և նրա էկոնոմիկայի չտեսնված շարժունու-
թյունը:
Պատերազմի առաջին իսկ օրերից կազմակերպվեց պաշտպանության պե-
տական կոմիտե, որն իր ձեռքում կենտրոնացրեց ամբողջ իշխանությունը—
պետական, ռազմական և տնտեսական ղեկավարությունը: Պաշտպանության
պետական կոմիտեն միավորեց պետական և ռազմական հաստատությունների,
կուսակցական, արհմիութենական և կոմերիտական բոլոր կազմակերպու-
թյունների գործունեությունը: Զինված ուժերի մարտական գործողությունն
անմիջականորեն ղեկավարելու համար ստեղծվեց գերագույն գլխավոր հրա-
մանատարության զորակայան (ставка): Այդ օրգանները գլխավորում էին
կուսակցական, պետական և զինվորական ականավոր գործիչները:
Պատերազմի ստրատեգիական ղեկավարման բոլոր բնագավառների,
զորքի կազմակերպման և մարտական գործունեության նկատմամբ կոմունիս-
տական կուսակցության մշտական ղեկավարությունն ապահովվում էր պաշտ-
պանության պետական կոմիտեի, գերագույն գլխավոր հրամանատարության
զորակայանի, գլխավոր շտաբի, զինված ուժերի տեսակների և զորքի տե-
սակների հրամանատարության, ռազմաճակատների, նավատորմերի և բա-
նակների ռազմական խորհուրդների միջոցով:
Կուսակցությունը բանակում իր քաղաքականությունն իրագործում էր
ռազմական խորհուրդների միջոցով: Առանց այդ խորհուրդների հնարավոր
չէր լինի հաջողությամբ լուծել այն բազմազան ու բարդ խնդիրները, որոնք
Հայրենական մեծ պատերազմն առաջադրում էր սովետական զինված ուժերին:
Ինչպես փորձը ցույց տվեց, իրեն լիովին արդարացրեց այն սիստեմը, որ
կուսակցությունն ստեղծել էր զինված ուժերի ստրատեգիական ղեկավարման
համար:
Պատերազմի առաջին օրից մինչև վերջին օրը կուսակցության ուշադրու-
թյան կենտրոնում էին զինված ուժերն ամեն կերպ ամրապնդելու և նրանց



4. «Լենինյան ուղիով», № 5

մարտական գործունեությանը հետևելու հարցերը: Կուսակցության Կենտկոմը՝
Կենտկոմի շատ անդամների և անդամության թեկնածուների, կուսակցու-
թյան ականավոր գործիչների ուղարկեց զինվորական աշխատանքի: Բացի
Կենտկոմի անդամներից, գործող բանակի շարքերում էր միութենական հան-
րապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության մարզային և
երկրամասային կոմիտեների 120 քարտուղար: Նրանցից շատերը ռազմաճա-
կատների ռազմական խորհուրդների անդամներ, քաղվարչությունների և բա-
նակների քաղբաժինների պետեր էին: Կուսակցության անդամների մոտ 60
տոկոսը գտնվում էր զինված ուժերի կազմում: Նրա ավելի քան երեք միլիոն
լավագույն անդամներ զոհվեցին ռազմաճակատներում:

Կոմունիստական կուսակցության մտքի հասունությունը և գիտական խո-
րաթափանցությունն իրենց առավել վառ արտահայտությունը գտան Հայրե-
նական մեծ պատերազմի տարիներին: Նա կարողացավ ՍՍՀՄ ժողովուրդների
հզոր համագործակցության ամբողջ ուժը, մեր մեծ հայրենիքի աշխատավոր-
ների ջանքերն ու կամքն ի սպաս դնել մեկ նպատակի՝ ֆաշիզմի ջախջախմա-
նը: Կուսակցությունը կազմակերպչական վիթխարի աշխատանք կատարեց
ամբողջ երկիրը մարտական միասնական ճամբար դարձնելու համար: Ընդ
որում, ՍՄԿԿ-ն ելնում էր Վ. Ի. Լենինի այն ցուցումից, որ պատերազմի պայ-
մաններում բոլոր կոմունիստները, նրանց համակրողները, բոլոր ազնիվ բան-
վորներն ու գյուղացիները, բոլոր սովետական աշխատավորները պետք է զոր-
ծադրեն իրենց ուժերը ռազմականորեն՝ իրենց աշխատանքի, ջանքերի և մտա-
հոգությունների առավելագույնը նվիրելով անմիջականորեն պատերազմի
խնդիրներին:

Ժողովրդի բոլոր ուժերը գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ պայ-
քարելու համար մոբիլիզացնելու ծրագիրը շարադրված էր ՀամԿ(բ)Կ Կենտ-
կոմի և ՍՍՀՄ ժողկոմսովետի դիրեկտիվներում, որը 1941 թ. հունիսի 29-ին
ուղարկվել էր ճակատամերձ մարզերի կուսակցական ու սովետական կազմա-
կերպություններին: Կուսակցությունը լենինյան ուղղամտությամբ էր ժողո-
վրդի հետ խոսում այն ահարկու վտանգի մասին, որն սպառնում էր մեր
հայրենիքին, այն դժվարությունների մասին, որոնք սպասում էին մեզ հաղ-
թանակի ճանապարհին:

Կոմունիստական կուսակցությունն իր լավագույն զավակներին ուղար-
կում էր պայքարի ամենավտանգավոր և պատասխանատու տեղամասերը:
Մոսկվայի վրա թշնամու հարձակման ժամանակ մայրաքաղաքի կուսակցա-
կան կազմակերպությունը հսկայական աշխատանք կատարեց՝ Մոսկվան ամ-
րացնելու և պաշտպանելու համար: Պատերազմի դեռ առաջին ամիսներին,
ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ցուցումով, Մոսկվայի կազմակերպությունը ռազմաճա-
կատ ուղարկեց 100 հազար կոմունիստ և 300 հազար կոմերիտական:

Կոմունիստները և կոմերիտականներն ընթանում էին հայրենիքի պաշտ-
պանության առաջին շարքերում, արիության, անվեհերության և անձնազոհու-
թյան չտեսնված օրինակներ էին ցույց տալիս բոլորին: Մարտիկ կոմու-
նիստները բանակի պողպատե միջուկն էին այն հերոսական պայքարում, որ
բանակը մղում էր հակառակորդի դեմ: Բավական է ասել, որ պատերազմի
միայն առաջին տարում ավելի քան 400 հազար կոմունիստ իրենց կյանքը
զոհաբերեցին սովետական հայրենիքին: Կուսակցական կազմակերպություն-



ները տեղերում հսկայական դեր խաղացին իրենց մարզերի, քաղաքների և
շրջանների պաշտպանության համար:

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը
վիթխարի աշխատանք կատարեցին պահեստայինների արագ մոբիլիզացիան
ապահովելու, կանոնավոր զորամասեր կազմավորելու և պատրաստելու հա-
մար: Կուսակցությունը պատերազմի տարիներին դաստիարակեց և առաջ քա-
շեց զորավարների և կուսակցական-քաղաքական խոշոր աշխատողների մի
հիանալի համաստեղություն: Նրանք օժտված էին անհրաժեշտ բոլոր հատկու-
թյուններով, որպեսզի հաջողությամբ ղեկավարեին զորքերը՝ իր աննախըն-
թաց մասշտաբով ու թափով այդ պատերազմում: Բանակի և նավատորմի
անձնակազմի դաստիարակման և ուսուցման՝ մեր կուսակցության մշակած
հիմնական սկզբունքներն իրենց քննությունը բռնեցին գործնականում: Պա-
տերազմի տարիներին կուսակցական վսեմ հատկություններ, կազմակերպչա-
կան հիանալի ընդունակություններ ցուցաբերեցին բոլոր աստիճանի հրամա-
նատարներն ու քաղաշխատողները: Սովետական զինված ուժերի ամբողջ
անձնակազմը ցույց տվեց մասսայական հերոսության, զինվորական պարտ-
քին հավատարիմ մնալու ակնառու օրինակներ:

Կոմունիստական կուսակցությունը պատերազմի դժվարին պայմաննե-
րում կարողացավ մեր բանակը դարձնել սոցիալիստական պետության կադ-
րային հզոր բանակ: Մոսկվայի տակ, Ստալինգրադի մոտ, Կուրսկի աղեղում
մղված մեծ ճակատամարտերը ցույց տվեցին, որ սովետական ռազմիկները
սովորել են հարվածել թշնամուն՝ հաշվի առնելով նրա թույլ և ուժեղ կողմերը:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին գերմանական ֆաշիզմն ու
ճապոնական միլիտարիզմը ջախջախվեցին ո՛չ միայն այն պատճառով, որ սո-
վետական զենքը և սոցիալիզմի էկոնոմիկան ավելի հզոր էին, այլև մարք-
սիզմ-լենինիզմի անպարտելի ուժի, նոր հասարակություն կառուցողների ու
պաշտպանների գիտակցականության շնորհիվ:

Սոցիալիստական գաղափարախոսությունը փայլուն հաղթանակ տարավ
բուրժուական-ֆաշիստական գաղափարախոսության նկատմամբ: Եվ դա օրի-
նաչափ է: Սովետական մարդկանց հոգևոր նոր կերպարանքը, քաղաքական
բարձր գիտակցականությունը և գաղափարական համոզվածությունը, սոցիա-
լիստական բարոյականությունը, կոլեկտիվիզմի հոգեբանությունը, ժողո-
վուրդների բարեկամությունը, սովետական հայրենասիրությունը, կրթությունն
ու կուլտուրան բազմապատկեցին սովետների մեծ երկրի ներքին չտես-
նըված ուժը, որը հանդիսացավ Հայրենական մեծ պատերազմում Սովե-
տական Միության տարած համաշխարհային-պատմական հաղթանակի կա-
րևորագույն աղբյուրներից մեկը: Ոգևորված սոցիալիստական հայրենիքի
պաշտպանության լենինյան գաղափարներով, պատերազմի արդար նպատակ-
ներով, սովետական ժողովուրդն ու նրա բանակը հարաճուն խանդավառու-
թյամբ, եռանդով ու համառությամբ էին պայքարում թշնամու դեմ, արիաբար
հաղթահարում չտեսնված դժվարությունները, զրկանքները և, վերջին հաշվով,
կոտրեցին ֆաշիստական գազանի ողնաշարը, նրան ոչնչացրին իր իսկ սեփա-
կան որջում:

Այդ ահեղ օրերին մեր կուսակցության կատարած գաղափարախոսական
աշխատանքը վառ կերպով բացահայտում է նրա ամբողջ գործունեության
կարևորագույն գիծը, այն է՝ խոր գիտականությունը, հավատարմությունը

մարքսիզմ-լենինիզմին, լենինյան գաղափարներին ու սկզբունքներին։ Կու-
սակցության գաղափարախոսական ամբողջ աշխատանքի համար գործողու-
թյան ուղեցույց հանդիսացավ Վ. Ի. Լենինի սկզբունքային այն դրույթը, ըստ
որի՝ ամեն մի պատերազմում հաղթանակը, վերջին հաշվով, պայմանավոր-
վում է այն մասսաների հոգեվիճակով, որոնք արյուն են թափում կռվի
դաշտում։

Կուսակցությունն իր գաղափարական-քաղաքական գործունեության գլ-
խավոր բովանդակությունը տեսնում էր այն բանում, որ ամրապնդեր հավա-
տը մեր հաղթանակի նկատմամբ, մասսաներին ներարկեր բարոյա-հոգեբա-
նական կայունություն և ակտիվություն, մարդկանց դաստիարակեր հայրենի-
քի նկատմամբ անսահման սիրո և նրա թշնամիների նկատմամբ՝ բուռն ատե-
լության ոգով, հայրենասիրության և ինտերնացիոնալ պարտքի նկատմամբ
հավատարմության ոգով։ Կուսակցությունը, նրա կազմակերպություններն ակ-
տիվորեն օգտագործեցին հոգևոր ներգործության բոլոր միջոցները— ագիտա-
ցիան ու պրոպագանդան, մամուլը, կինոն, գրականությունը, արվեստը, թի-
կունքից ռազմաճակատ և ռազմաճակատից թիկունք ուղարկվող նամակները՝
ժողովրդին և բանակին բացատրելու համար ֆաշիստական Գերմանիայի դեմ
մղվող պատերազմի նպատակները, բնույթն ու առանձնահատկությունները։

Կուսակցությունն ամեն մի էտապում պարզ ու հստակ ձևակերպում էր
լոզունգներն ու կոչերը, որոնք ջերմ արձագանք էին գտնում մասսաների շըր-
ջանում, ամրապնդվում նրանց գիտակցության մեջ և իրենց հսկայական ազ-
դեցությունը գործում զինված պայքարի ընթացքի վրա։ Բացառիկ կարևոր,
մոբիլիզացնող նշանակություն ունեցան կուսակցության «Մեռնել՝ չթողնել»,
«Ոչ մի քայլ դեպի ետ», «Ամեն ինչ ռազմաճակատի համար», «Ամեն ինչ հաղ-
թանակի համար» լոզունգները։

Կուսակցական-քաղաքական աշխատանքի բովանդակությունը համապա-
տասխանում էր պատերազմի յուրաքանչյուր կոնկրետ ժամանակաշրջանում
կուսակցության առաջ քաշած ռազմա-քաղաքական լոզունգներին, պատերազ-
մական գործողությունների ստրատեգիական, օպերատիվ և տակտիկական
խնդիրներին։ Բանակի և նավատորմի քաղբաժինները և կուսակցական կազ-
մակերպություններն ամեն օր հոգ էին տանում՝ բարձրացնելու համար ագի-
տացիոն-պրոպագանդիստական աշխատանքի գաղափարական մակարդակը,
արդյունավետությունը և ներգործությունը, ձգտում էին, որ ֆաշիստական
ստահոդ պրոպագանդայի և, ընդհանրապես, բուրժուական ստահոդ գաղա-
փարախոսության դեմ մեր պրոպագանդան ու ագիտացիան լինեն սուր, ճըշ-
մարտացի, հարձակողական։

Կուսկազմակերպությունները սովետական մարդկանց ոտքի էին հանում
անձնվեր աշխատանքի, հավատ էին ներշնչում մեր արդար գործի հաղթա-
նակի նկատմամբ։ Հայրենիքի կոչով գործարաններն էին գնում պատանիներն
ու աղջիկները, աշխատանքի էին վերադառնում թոշակառու կադրային բան-
վորները, ռազմաճակատ մեկնած բանվորների կանայք ու մայրերը։ Ջերմ
հայրենասիրություն ցուցաբերեցին սովետական կանայք։ 1941 թ. հոկտեմբեր
ամսին արդյունաբերության մեջ աշխատող կանանց թիվը հասավ բանվորների
ընդհանուր թվի 45 տոկոսին, իսկ 1942 թվականի վերջերին՝ 52 տոկոսին։

Պատերազմի տարիներին կուսակցությունը հանդես եկավ որպես պար-
տիզանական շարժման կազմակերպիչ։ Կենտրոնական կոմիտեի կոչով թըշ-



նամու թիկունքում ծավալվեց կուսակցության ընդհատակյա լայն աշխա-
տանքը։ 1941 թվականի վերջերին օկուպացված տերիտորիայում գործում էին
կուսակցության ավելի քան 250 ընդհատակյա մարզկոմներ, քաղկոմներ և
շրջկոմներ։ Նրանց ղեկավարությամբ Ռուսական Ֆեդերացիայի արևմտյան
մարզերում, Ուկրաինայում, Բելոռուսիայում և Մոլդավիայում ծավալվեց
պարտիզանական հզոր շարժում, որը միավորում էր ավելի քան 2000 պար-
տիզանական ջոկատների գործունեությունը։ Կուսակցության Կենտրոնական
կոմիտեի, թշնամու կողմից օկուպացված միութենական հանրապետություն-
ների կոմկուսների կենտկոմների, ընդհատակյա մարզկոմների, քաղկոմների
և շրջկոմների ղեկավարությամբ պարտիզանական շարժումը 1943—1944
թվականներին դարձավ մասսայական և վերածվեց ահեղ ուժի՝ թշնամու հա-
մար։ 1943 թ. վերջերին թշնամու թիկունքում գործում էին ավելի քան մեկ
միլիոն զինված պարտիզաններ, որոնք միավորված էին պարտիզանական ջո-
կատներում, բրիգադներում և խոշոր միավորումներում։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի
ցուցումով գերագույն գլխավոր հրամանատարության զորակայանին կից
ստեղծվեց պարտիզանական շարժման կենտրոնական շտաբ, իսկ մի քանի
ռազմաճակատների ռազմական խորհուրդներին կից՝ պարտիզանական հա-
տուկ շտաբներ։ Պարտիզանների մարտական գործողությունները սերտորեն
զուգորդվեցին սովետական բանակի օպերացիաների հետ և ստացան օպերա-
տիվ ճշգրիտ պլանավորման բնույթ։ Պարտիզանական գործողությունների
նպատակն էր՝ ավերել հակառակորդի կոմունիկացիաները և կարևորագույն
օբյեկտները, վիժեցնել նրա օպերատիվ վերախմբավորումները, ռեզերվների և
նյութա-տեխնիկական միջոցների առբերումը։

Գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի դեմ Սովետական
Միության հաղթանակը հաստատեց ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքակա-
նության ճշտությունը, նրա գիտական հիմնավորվածությունը, ճկունությունը
և խորաթափանցությունը ինչպես պատերազմի նախօրյակին, այնպես էլ պա-
տերազմի ընթացքում դժվարին պրոբլեմների լուծման գործում։

ՍՄԿԿ հեռատես և ակտիվ արտաքին քաղաքականությունը միջազգային
իմպերիալիզմին թույլ չտվեց միասնական ճակատով հանդես գալու Սովետա-
կան Միության դեմ։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական կա-
ռավարությունը հմտորեն օգտագործեցին երկրորդ համաշխարհային պատե-
րազմի պահին վաճառահանման շուկաների համար կապիտալիստական խո-
շոր խմբավորումների ճամբարում գոյացած հակասությունները։ Պատերազմը
կանխելու և ֆաշիստական ագրեսորին սանձահարելու համար սովետական պե-
տության մղած արդյունավետ պայքարը պառակտեց իմպերիալիստական
գիշատիչների ուժերը։ Դա խաղաղասեր ուժերի քաղաքական կարևոր հաջո-
ղությունն էր։ ՍՍՀՄ-ն առաջինը մարդկությանը նախազգուշացրեց համաշ-
խարհային ռազմական կոնֆլիկտի սպառնալիքի մասին, ակտիվորեն պայքա-
րում էր խաղաղության համար, վճռականորեն և հետևողականորեն մերկաց-
նում պատերազմի հրձիգներին, առաջարկում էր խաղաղությունը և ժողո-
վուրդների անվտանգությունն ապահովելու գործնական միջոցառումներ։ Սո-
վետական Միությունն առաջ քաշեց չհարձակվելու և չեզոքության պակտերի
գաղափարը, ընդհանուր և լիակատար զինաթափման ծրագիրը, առաջարկեց
ստեղծել կոլեկտիվ անվտանգության սիստեմ, որի իրագործումը կկաշկանդեր
ագրեսորներին։ Սակայն սոցիալիզմի երկրի խաղաղ նախաձեռնությունը

մերժվեց իմպերիալիստների կողմից, որոնց հետաքրքրում էր միայն մեկ բան՝ ինչպես անել, որ ֆաշիստական ագրեսիայի սուրն ուղղվի ՍՍՀՄ-ի դեմ։

Բնորոշ է, որ սովետական բանակի դեռևս 1941—1942 թթ. ձմեռային հարձակողական գործողությունները ռազմա-քաղաքական և դիվանագիտական վիթխարի նշանակություն ունեցան։ Տապալվեց «կայծակնային» պատերազմի հիտլերյան պլանը, ֆաշիստներն առաջին անգամ կրեցին ռազմական խոշոր պարտություն։ Մոսկվայի տակ գերմանա-ֆաշիստական զորքերի ջախջախումը լուրջ ազդեցություն գործեց Հայրենական մեծ պատերազմի և, ընդհանրապես, երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքի վրա, Ճապոնիային և Թուրքիային հարկադրեց ձեռնպահ մնալ և հանդես չգալ Գերմանիայի կողմում՝ ՍՍՀՄ-ի դեմ։ 1942 թ. մայիսին ստորագրվեց անգլո-սովետական պայմանագիրը՝ հիտլերյան Գերմանիայի և նրա եվրոպական արբանյակների դեմ մղվող պատերազմում դաշինքի և պատերազմից հետո համագործակցության ու փոխադարձ օգնության մասին։ Նույն տարվա հունիսին համաձայնություն ստորագրվեց ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև՝ ագրեսիայի դեմ պատերազմելու և փոխադարձ օգնության համար կիրառվող սկզբունքների մասին։ Սովետական բանակի և սովետական դիվանագիտության ջանքերի միավորումը վճռական ազդեցություն գործեց Թուրքիայի դիրքի, չեզոք երկրների կողմից լոյալություն պահպանելու, Եվրոպայի ժողովուրդների ազատագրական պայքարի, ինչպես նաև աշխարհի հետպատերազմյան կարգավորման վերաբերյալ Անգլիայի ու ԱՄՆ-ի ռեակցիոն շրջանների պլանների վիժեցման վրա։

Սովետական բանակի ուժի ու հզորության աղբյուրը սովետական ժողովուրդների անխախտ բարեկամությունն ու համագործակցությունն են, նրանց միավորումը միասնական մեկ պետության մեջ։ Իր ժամանակին սովետական տաղանդավոր զորավար Մ. Ֆրունզեն ասել է, որ Սովետական Հանրապետությունների Միությունը տարբեր ազգությունների միություն է, կարմիր բանակը, լինելով նրա արտացոլումը, ոչ թե ազգային բանակ է, այլ՝ նույնպես միություն, բայց մարտական միություն, ուր սովետական բոլոր հանրապետությունների զավակները սովորում են ռազմական գործը ձեռք-ձեռքի տված՝ պատրաստ միասնական ուժերով պաշտպանելու սովետական հողը։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում կուսակցությունը ռազմական շինարարության ասպարեզում ուշադրությունը կենտրոնացրեց առաջնահերթ պրոբլեմների լուծման վրա։ Առաջինը՝ բազմակողմանիորեն զարգացնել ռազմագիտությունը և մշակել սոցիալիստական պետության ռազմական դոկտրինան, որ գիտականորեն որոշեր ապագա հնարավոր պատերազմի իրական բնույթը, սահմաներ զինված ուժերի առավել նպատակահարմար կառուցվածքը և նրանց հետագա զարգացման հիմնական ուղղությունները։ Երկրորդ՝ գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների հիման վրա և ժամանակակից ռազմավարության պահանջներին համապատասխան՝ իրագործել զինված ուժերի բոլոր տեսակների վերազինումը և տեխնիկական հանդերձավորումը։ Երրորդ՝ մշտապես ապահովել զինված ուժերի մարտական բարձր պատրաստականությունը և կասեցնել մեր երկրում կոմունիստական խաղաղ շինարարությունը խանգարելու՝ ագրեսորների ամեն մի փորձ։

Ներկայումս, հետպատերազմյան իրադրության մարքս-լենինյան խոր վերլուծության հիման վրա, մշակվել է հայացքների այն կուռ սիստեմը, թե ինչ-



պես պետք է կազմակերպել Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների պաշտպանությունը, ռազմական շինարարությունը, բանակի ու նավատորմի անձնակազմի ուսուցումն ու դաստիարակությունը։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն իր ծրագրում գրել է, որ մեր զինված ուժերը պետք է լինեն հզոր և ունենան հայրենիքի պաշտպանության համար ամենաժամանակակից միջոցներ՝ ատոմային և ջերմամիջուկային զենք, ամեն շառավղով գործող հրթիռներ, պատշաճ բարձրության վրա պահեն ռազմական տեխնիկայի ու զենքի բոլոր տեսակները։ Այժմ մեր զինված ուժերն սպառազինված են զինված պայքարի ամենաժամանակակից միջոցներով՝ միջուկային զենքով, տարբեր հեռարձակության հրթիռներով, հրթիռակիր ատոմային սուզանավերով, կատարյալ հրետանիով, զրահապատ ավտոմոբիլներով և այլն։ Մեր ստրատեգիական ծառայության հրթիռային զորքերն այժմ կազմում են սովետական երկրի պաշտպանական հզորության հիմքը։ Զգալիորեն ավելացել է ցամաքային զորքերի կրակային կարողությունը, հարվածային ուժը և մանևրայնությունը։ Արմատական վերափոխություններ են տեղի ունեցել երկրի հակաօդային պաշտպանության զորքերի մեջ, ռազմա-օդային և ռազմա-ծովային նավատորմում։

Սովետական ժողովուրդը վճռականորեն մերկացնում է խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի թշնամիների ոտնձգությունները, իմպերիալիզմի ու մեծապետական հեգեմոնիզմի գաղափարախոսությունն ու քաղաքականությունը, է՛լ ավելի բարձրացնում իր հեղափոխական զգոնությունը։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարին տված զեկուցման մեջ ասաց. «Ամեն անգամ, երբ իմպերիալիստներին հարկ է լինում քողարկել իրենց ագրեսիվ միջոցառումները, նրանք փորձում են հարություն տալ «սովետական սպառնալիքի» առասպելին։ Նրանք այդպիսի սպառնալիքի նշաններ են փնտրում թե՛ Հնդկական օվկիանոսի խոր ջրերում և թե՛ Կորդիլերների գագաթներին։ Իսկ ինչ վերաբերում է Եվրոպայի հարթություններին, եթե նայելու լինենք ՆԱՏՕ-ական հեռադիտակներով, ապա առհասարակ ոչ մի բան չենք տեսնի, բացի Արևմուտքի վրա նետվելու պատրաստ սովետական դիվիզիաներից։

Բայց Սովետական Միությանը խորթ մտադրություններ վերագրելու փորձերը ժողովուրդներին չեն խաբի։ Մենք ամենայն պատասխանատվությամբ հայտարարում ենք. որևէ մեկի նկատմամբ մենք տերիտորիալ հավակնություններ չունենք, մենք ոչ ոքի չենք սպառնում և ոչ ոքի վրա մտադրություն չունենք հարձակվելու, մենք կողմնակից ենք բոլոր ժողովուրդների ազատ ու անկախ զարգացմանը։ Բայց թո՛ղ մեզ հետ էլ ոչ ոք չփորձի խոսել ուլտիմատումների և ուժի լեզվով։

Մենք ունենք անհրաժեշտ ամեն բան— թե՛ խաղաղության ազնիվ քաղաքականություն, թե՛ ռազմական հզորություն, թե՛ սովետական ժողովրդի համախմբվածություն, որպեսզի մեր սահմանների անձեռնմխելիությունն ապահովենք ամեն կարգի ոտնձգություններից և պաշտպանենք սոցիալիզմի նվաճումները» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, Ե., 1971, էջ 37)։

# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ԵՎ ՌԵՎԻԶԻՈՆԻԶՄԸ

Մ. Խ. ԻԳԻԹԽԱՆՅԱՆ

*Արդի ռևիզիոնիստները, քողարկվելով «ստեղծագործական մարքսիստների» կեղծ դրոշի ներքո, աղճատում են մարքսիզմ-լենինիզմի արմատական բոլոր սկզբունքները, այդ մեծ ուսմունքի բոլոր բաղադրամասերը։ Ռևիզիոնիստների միջև գոյություն ունի աշխատանքի որոշակի բաժանում, նրանցից ոմանք կեղծում են մարքս-լենինյան փիլիսոփայությունը, ոմանք՝ քաղաքատնտեսությունը, կամ գիտական սոցիալիզմի տեսությունը։ Նրանց տեսական վարժությունների համար ընդհանուրը բանվոր դասակարգի համաշխարհային-պատմական առաքելության, կապիտալիզմը հեղափոխական ճանապարհով սոցիալիզմի վերափոխելու գործում նրա առաջատար դերի ժխտումն է։ Այդ ռենեգատները բանն այնպես են պատկերացնում, թե մարքսիզմը, իբր, ամենևին բանվոր դասակարգի գաղափարախոսությունը չէ, այլ դասակարգային շահերից ու նպատակներից զերծ մի «զուտ» փիլիսոփայություն ու գիտություն է, որը կոչված է միատեսակ ծառայելու «հումանիզմի համար պայքարող» սոցիալական բոլոր խավերին։*

*Պատմության, հատկապես XX դարի ողջ ընթացքը տվեց միջազգային բանվոր դասակարգի հեղափոխական-վերափոխող հզորության և մարքս-լենինյան գաղափարախոսության խոր ճշմարտացիության անթիվ վկայություններ, գաղափարախոսություն, որի սկզբունքները մարմնավորված են սոցիալիստական հասարակարգում, միլիոնավոր աշխատավորների առօրյա ապրելակերպի գիտակցության և գործունեության մեջ։ Եվ խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի ճանապարհին մարդկության առաջընթացի յուրաքանչյուր հաջորդ քայլը կատարվում է իմպերիալիզմի, նրա ռեակցիոն քաղաքականության և գաղափարախոսության դեմ աշխատավոր մասսաների մղած դասակարգային ամենասուր մարտերի ընթացքում։ Այդ պայքարում չեզոքություն չկա և չի կարող լինել։ Դասակարգերից ու կուսակցություններից «վեր» կանգնելու, նրանց պայքարից «մի կողմ» քաշվելու ամեն մի փորձ, ինչպես ուսուցանում էր Վ. Ի. Լենինը, կուսակցականության արտահայտություն է, միայն թե ոչ պրոլետարական, սոցիալիստական, այլ բուրժուական։*

*Ահա թե ինչու, ռևիզիոնիստների կողմից մարքսիզմը խեղաթյուրելու պատճառներն ու շարժառիթները ճիշտ հասկանալու համար հարկավոր է հաշ-*



*վի առնել այն օբյեկտիվ դերը, որ խաղում են ռևիզիոնիստները բանվոր դասակարգի և բուրժուազիայի, սոցիալիզմի և իմպերիալիզմի միջև մղվող պայքարում, այն պայքարում, որը ներկայումս բոլոր բնագավառներում, հատկապես գաղափարախոսության ասպարեզում զգալի չափով շիկացել է։*

## 1.

*Արդիականության երկու հիմնական՝ սոցիալիստական և բուրժուական, գաղափարախոսությունների միջև մղվող պայքարը բառացիորեն ընդգրկել է մարդկության հասարակական կյանքի բոլոր ոլորտները և ամենաանմիջական ազդեցություն է գործում դասակարգերի, կուսակցությունների ու պետությունների քաղաքականության, ժողովրդական հոծ զանգվածների կենսական շահերը շոշափող, նրանց ճակատագրի ու ապագայի հետ կապված խնդիրների բազմաբովանդակ ամբողջության մերձեցման ու լուծման բնույթի վրա։ Այդ պայքարի ընթացքում բուրժուական գաղափարախոսությունը ձգտում է, իր հնացած գաղափարախոսական ասպազենը բարեփոխելով, ավելի ու ավելի հարմարվել աշխարհի փոփոխվող վիճակին։ Եվ այդ հասկանալի է։ Մարքս-լենինյան, սոցիալիստական գաղափարախոսության վիթխարի հաջողությունները մեծ տագնապ են առաջացնում իմպերիալիզմի բանակում և այնպիսի ալտերնատիվ գաղափարների ու կոնցեպցիաների տենդագին որոնումների անհրաժեշտություն ստեղծում, որոնք ունակ լինեն արգելապատնեշ ստեղծելու այդ անկասելի ազդեցության դեմ, միաժամանակ, հստակ շահագրգռվածություն են հարուցում՝ ամրացնելու «դաշինքը» բանվորական շարժման մեջ գոյություն ունեցող բոլոր հակամարքսիստական, օպորտունիստական հոսանքների հետ։ Իսկ եթե հաշվի առնենք, որ բացահայտ հակակոմունիստական ուղղությամբ ընթացող ռևիզիոնիզմի ուղին նույնպես իր տրամաբանությամբ, բնականաբար, կապված է մարքսիզմն ի սկզբանե կեղծելու և բանվոր դասակարգի շահերին դավաճանելու հետ, ապա պարզ կդառնա, թե ինչպես է հակակոմունիզմին հաջողվում առանց հատուկ ջանքերի հավաքագրել այդ կեղծ մարքսիստներին և իրենց նպատակների համար օգտագործել նրանց։*

*Այդպիսի «ալյանսի» հարցում իմպերիալիստական բուրժուազիայի շահագրգռվածությունը կապված է մի շարք պատճառների հետ։ Առաջին, ռևիզիոնիստները, ինչպես հույս ունի իմպերիալիզմը, առավել լավ կարող են աջակցել միջազգային կոմունիստական և բանվորական շարժման, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի պառակտման և դրանք գաղափարապես զինաթափելու իր ստրատեգիական պլանի կենսագործմանը։ Չէ՞ որ ռևիզիոնիստները միաժամանակ գործում են կոմունիստական կուսակցությունների ներսում, ինչպես և սոցիալիզմի մի շարք երկրներում քողարկվում են կոմունիստների անունով։ Երկրորդ, նրանք ո՛չ միայն պարզապես չարաշահում են մարքսիստական, սոցիալիստական ֆրազաբանությունը, այլև մարքսիզմից կորզած ու աղճատած գաղափարներով պճնում են հակասոցիալիստական ուսմունքները, որը լիովին համապատասխանում է հակակոմունիստների մտադրությանը՝ արտաքին գրավչություն տալ իրենց գաղափարներին, գունափոխել այն արժեքները, որոնք ախորժելի չեն մասսայական գիտակցությանը և, դրանով իսկ, ամրապնդել սեփական գաղափարախոսության խարխլված ազդեցությունը։ Կեղծ սոցիալիստական ֆրազաբանությունն էլ հենց կոչված է խոչընդոտելու կապիտալի երկրների աշխատավորության այն զգալի խավերի գաղափա-*

րական «ինքնորոշմանը», որոնք, ավելի ու ավելի սուր գիտակցելով տիրապե-
տող հասարակարգի հակամարդասիրությունը, անարդարացիությունը, զգալով
դրա սոցիալական ու հոգևոր արժեքների ճգնաժամը, համակրում են սոցիա-
լիզմի գաղափարները, բայց դեռևս գտնվում են հիմնական դասակարգերի
միջև մղվող պայքարի քառուղիներում, պարզորոշ պատկերացում չունեն հա-
սարակության վերակառուցման ռեալ ուղիների մասին։

Եթե անցյալում մարքսիզմի «բարելավման» վերաբերյալ ռևիզիոնիզմի
«հոգատարությունը» գերազանցապես արտահայտվում էր նրա աշխարհայացքն
ու իմացության թեորիան նեոկանտականության, պոզիտիվիզմի հետ սինթեզե-
լու փորձերի մեջ և համեմատաբար քիչ ուշադրություն էր նվիրվում նրա փի-
լիսոփայության, պատմության և սոցիալ-քաղաքական տեսության ձևափոխ-
մանը, ապա սոցիալիզմի՝ ժողովրդական հոծ զանգվածների կյանքի ու պայ-
քարի իրականության վերածվելու հետ միասին դրությունն էականորեն
փոփոխվեց։ Ռևիզիոնիստներն այժմ էլ պակաս եռանդով չեն կեղծում մատե-
րիալիստական դիալեկտիկան և իմացության մարքս-լենինյան տեսությունը,
ուշադրություն նվիրելով դրանց «շտկմանն» ու «բարելավմանը»՝ էկզիստեն-
ցիալիզմին, ֆրոյդիզմին, նեոպոզիտիվիզմին և նույնիսկ ժամանակակից կրո-
նին։ Բայց մարքսիզմի աշխարհայացքի և մեթոդոլոգիական հիմքերի անհա-
մեմատ ավելի լայն մասշտաբներով և ավելի անմիջական աղճատումը այժմ
«բազա» և միջոց է մարքսիզմի, գիտական կոմունիզմի հետ ըստ էության
ընդհանուր ոչինչ չունեցող սոցիոլոգիական և քաղաքական կոնցեպցիաների
հիմնավորման համար։

Մարքս-լենինյան գաղափարախոսության դեմ ռևիզիոնիզմի գրոհներն
ամենասերտ կերպով կապված են հասարակական-տնտեսական ֆորմացիայի,
պատմության ու տեսության, օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների դիալեկտի-
կայի, դասակարգերի և դասակարգային պայքարի ուսմունքի մատերիալիստա-
կան ըմբռնման հիմքերի աղճատման հետ։ Այդ աշխարհայացքային արատնե-
րին անխուսափելիորեն հետևում է արդի դարաշրջանի և նրա շարժիչ ուժերի
լության կեղծումը, ինչպես նաև այն մեծ առաջադիմական դերի ժխտումը, որ
բանվոր դասակարգի գաղափարախոսությունը՝ մարքսիզմ-լենինիզմը, կատա-
րում է հասարակական առաջընթացի օբյեկտիվ հնարավորություններն իրա-
կանություն դարձնելու գործում։

Մարքսիզմը հիմնավորեց, որ մասնավոր սեփականության ծագման, ֆի-
զիկական աշխատանքից մտավոր աշխատանքի անջատման և հասարակու-
թյան՝ հակամարտ դասակարգերի տրոհման ժամանակներից սկսած գաղա-
փարախոսությունների հակամարտությունը դարձավ այդ դասակարգերի միջև
մղվող պայքարի անկապտելի կողմն ու կարևոր ոլորտը, հետևաբար և՝ հասա-
րակության առաջընթաց զարգացմանը ներհատուկ պայմանը։ Տնտեսական և
սոցիալ-քաղաքական հիմնական հակասությունների լուծմանն ուղղված դա-
սակարգային պայքարում՝ գաղափարախոսությունների խաղացած դերի լույսի
տակ միայն կարելի է ճիշտ հասկանալ նաև դրանց և, առանձնապես, առա-
ջավոր դասակարգերի գաղափարախոսությունների ֆունկցիաները՝ մասսանե-
րին կազմակերպելու և մոբիլիզացնելու, նրանց ինքնագիտակցությունը, քա-
ղաքական կողմնորոշումը զարգացնելու, սոցիալական և բուրժուական իդեալը
ձևավորելու գործում։

Բուրժուական գաղափարախոսությունը, արտահայտելով և արդարացնե-



լով հասարակական առաջընթացն արգելակող դասակարգի շահերը, նպատակ
է հետապնդում հավերժացնել շահագործողական հարաբերությունները և դրանց
ծառայող քաղաքականությունը։

Բանն այն է, որ ռևիզիոնիզմին արմատապես խորթ է դասակարգային-
սոցիալիստական, կուսակցական մոտեցումը հասարակական երևույթներին,
և սա է մարքսիզմը և նրա գաղափարախոսությունը խիստ աղճատող հիմնա-
կան պատճառը։ Բոլոր ռևիզիոնիստների համար ընդհանուրն այն է, որ նրանք
փաստորեն ժխտում են բանվոր դասակարգի և բուրժուազիայի, սոցիալիզմի
և իմպերիալիզմի ուժերի, այդ թվում նաև գաղափարախոսական ձևով մղվող
պայքարի օբյեկտիվ և օրինաչափական բնույթը։ Այսպես, մարքսիզմի ռևի-
զիայի հանրահայտ «մասնագետ» Էռնստ Ֆիշերը, որը հիմա վտարված է
Ավստրիայի կոմկուսից, հարցնում է՝ «Ինչո՞ւ պետք է փոխել բարձր զարգա-
ցած ինդուստրիալ հասարակությունը, եթե բանվոր դասակարգը սոված չէ և ի
վիճակի է բավարարելու իր շատ պահանջմունքները...»[1]։

Իսկ ումի՞ց է կազմված, ըստ Ֆիշերի, բանվոր դասակարգը։ Պարզվում է,
որ «ժամանակակից բանվորը... հասարակական իրավունքներ նվաճած որակ-
յալ բանվոր է...»[2]։ Բայց եթե Ֆիշերը գրչի մի հարվածով արդի աշխարհի մե-
ծագույն դասակարգը դարձնում է զարգացած կապիտալիստական երկրների
բանվորների մի խավ և վերջինիս սպառողական հոգեբանության չափանիշով
է որոշում ամբողջ բանվոր դասակարգի շահերն ու նպատակները, արդյոք
պե՞տք է զարմանալ, որ նման «բանվոր դասակարգին» հարկավոր չէ նաև հե-
ղափոխական գաղափարախոսություն։

Ժխտելով գլխավորը մարքսիզմի մեջ— բանվոր դասակարգի պատմական
առաքելության, սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտա-
տուրայի վերաբերյալ ուսմունքը, անտեսելով մարքս-լենինյան գաղափարա-
խոսության դերը այդ դարակազմիկ խնդիրների լուծման գործում, Ֆիշերն ու
մյուս ռևիզիոնիստները, այնուամենայնիվ, հավակնում են «մարքսիստների»
կոչում։ Նրանք, ինչ ասել կուզի, «մարքսիզմին» կողմնակից են, բայց այն-
պիսի «մարքսիզմի», որի մեջ «պահպանվում են» փիլիսոփայությունն ու գի-
տությունը, բայց չկա դասակարգային պայքարի տեսություն և գաղափարա-
խոսություն։ Ընդ որում, դժվար չէ նկատել, որ նման «մարքսիզմին» կհամա-
ձայնեին թե՛ անզուսպ հակակոմունիստները, թե՛ իդեալիստական փիլիսոփա-
յական ուղղությունների ներկայացուցիչները, որոնք, ի տարբերություն Ֆիշե-
րի, չեն ձևանում, թե իբր չեն հասկանում մարքսիզմի փիլիսոփայության կա-
պը հասարակության ու հեղափոխության մասին նրա տեսության, սոցիալիզ-
մի և կոմունիզմի ուսմունքի հետ։ Դասակարգա-աշխարհայացքային և սոցիալ-
քաղաքական էությունից Ֆիշերի «ազատագրած» մարքսիզմը, այնուհետև, ամ-
բողջականացվում է էկզիստենցիալիզմի և պոզիտիվիզմի հետ։ Ֆիշերը հայ-
տարարում է՝ «պրակտիցիզմի և պրագմատիզմի դարում կարևոր է ճշտել, թե
արդյոք մարքսիզմի այդ կողմը (դասակարգային պայքարի տեսությունը— Մ.
Ի.) պետք է առաջին պլա՞ն մղել, թե՞ այն բնորոշել որպես գիտություն և փի-
լիսոփայություն»[3]։

---

[1] Ernst Fischer. Kunst und Koexistenz. Gamburg, Rowohlt, 1966, S. 95.
[2] Ernst Fischer. Marxismus und Sdeologie.„ Weg und Ziel. Wien, 1955, № 5, S. 356.
[3] „Weg und Ziel“, 1965, № 7—8, S. 509.

Մարքսիզմը հանգեցնելով «գիտական վերլուծության» եղանակների ինչ-որ մի գումարի ու «պրակտիկայի փիլիսոփայության»[1] և վերջինիս անվան տակ հասկանալով քաղքենու՝ «դարի» կարիքներին համապատասխանող հարմարվողական գործունեություն, Ֆիշերը, դրանով իսկ ո՛չ միայն պարզապես ժխտում է մարքսիզմի դասակարգա-աշխարհայացքային հիմքերը, այլև, ըստ էության, կանգնում է այն վերացնելու դիրքերում։

Մինչդեռ, բանվոր դասակարգի հեղափոխական պրակտիկան, որ մարքսիզմի առաջացման ու հաստատման արմատական պայմաններից մեկն է, ռևիզիոնիստների գրառումներում պատկերվում է որպես քարացած, գիտությանը, գիտական տեսությանն ու գաղափարախոսությանը հակառակ մի բան։ «Գաղափարները, երբ դրանք տիրապետում են մասսաներին և նյութական ուժ են դառնում, գրեթե անխուսափելիորեն քարանում են գաղափարախոսության մեջ»[2],— գրում է Ֆիշերը։ Այստեղից էլ բխում են մարքսիզմը «մտավորականների» ուժերով «վերածնելու» նրա կոչերը։ Է. Բաումանը նույնպես գըտնում է, թե ամեն մի գաղափարախոսություն բաղկացած է առասպելներից, ստերեոտիպերի, հավատամքի խորհրդանիշներից և այլն, և իր այդ յուրահատկություններով կատարում է սոցիալական ֆունկցիա։ Ընդ որում, նա հասնում է այնպիսի անհեթեթության, թե... մարքսիզմի գաղափարախոսությունը նրանցից (բանվորներից— Մ. Ի.) ստեղծել է դասակարգ»[3]։

Մարքսիզմը կտրելով բանվոր դասակարգի արմատական շահերից, ռևիզիոնիստներն այն խղճուկ գաղափարն են քարոզում, որ եթե գաղափարախոսություն պետք էլ է, ապա դա միայն իշխանության ձգտող, կամ կառավարող խմբերի շահախնդրությունների ու նպատակների իրականացման համար է։ Ինչպես գրել է հարավսլավական ռևիզիոնիստ Մ. Մարկովիչը, մարքսիզմը սոսկ «սահմանափակ հասարակական խմբավորումների» հույզերի ու շահերի արտահայտությունն է և ծառայում է որպես «ցանկալի» ապագայի վերաբերյալ բանվոր դասակարգին ուտոպիական գաղափարներ ներշնչելու միջոց»[4]։

Բայց մի՞թե այդ ապագան ուտոպիա է։ Չէ՞ որ դրա հիմքերը դրված են սոցիալիզմի երկրներում, և նոր հասարակարգը բանվոր դասակարգին, ամբողջ աշխատավորությանն արդեն տվել է նյութական, սոցիալական և կուլտուրական մեծագույն բարիքներ, իսկ մարքս-լենինյան գաղափարախոսությունը դարձել է տիրապետողը այդ երկրների հասարակական գիտակցության մեջ։ Բայց դա ի՞նչ նշանակություն կարող է ունենալ քննադատության մոլուցքով փրփրած ռևիզիոնիստների համար։ Իրական սոցիալիզմի ամեն ինչը խորթ է նրանց համար. թե՛ կոմունիստական կուսակցության ղեկավար դերը, որին նրանք պատկերում են որպես «ընտրյալների բռնություն», թե՛ մարքս-լենինյան գաղափարախոսությունը, որը, ինչպես և սոցիալիստական պետությունը, գնահատվում է որպես մարդու նոր խորթացումն ամրապնդող միջոց։ Իսկ ինչպիսի «սոցիալիզմ» են առաջարկում իրենք՝ ռևիզիոնիստները։ Բավական է հիշել, ասենք, չեխոսլովակյան ռևիզիոնիստներ Կոսիկի, Պրուխի և այլոց գաղափարախոսական ու քաղաքական «կոնստրուկտիվ» ծրագիրը, ինչպես նաև

[1] Ibid.
[2] „Weg und Ziel", 1965, № 7—8, S. 511.
[3] Zygmunt Bauman. Idee, idealy, ideologie, Warszawa, „Skry", 1963, S. 72.
[4] Տե՛ս „Nasa stvarnost, Beograd, 1959, № 7—8.



պրակտիկ գործունեությունը «չեխոսլովակյան» սոցիալիզմ ստեղծելու մասին, որպեսզի ոչ մի տարակուսանք չմնա անձի «ազատության» և «ակտիվության», սոցիալիզմին առընթեր հասարակական ինստիտուտները «մարդասիրական դարձնելու» թեմայով նրանց սպեկուլյացիայի հակասոցիալիստական մանրբուրժուական բնույթի հարցում։ Հենց այդ դիրքորոշումների հետ էլ կապված են ռևիզիոնիստների հարձակումները սոցիալիստական գաղափարախոսության ու բարոյականության վրա, որ հաստատում են կոլեկտիվիզմի, հասարակական պարտքի հանդեպ գիտակցական ծառայության սկզբունքները, զարգացնում աշխատավորության լայն մասսաների դասակարգային ինքնագիտակցությունը։ Այդ սկզբունքներն ու նորմերը խորթ են քաղքենու ոգուն, նրա անհատապաշտական հոգեբանությանն ու բարոյականությանը։

Անկաշառ հետազոտություն հավակնելով, ռևիզիոնիստների տեսական սպեկուլյացիան օբյեկտիվորեն ուղղված է շատ կոնկրետ նպատակի՝ գաղափարապես զինաթափել բանվոր դասակարգին, մարքսիզմի ուսմունքից դուրս վանել աշխարհայացքային և դասակարգային հիմքերը և դրանով իսկ իմպերիալիզմի գաղափարական դիվերսիայի առաջ անցուղիներ բացել դեպի կոմունիստական և բանվորական շարժումը, սոցիալիզմի երկրներ։

Եվ բառացիորեն այսօրվա ռևիզիոնիստների մասին է խոսել Լենինը, դարի սկզբում մերկացնելով, այսպես կոչված, «քննադատական» ուղղությունը սոցիալիզմում. «Եթե մարդկանց մասին դատենք ոչ այն փայլուն համազգեստով, որ նրանք իրենք իրենց հագցրել են, ոչ այն էֆեկտավոր կոչանունով, որ նրանք իրենք յուրացրել են, այլ նրանով, թե ինչպես են վարվում նրանք և ինչ են իրոք քարոզում,— ապա պարզ կլինի, որ «քննադատության ազատությունը» օպորտունիստական ուղղության ազատությունն է սոցիալ-դեմոկրատիայի մեջ, սոցիալ-դեմոկրատական ռեֆորմների դեմոկրատական կուսակցություն դարձնելու ազատություն, սոցիալիզմի մեջ բուրժուական գաղափարներ և բուրժուական տարրեր արմատավորելու ազատություն» (Երկեր, հատ. 5 էջ 467)։

## 2.

Այսպիսով, ռևիզիոնիզմն ամեն մի դասակարգային գաղափարախոսություն, որպես «կեղծ գիտակցություն» հակադրում է սոցիալական գիտությանը, ինչը որ վկայում է արտացոլման մարքս-լենինյան տեսության սկզբունքներից նրա նահանջի և դասակարգային շահի ու ճշմարտության հարաբերակցության վերաբերյալ սուբյեկտիվիստական ու պոզիտիվիստական դիրքեր սողալու մասին։ Ռևիզիոնիստները պնդում են, թե իրենք դեմ են մարքսիստական գաղափարախոսությանը, բայց կողմնակից են մարքսիստական փիլիսոփայությանը, հետևաբար, ելնում են այն բանից, թե հնարավոր է անկուսակցական, գաղափարախոսությունից, գաղափարական պայքարից մի կողմ գըտնըվող մարքսիզմի փիլիսոփայություն։ Եվ, իբր, փիլիսոփայական իմացությունը՝ ոչ միայն մարքսիզմում, միշտ էլ աշխարհայացքային, գաղափարախոսական բնույթ չի կրում։ Բայց մարքսիստական փիլիսոփայությունն անջատել բանվոր դասակարգի գաղափարախոսությունից, նշանակում է աղճատել ու խեղաթյուրել նրա էությունը։ Չէ՛ որ մարքսիստական փիլիսոփայությունն ունակ է լինելու սոցիալական առաջադիմության հոգևոր հզոր ուժը, հաջողությամբ կատարելու գիտական ճանաչողության ու կանխատեսման ֆունկցիաները։ Այն,

առաջին հերթին, ծագում է որպես որոշակի դասակարգի աշխարհայացքի հիմք, այսինքն, որպես նրա փիլիսոփայական գաղափարախոսություն։ Այդ փիլիսոփայության բուռն զարգացումը հնարավոր է նաև այն բանի շնորհիվ, որ վերջինս նրա հետևությունների ու դրույթների հարստացման, այսինքն՝ իմացությունը խորացնելու, օբյեկտիվ ճշմարտությանն ավելի լրիվ հասնելու արմատական պայմաններից մեկն է, բնագիտության նվաճումների ամփոփման հետ միասին հանդիսանում է բուրժուազիայի դեմ միջազգային բանվոր դասակարգի, կապիտալիզմի դեմ մղվող սոցիալիզմի պայքարի փորձի նոր տվյալների վերլուծությունն ու ամփոփումը մարքս-լենինյան կուսակցությունների կողմից։

Մարքս-լենինյան փիլիսոփայության՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի կոչումը հենց այն է, որ, ճիշտ արտացոլելով բնության, հասարակության և մարդկային մտածողության օբյեկտիվ օրինաչափությունները, իր գիտական՝ տեսական ու մեթոդոլոգիական, հետևություններով նա ծառայում է աշխարհի կոմունիստական վերափոխման նպատակներին, վերափոխում, որը հնարավոր է որպես աշխատավորական մասսաների՝ գիտակցական, պրակտիկ-հեղափոխական գործունեություն՝ բանվոր դասակարգի և նրա մարքս-լենինյան կուսակցության ղեկավարությամբ։ Այդ ամենը ցույց է տալիս մարքսիզմի փիլիսոփայության իրագործվող գաղափարախոսական խնդիրների էությունն ու վսեմությունը։ Այդ փիլիսոփայության աշխարհայացքային դիրքերից ելնելով, աշխարհի՝ նրա բացահայտած ընդհանուր օրինաչափությունների հիման վրա, նրա մեթոդոլոգիայի մատերիալիստական դիալեկտիկայի վրա հենվելով, մարքսիստական-լենինյան կուսակցությունները մշակում են գիտական քաղաքականություն, զարգացնում բանվոր դասակարգի ինքնագիտակցությունը՝ նրան կազմակերպելով ու մոբիլիզացնելով կապիտալիզմի դեմ մղվող պայքարում, վիթխարի աշխատանք են տանում սոցիալիստական հասարակությունում լայն մասսաների կոմունիստական դաստիարակության համար։

Ինչպես գրել է Վ. Ի. Լենինը, մարքսիզմը «միացնում է խիստ ու բարձրագույն գիտականությունը (հանդիսանալով հասարակական գիտության վերջին խոսք) հեղափոխականության հետ և միացնում է ո՛չ թե պատահաբար, ո՛չ թե այն պատճառով միայն, որ դոկտրինայի հիմնադիրն անձնապես իր մեջ միացնում էր գիտականի ու հեղափոխականի հատկությունները, այլ միացնում է բուն իսկ թեորիայի մեջ ներքնապես ու անխզելիորեն։ Իսկապես, այստեղ իբրև թեորիայի խնդիր, գիտության նպատակ, ուղղակի դրվում է աջակցել ճնշվածների դասակարգին՝ իրոք տեղի ունեցող նրա տնտեսական պայքարում» (Երկեր, 1, էջ 417)։

Ակներև է պրոլետարիատի հեղափոխական գաղափարախոսությունը որպես «աննշան ճշմարտությունների» և պատրանքային, ուտոպիական հայացքների մի համակցության դիտելու բուրժուական փիլիսոփաների, սոցիոլոգների և ռևիզիոնիստների փորձերի անհեթեթությունը։ Սկսած Մ. Վեբերից մինչև Կ. Մանհեյմը, Ա. Շամբրեն և Ռ. Արոնը, Է. Բեռնշտայնից մինչև Ռ. Գարոդին, Լ. Կոլակովսկին, Մ. Մարկովիչը և Է. Ֆիշերը, գիտության ու կուլտուրայի և, իհարկե, նախ՝ մարքսիզմի այդ բոլոր «իբր գաղափարախոսները» փորձում էին և փորձում են հօգուտ իրենց հակագիտական դիրքերի որպես «ծանրակշիռ» փաստարկ օգտագործել Մարքսի երկերից կատարված մեջբերումները։ Մարք-



սը, ինչպես և Էնգելսը, հիրավի, գաղափարախոսությունն անվանում էին պատրանքային գիտակցություն՝ «դարաշրջանի պատրանք» և անգամ՝ «եղծված գիտակցություն»։ Բուրժուական գաղափարախոսներն ու ռևիզիոնիստները սահմանափակվում են սոսկ միայն այդ բանն արձանագրելով։ Մինչդեռ բանն այն է, որ Մարքսն ու Էնգելսը պատրանքային են համարել այն գաղափարախոսությունները, որոնք հիմնված են փիլիսոփայական իդեալիզմի վրա, ուստի և աղճատված են արտացոլում աշխարհն ու նրա օրենքները։ Հետևաբար, արմատապես սխալ է ռևիզիոնիզմի այն պնդումը, թե ամեն մի դասակարգային, այդ թվում և բանվոր դասակարգի գաղափարախոսությունը, պատրանքային է ու դոգմատիկ, ուստի և հակասում է օբյեկտիվ ճշմարտությանը։

Աղավաղելով Մարքսի և Էնգելսի հայացքները գաղափարախոսության վերաբերյալ, ներկայիս ռևիզիոնիստները համառորեն լռության են մատնում այն մեծ ավանդը, որ Վ. Ի. Լենինը ներդրել է մարքսիզմի զարգացման, ընդհանրապես՝ գաղափարախոսության, մասնավորապես՝ գիտական գաղափարախոսության մեջ, շրջանցում են նրանց հոգևոր նախորդների նկատմամբ Լենինի քննադատությունը։

Միջազգային ռևիզիոնիզմի դեմ մղած սուր պայքարում, միաժամանակ մերկացնելով լեգալ մարքսիզմը, էկոնոմիզմը և մախիզմը Ռուսաստանում, Վ. Ի. Լենինը պաշտպանեց և է՛լ ավելի զարգացրեց մարքսիզմի մեծ գաղափարական գանձարանը։ Պատռելով ռեֆորմիստների ու ռևիզիոնիստների՝ բանվորական շարժման մեջ բուրժուական քաղաքականության ու գաղափարախոսության այդ ուղեկիցների դիմակները, Լենինը ցույց տվեց, որ առանց հետևողական մատերիալիստական աշխարհայացքի, պրոլետարիատի իսկական հեղափոխական կուսակցություն լինել չի կարող, անիմաստ են գիտական քաղաքականությունն ու տակտիկան, հետևաբար, չի կարելի հաջողությամբ պայքարել հանուն սոցիալիզմի։ «Առաջավոր մարտիկի դերը կատարել կարող է միայն այն կուսակցությունը, որ ղեկավարվում է առաջավոր թեորիայով» (Երկեր, հ. 5, էջ 488)։ Լենինը նշում էր, որ պրոլետարիատի տարերայնորեն զարգացող դասակարգային պայքարի մեջ «սոցիալիզմը մտցվում է գաղափարախոսների կողմից» (Երկեր, հ. 6, էջ 198)։ Վ. Ի. Լենինն այդ խնդրի լուծման, կուսակցության տարած գաղափարական աշխատանքի հետ էր կապում բանվոր դասակարգի նկատմամբ բուրժուական և մանրբուրժուական ազդեցությունների հաղթահարումը։ «Քանի որ չի կարող խոսք լինել ինքնուրույն, հենց իրենց՝ բանվորական մասսաների կողմից նրանց շարժման ընթացքում մշակվող գաղափարախոսության մասին, ապա հարցը դրվում է միայն այսպես. բուրժուակա՞ն, թե՞ սոցիալիստական գաղափարախոսություն։ Միջին չկա այստեղ (որովհետև մարդկությունը ոչ մի «երրորդ» գաղափարախոսություն չի ստեղծել, բացի դրանից դասակարգային հակասություններից ծվատվող հասարակության մեջ առհասարակ չի էլ կարող լինել երբեք ապադասակարգային կամ վերդասակարգային գաղափարախոսություն)։ Ուստի, սոցիալիստական գաղափարախոսության ամեն մի նվաստացում, ամեն մի հեռացում նրանից՝ ինքնին նշանակում է բուրժուական գաղափարախոսության ուժեղացում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 5, էջ 507)։

Է՛լ ավելի զարգացնելով և կոնկրետացնելով գաղափարախոսության դասակարգայնության և կուսակցականության սկզբունքը, մերկացնելով «օբյեկտիվիզմը» որպես բուրժուական կուսակցականության արտահայտություն, Վ.

Ի. Լենինը բազմակողմանիորեն վերլուծեց սոցիալիստական և բուրժուական գաղափարախոսությունների հիմնական գծերն ու առանձնահատկությունները, բացահայտեց դրանց արմատական հակադրությունը, խորապես հիմնավորեց բուրժուական գաղափարախոսության դեմ հետևողական և անզիջում պայքարի օրինաչափությունն ու անհրաժեշտությունը։

Նոր պատմական դարաշրջանում, սոցիալիստական հեղափոխության հասունացման և, դրա հետ կապված, բանվոր դասակարգի կազմակերպական ու գաղափարական նախապատրաստման խնդրի, հեղափոխական կուսակցության ստրատեգիայի ու տակտիկայի մշակման կապակցությամբ, Լենինը հատուկ ուշադրություն դարձրեց փիլիսոփայական և քաղաքական գաղափարախոսության պրոբլեմների մշակմանը։ Վիթխարի նշանակություն ունի սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի տեսության, սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարում կոմունիստական կուսակցության և բանվոր դասակարգի դերի, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի, քաղաքականության մեջ և տակտիկայում, աշխարհայացքում և կուլտուրայում դասակարգայինի, միջազգայինի և ազգայինի հարաբերակցության տեսության զարգացումը Լենինի կողմից։ Լենինյան ժառանգության մեջ կարևոր տեղ է գրավում նաև կուսակցական պրոպագանդայի և ագիտացիայի պրոբլեմների, մասսաների մեջ գաղափարախոսության և ամբողջությամբ վերցրած գաղափարախոսական աշխատանքի գործունեության ձևերի ու մեթոդների մշակումը։ Վ. Ի. Լենինը հարստացրեց գիտական գաղափարախոսության տեսությունն ու պրոբլեմատիկան, օրգանապես նրա շրջագծի մեջ առավ այն կոմպլեքս հարցերը, որոնք կապված են բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների գործնական-վերափոխող գործունեության հոգեբանական կողմերի գիտակցական և պլանաչափ ձևավորման հետ՝ սկսած կոմունիստական կուսակցության սեփական տեսությունից, մինչև նրա քաղաքականության գաղափարական «ապահովման» միջոցների ու լծակների, ձևերի ու մեթոդների, ինչպես նաև սոցիալիստական կուլտուրայի գաղափարա-աշխարհայացքային և մեթոդոլոգիական ասպեկտների որոշումը։

Մարքս-լենինյան գաղափարախոսությանը, որպես ստեղծագործական ուսմունքի, արմատապես խորթ են «վերջին ատյանում» ճշմարտությունն ըմբռնելու պահանջները։ Այդ գաղափարախոսության գիտականությունն ապահովվում է նրա զարգացման ամբողջ պրոցեսի հիմքում գիտակցականորեն դրվող օբյեկտիվ, բացարձակ և հարաբերական ճշմարտության դիալեկտիկայով։

Ի տարբերություն բնագիտական գիտելիքների, որոնք թեև աշխարհայացքային առումով «սնում» են առաջադիմական դասակարգային գաղափարախոսությունները, բայց գաղափարախոսական բնույթ չունեն, կարող են զարգանալ նաև ռեակցիոն դասակարգերի շահերի դիրքերից ելնելով։ Փիլիսոփայական, սոցիալ-քաղաքական և այլ հասարակական գիտելիքների բնագավառում անցյալի նվաճումները սերտորեն կապված են առաջադիմական դասակարգային շահերին։

Ի պաշտպանություն գիտության ու գաղափարախոսության հակադրության վերաբերյալ թեզի, չափազանց տարածված «փաստարկ» է այն, թե, իբր գաղափարախոսությունը կապված է դատողությունների արժեքներին, մինչդեռ իրական գիտությունը գործ ունի հավաստիացման ենթարկվող ռեալ փաստերի



հետ։ Այսպես են պնդում Կ. Մանհեյմից, Ռ. Արոնից, Տ. Հեյհեմից հետո նաև բուրժուական՝ նույնպես ռեվիզիոնիստ փիլիսոփաներն ու սոցիոլոգները։ Բայց դժվար չէ նկատել, որ այդ փաստարկն ամբողջությամբ գտնվում է նրանց գաղափարախոսության պրոբլեմների սուբյեկտիվիստական և պոզիտիվիստական այն մեկնաբանության հունում, որը քննարկվեց վերը։ Չէ՞ որ, եթե, օրինակ, այնպիսի գաղափարախոսական և արժեքային դատողությունները, ինչպես, «սոցիալիստական հասարակարգի մարդասիրությունը» և «կապիտալիզմի հակամարդասիրությունը», կամ, ասենք, «իմպերիալիստական քաղաքականության հետադիմությունը», «նորի, առաջավորի անհաղթահարելիությունը» դիտենք այդ դատողությունների հիմքում ընկած օբյեկտիվ գիտելիքներից կտրված, ապա, հասկանալի է, այն ժամանակ հնարավոր կդառնա հակադրել այդ դատողություններում եղած գիտականորեն-հավաստին և արժեքավորը։ Բայց, քանի որ դատողությունների այդ և դրանց նման արժեքները, որոնք հենվում են գիտական իմացությունների վրա, երևույթների ու պրոցեսների նկատմամբ մարդկանց վերաբերմունքն արտացոլում են օբյեկտիվ հասարակական օրինաչափությունների դիրքերից, ապա, հետևապես, ակնհայտ է դառնում գաղափարախոսության ու գիտության նման հակադրման անհեթեթությունը։ Իրականության նկատմամբ արժեքային վերաբերմունքը միշտ յուրահատուկ է գիտնականին, որքանով որ այն արտահայտված է ճշմարտության նկատմամբ նրա ձգտման մեջ։ Առանց այդպիսի վերաբերմունքի, առանց ոգևորության ու հույզի ճշմարտության ըմբռնում չկա։

Այդպիսին է հիմնականում այն աղքատ հակագիտական մտապաշարը, որով արդի ռևիզիոնիստներն արշավանքի են դուրս եկել մարքսիստական գաղափարախոսության դեմ։ Ինչպես տեսանք, այդ մտապաշարը կրում է բուրժուական դրոշմը։

Մարքս-լենինյան գաղափարախոսության էության ու դերի ռևիզիոնիստական կեղծարարության, «ապագաղափարայնացման» հակագիտական կոնցեպցիաների մերկացումը գաղափարախոսական պայքարի կարևոր ասպարեզ է։ Այդ պայքարի ընթացքում ամրապնդվում է միջազգային կոմունիստական և բանվորական շարժման միասնությունը մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո։

Մոսկվա



# ԴԻԱԼԵԿՏԻԿԱԿԱՆ ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄԻ ԿԱՊԸ ԲՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՀԵՏ

Հ. Հ. ՍԱՀԱԿՅԱՆ

Դիալեկտիկական մատերիալիզմը գիտություն է բնության զարգացման և փոփոխության ամենաընդհանուր օրենքների մասին։ Այն հետազոտում է արտաքին աշխարհը, մատերիան և նրա կեցության ամենաընդհանուր ձևերը (շարժումը, տարածությունը և ժամանակը), շարժման ու զարգացման ընդհանուր օրենքները։ Մյուս կողմից՝ այն ուսումնասիրում է գիտակցության հարաբերությունը արտաքին աշխարհին, և նրա արտացոլումը մարդու գլխում։

Դիալեկտիկական մատերիալիզմը բնագիտությունից տարբերվում է իր իսկ առարկայի սպեցիֆիկ բնույթով։ Ուստի, այն չի կրկնում բնական գիտություններին, չի թափանցում նրանց սպեցիֆիկ բնագավառները, բայց միաժամանակ այդ բնագավառներն ընդհանուր կողմերով մտնում են դիալեկտիկական մատերիալիզմի ուսումնասիրության առարկայի մեջ, որպես ամբողջական բնության տարբեր կողմեր։

Դիալեկտիկական մատերիալիզմն իր ուսումնասիրության առարկայով և բովանդակությամբ ուրույն գիտություն է։ Բնական գիտությունները դիալեկտիկական մատերիալիզմից տարբերվում են նրանով, որ նրանց ուսումնասիրության բուն առարկան ո՛չ թե ամբողջ իրականությունն է, այլ նրա առանձին կողմերը։ Ուստի և բնական գիտությունները ո՛չ առանձին-առանձին, ո՛չ էլ բոլորը միասին վերցրած չեն կարող տալ բնության ամբողջական դիալեկտիկական բացատրությունը և ոչ էլ նրա ամբողջական պատկերը։ Նրանց մոտ բացակայում է բնության ամենաընդհանուր օրենքների, նրա առանձին կողմերի միջև փոխազդեցությունների ու կապերի բացահայտումը։ Դա իհարկե չի նշանակում, որ բնական գիտությունները բնության դիալեկտիկական բացատրություն չեն տալիս, չեն բացահայտում ընդհանուր օրենքներ և այլն։ Դրանք, լինելով առանձին գիտություններ, միաժամանակ անհրաժեշտորեն կապված են իրար և դիալեկտիկական մատերիալիզմի առարկայի հետ։ Այդ կապը պայմանավորված է նրանց առարկաների միասնությամբ և կրում է անհրաժեշտ բնույթ։ Դա կախված չէ փիլիսոփաների ու բնա-



խույզների ցանկությունից, այդ կապի ամեն մի անտեսում բացասաբար է անդրադառնում, ինչպես փիլիսոփայության, այնպես էլ բնագիտության վրա (Диалектический материализм и вопросы естествознания. М., изд. Ун-та, 1964, стр. 6):

Բնությունն իր մեջ է առնում թե՛ ընդհանուրը, և թե մասնավորը, եզակին։ Եզակին և ընդհանուրը հանդես են գալիս միասնության մեջ։ Ընդհանուրն առանց մասնավորի չի կարող հանդես գալ առանձին, այն գոյություն ունի մասնավորի մեջ։ Անտարակույս է, որ համընդհանուր օրենքները չեն կարող սահմանվել առանց մասնավոր գիտությունների փաստերի վերլուծության և ընդհանրացման, առանց մարդկանց պրակտիկ գործունեության, որը հնարավորություն է ընձեռում հայտաբերելու նաև ընդհանուրի և մասնավորի միջև եղած ընդհանուր կապը, հատկությունը և հարաբերությունը։ Ընդհանուրի և կոնկրետի իմացությամբ է ստեղծվում բնության դիտական պատկերը։ Իրականության ամբողջական պատկերը տալիս է դիալեկտիկական մատերիալիզմը։ Այն բնական գիտությունների փաստական նյութի վրա հենվելով ստեղծում է այդ պատկերը։

Դիալեկտիկական մատերիալիզմը բնագիտության նյութի մեջ բացահայտելով ընդհանուրը, հանդես է գալիս որպես սինթեզող և ընդհանրացնող գիտություն։ Եթե բնական գիտությունները մեզ տալիս են գիտելիք մատերիայի շարժման առանձին ձևերի և հատկությունների, հարաբերությունների մասին, ապա դիալեկտիկական մատերիալիզմն ընդհանրացնում է այդ գիտելիքները մի ընդհանուր սիստեմի մեջ, հետազոտում բնության, մատերիայի ամբողջական, հավիտենական պրոցեսը։ Այսպիսով, նրա ուսումնասիրության առարկան ո՛չ միայն ամբողջությունն է, այլև այն ամբողջականը՝ մատերիան, որը գտնվում է հավիտենական շարժման, զարգացման ու փոփոխման մեջ։ Եթե բնության մասին գիտությունները դնում և լուծում են այնպիսի խնդիրներ, որոնք կապված են մատերիայի և շարժումների կոնկրետ ձևերի, նրանց հատկությունների ու հարաբերությունների հետ, ապա դիալեկտիկական մատերիալիզմը, իր առարկայի բնույթից ելնելով, դնում և լուծում է այնպիսի խնդիրներ, որոնք կապված են մատերիայի ու նրա շարժման բոլոր ձևերի ու հատկությունների հետ, բացահայտում է նրա այն ընդհանուրը, որը հատուկ է մատերիային ամբողջությամբ։

Բնության ընդհանուր հարցեր դնող և լուծող գիտությունը՝ դիալեկտիկական մատերիալիզմը, հանդես է գալիս բոլոր բնական գիտությունների համար որպես ընդհանուր մեթոդոլոգիական և տեսական գիտություն։ Ամեն գիտություն իրեն հատուկ մեթոդների օգնությամբ կատարում է կոնկրետ հետազոտություններ։ Այն մեթոդները, որոնք կիրառելի են բնության կոնկրետ ուսումնասիրության համար, չեն կարող գործադրվել բնության ուսումնասիրման ոլորտում, որովհետև այդ գիտությունների ուսումնասիրության առարկան բնության մասնակի ուսումնասիրությունն է։

Հասկանալի է, որ բնական գիտությունների շրջանակները սահմանափակ են, դրանք ուսումնասիրում են մատերիայի շարժման ձևերի, հատկությունների ու հարաբերությունների առանձնահատկությունները։ Հետևաբար, բնական գիտությունները որքան էլ լայն ու խոր լինեն, իրենց առարկաների բնույթին համապատասխան չեն կարող տարածվել ամբողջ բնության վրա, դառնալ համընդհանուր տեսություններ։ Մինչդեռ, դիալեկտիկական մատերիալիզմի

մեթոդից օգտվում են բոլոր բնական գիտությունները, դրանց մեթոդները
դառնում են դիալեկտիկական մատերիալիզմի մեթոդի անալոգները: Հետևա-
բար դիալեկտիկական մատերիալիզմը մեթոդոլոգիական գիտություն է բնա-
կան գիտությունների համար:

Դիալեկտիկական մատերիալիզմի առարկայից է բխում նաև նրա ընդ-
հանուր տեսություն լինելը: Որպես այդպիսին, նրա մեջ արտացոլված է մա-
տերիան իր շարժմամբ և հատկություններով, ընդհանուր կապերով և դրանց
փոխազդեցություններով: Այդ տեսության միջոցով է բացատրվում բնությունն
իր ամբողջությամբ: Դիալեկտիկական մատերիալիզմի և բնագիտության տե-
սությունների միջև գոյություն ունի ներքին օբյեկտիվ կապ, որի հիմքը մա-
տերիան է, այն օբյեկտիվ ռեալությունը, որն արտացոլված է դիալեկտիկա-
կան մատերիալիզմի մեթոդի մեջ: Դիալեկտիկական մատերիալիզմը՝ որպես
համընդհանուր տեսություն բնության մասին, ուղեցույց է բնական գիտու-
թյունների համար: Այն սովորեցնում է, թե ինչպես է արտացոլվում օբյեկտը
գիտակցության մեջ, ցույց է տալիս սուբյեկտի և օբյեկտի փոխհարաբերու-
թյունը, օբյեկտիվ ճշմարտության հասնելու ուղին և այլն:

Այսպես, բնական գիտությունների առարկայի բնույթին համապատաս-
խան, նրանց խնդիրն է առարկաների ու երևույթների էության իմացման և
հայտնաբերված օբյեկտների պրակտիկայում օգտագործման հնարավորու-
թյան հիմնավորումը: Դիալեկտիկական մատերիալիզմի խնդիրն է՝ ելնելով
բնագիտության գիտելիքներից, ավելի ճիշտ ձևակերպել բնության ընդհանուր
օրենքներն ու օրինաչափությունները: Դիալեկտիկական մատերիալիզմն այդ
անելով, միաժամանակ մերկացնում է իդեալիզմի փորձերը՝ նսեմացնելու նրա
դերը բնագիտության զարգացման մեջ:

Ինչպես բնական գիտություններն են անընդհատ զարգանում, այնպես էլ
դիալեկտիկական մատերիալիզմը: Վերջինիս առաջընթացն անխզելի է բնա-
գիտության զարգացումից: Բնական գիտությունները զարգանալիս մատերիա-
յի կառուցվածքում հանդիպում են այնպիսի իրողությունների, որոնք ունեն
աշխարհըմբռնման, աշխարհճանաչման նշանակություն, հարուցում են փիլի-
սոփայական պրոբլեմներ, որոնք հետագա փորձարարական ու տեսական
լուծումների շնորհիվ դառնում են գիտական փաստեր, այսինքն՝ ճշմարիտ գի-
տելիքներ՝ գիտություն:

Այդ պրոբլեմները հետազոտման ընթացքում հանգեցնում են գիտական
նոր եզրակացությունների: Ըստ էության, բնագիտության մեջ անընդհատ ծա-
գում և լուծվում են փիլիսոփայության պրոբլեմները, որոնք փիլիսոփայական
մշտական պրոբլեմներից անկախ բան չեն: Նրանք անխզելիորեն կապված են
փիլիսոփայական պրոբլեմների հետ և կազմում են դրա առանձին կողմերը,
դրանց առանձին դրսևորումները: Ինչպես ասացինք, դիալեկտիկական մա-
տերիալիզմն ստեղծում է աշխարհի գիտական պատկերը, աշխարհը բացա-
տրում ամբողջությամբ վերցրած, իսկ բնական գիտությունների փիլիսոփա-
յական պրոբլեմներն այդ աշխարհի բացատրման առանձին կողմերին են վե-
րաբերում: Փիլիսոփայական պրոբլեմները մշտական վերանորոգվող պրոբ-
լեմներն են: Նրանք չեն կարող սպառվել, քանի որ մատերիան անսպառ խոր
և բարդ է: Այն գտնվում է հավերժական շարժման մեջ: Մատերիայի վերա-
բերյալ մարդկային գիտելիքները հարստանում ու խորանում են և միշտ կլի-



նեն հարաբերական, ուստի, մեր պատկերացումն էլ բնության մասին կմնա
հարաբերական:

Բայց գիտության զարգացման ամեն մի ժամանակաշրջանում նոր ձևով
են հարուցվում փիլիսոփայության պրոբլեմները (տարածությունը, ժամանա-
կը, շարժումը, մատերիայի կառուցվածքը, գիտակցության և այլ պրոբլեմ-
ներ):

Բնական գիտությունների փիլիսոփայական պրոբլեմները ծագում են
նրանց տարբեր կողմերի զարգացումից: Գիտությունը ձգտում է նոր փաստե-
րով և փորձերով հաստատել իմացության ճշմարտացիությունը, այն դարձնել
գիտականորեն հիմնավորված փաստ: Հենց այդ իմացությունը գիտություն
դարձնելու պրոցեսին օգնում է դիալեկտիկական մատերիալիզմը: Այստեղ
գիտությունն ու փիլիսոփայությունը գործում են միասին, երկուսի գործողու-
թյուններն էլ ձգտում են մի բանի՝ հասնել օբյեկտիվ ճշմարտության: Այդ
պրոցեսում ձևավորվում են գիտության տեսությունները, հայտնագործվում են
բնագիտության նոր, ընդհանուր և մասնակի օրենքները:

Բնական գիտությունների փիլիսոփայական պրոբլեմները գոյություն
ունեն այնքան ժամանակ, քանի դեռ ճանաչողությունը չի դարձել գիտելիք,
այսինքն՝ փորձով, նոր փաստերով չի հաստատվել: Երբ դրանք փաստերով
ու փորձով հաստատվում են, դադարում են տվյալ գիտության փիլիսոփայա-
կան պրոբլեմներ լինելուց: Փիլիսոփայությունն այլևս դրանցով չի զբաղվում:
Այստեղից էլ բնական գիտությունների փիլիսոփայական պրոբլեմներ կարող
են լինել այն պրոբլեմները, որոնք դեռևս փորձառությամբ և պրակտիկայով
կամ նոր փաստերով չեն ապացուցվել: Այդպիսի պրոբլեմները երկար ժա-
մանակ կարող են մնալ որպես փիլիսոփայական պրոբլեմներ: Ահա այդպիսի
պրոբլեմներից մի քանիսը. 1. ֆիզիկական տեսությունների կառուցվածքը,
2. մատերիայի միասնական տեսության ստեղծման փիլիսոփայական նշանա-
կությունը, 3. ժամանակակից ֆիզիկայի մեջ պահպանման օրենքները և նրանց
կապը տարածության ու ժամանակի համաչափության հատկությունների
հետ, 4. ժամանակակից ֆիզիկայում մասնիկների և դաշտերի միասնության
պրոբլեմը, 5. մաթեմատիկայի մեջ մաթեմատիկական աբստրակցիաների
հիմնական առանձնահատկությունները և նրանց կապը մատերիական աշ-
խարհի հետ, 6. աշխարհի մաթեմատիկական ճանաչման դիալեկտիկական
բնույթը, 7. քիմիայի մեջ՝ անկենդան աշխարհից կենդանականին անցնելու
ընթացքում ֆիզիկա-քիմիական պրոցեսների զարգացումը. 8. քիմիայի դերը
բիոլոգիայում, ժառանգականության պրոբլեմի ուսումնասիրման մեջ. 9. բիո-
լոգիայի մեջ՝ կոսմոսում կյանքի դրսևորման ձևերի բազմազանության և նրանց
միասնության պրոբլեմը. 10 կենդանական աշխարհի էվոլյուցիայի հիմնա-
կան օրինաչափությունները և այլն:

Նշված և բնագիտական փիլիսոփայական բազմաթիվ այլ պրոբլեմներ,
միայն կոնկրետ գիտությունների ջանքերով, առանց դիալեկտիկական մատե-
րիալիզմի տեսության և մեթոդի, չեն կարող լուծվել: Դրանք լուծվում են այդ
երկուսի փոխադարձ կապի շնորհիվ:

Բնագիտության փիլիսոփայական պրոբլեմները, որոնք դառնում են գի-
տելիք, իրենց նշանակությունը դիալեկտիկական մատերիալիզմի համար ամ-
բողջովին չեն կորցնում, այլ հաստատում են նրա սկզբունքները:

Բերենք օրինակներ, որոնք սկզբում եղել են բնագիտության փիլիսոփա-

յության պրոբլեմներ, լուծվելով դադարել են այդպիսին լինելուց և մնում են որպես փիլիսոփայական պրոբլեմ։ Ահա դրանք.

1. Էյնշտեյնի կողմից հատուկ և ընդհանուր հարաբերականության տեսությունների ստեղծումը նոր նշանավոր քայլ է տեսական մտքի զարգացման մեջ։ Ճանաչողության զարգացման ընթացքում փորձնական ճանապարհով հաստատվեց հատուկ տեսությունը։ Այն դարձավ ֆիզիկական փաստ, այսինքն՝ գիտություն և դադարեց ֆիզիկայի փիլիսոփայական պրոբլեմ լինելուց։ Միևնույն ժամանակ հարաբերականության ընդհանուր տեսությունը, որը շոշափում է աշխարհայացքային հիմնական պրոբլեմները դեռևս լրիվ չի հաստատվել ֆիզիկական փաստերով, մնում է որպես ֆիզիկայի փիլիսոփայական պրոբլեմ։

2. Ատոմի բաժանելիության փաստի հայտնագործումը, մասսայի փոփոխական լինելու և մասսայի ու էներգիայի կապի բացահայտումը ժխտեցին կլասիկ ֆիզիկայի սկզբունքների բացարձակությունը։ Դրանով իսկ հիմք դրվեց ֆիզիկայի փիլիսոփայական նոր պրոբլեմների։ Օրինակ՝ մասսայի ու էներգիայի փոխադարձ կապը, տարրական մասնիկների փոխակերպումների ժամանակ մասսայի և էներգիայի պահպանման բնույթը։ Այդ և ուրիշ պրոբլեմներ մինչև օրս մնում են որպես ֆիզիկայի փիլիսոփայական պրոբլեմներ, քանի որ չի ստեղծվել մատերիայի կառուցվածքի ընդհանուր տեսությունը։

Փիլիսոփայական մտքի զարգացման պատմությունը ցույց է տալիս, որ փիլիսոփայությունը և բնագիտությունն իրենց զարգացման ընթացքում միշտ օրգանապես կապված են եղել իրար հետ։ Սակայն այդ կապի բովանդակությունն ու ձևը նրանց զարգացման պրոցեսի ընթացքում փոփոխվել է։ Բնագիտության զարգացման ներկա փուլում արմատապես փոխվել են դիալեկտիկական մատերիալիզմի և բնական գիտությունների կապն ու հարաբերությունը։ Ներկայումս ավելի է ընդլայնվել դրանց խոր կապը, որը կենսական անհրաժեշտություն է ինչպես դիալեկտիկական մատերիալիզմի, այնպես էլ բնագիտության համար։ Այդ կապը բխում է, ինչպես արդեն ասել ենք, նրանց ուսումնասիրության առարկաների միասնությունից, դրանց բովանդակությունից։ Հետևաբար, դրանց կապի հարցն ունի դարավոր պատմություն, որը, սակայն փիլիսոփայական տարբեր դպրոցներում այլ լուծում է ունեցել։ Որոշ փիլիսոփայական դպրոցներ բնագիտությունը դիտել են փիլիսոփայությունից բացարձակապես կախված, նրա մեջ լուծված, ուրիշները՝ ընդհակառակը, բնագիտությունը դարձնում են փիլիսոփայությունից բացարձակ անկախ, բնագիտության և փիլիսոփայության մեջ դնելով անանցանելի անդունդ։ Թե՛ առաջին և թե երկրորդ խմբին պատկանող փիլիսոփայական դպրոցների կապի հարցը կրում էր միակողմանի բնույթ և հիմնականում չլուծվեց։ Փիլիսոփայության և բնագիտության կապի գիտական լուծումը տրվել է միայն մարքսիստական փիլիսոփայության կողմից։ Այդ փիլիսոփայությունը ցույց տվեց, որ բնագիտությունը և դիալեկտիկական մատերիալիզմը կարող են հաջողությամբ զարգանալ միայն այն դեպքում, եթե նրանք հենվում են միմյանց վրա, բեղմնավորում մեկը մյուսին։ Ներկայումս, երբ բնական գիտությունները բուռն զարգանում են, նրանց կապը դիալեկտիկական մատերիալիզմի հետ նոր բովանդակություն է ընդունում։ Այն դարձել է ավելի ակտուալ. դա կապված է հասարակական մի շարք երևույթների և, առաջին հերթին, այն մեծ խնդիր-



ների հետ, որոնք գիտության ու փիլիսոփայության առաջ դրվել են ՍՄԿԿ ծրագրում և նրա համագումարների ու պլենումների որոշումներում։

Անթույլատրելի է դիալեկտիկական մատերիալիզմը փոխարինել բնագիտությամբ կամ բնագիտությունը՝ փիլիսոփայությամբ։ Այդպիսի փոխարինումը առաջին դեպքում կհանգեցնի նատուրալ-փիլիսոփայությանը, իսկ երկրորդ՝ պոզիտիվիզմին։ Պետք է ընդգծել, որ բնական գիտություններն իրենց ուսումնասիրությամբ, դիալեկտիկական մատերիալիզմի հետ միասին, մասնակցում են աշխարհի գիտական պատկերի ստեղծման պրոցեսին։

Բնական գիտությունները մշակում են այդ պատկերի առանձին կողմերը, իսկ դիալեկտիկական մատերիալիզմն իր գլխավոր ուշադրությունը կենտրոնացնում է այդ առանձին կողմերի կապի վրա, բացահայտում դրանց կողմերի մեջ ընդհանուր պրոցեսի ընդհանուր մոմենտները, ընդհանուր կողմերը։ Սխալ կլինի կարծել, թե բնական գիտությունները դիալեկտիկական մատերիալիզմին նյութ են տալիս և դրանով վերջանում է նրանց դերը, իսկ փիլիսոփայությունը, յուրացնելով այն անկախ այդ գիտություններից, բացատրում է բնությունը, ստեղծում նրա պատկերը։ Դա այդպես չէ, իրականում թե՛ բնագիտությունը և թե դիալեկտիկական մատերիալիզմը միատեղ և միաժամանակ են ստեղծում բնության գիտական պատկերը, փոխադարձաբար օգնելով միմյանց։ Նրանք միասին դնում և լուծում են տեսության ու տրամաբանության պրոբլեմները։ Կոնկրետ գիտությունները բացահայտում են իրականության կոնկրետ բնագավառների նկատմամբ կիրառելի օբյեկտիվ օրենքները։ Այդ օրենքները դիալեկտիկական մատերիալիզմի համընդհանուր օրենքների կոնկրետություններն են, դրանց կոնկրետ բացահայտումը, ուստի, դրանց գիտական հիմնավորումն են։ Ժամանակակից բնական գիտությունները սուր են դնում աշխարհայացքային, տրամաբանական, իմացաբանական, մեթոդոլոգիական հարցերը։ Այս իմաստով դիալեկտիկական մատերիալիզմը խոր է թափանցում բնագիտության մեջ։ Եվ որքան բնական գիտությունների տեսությունները ճիշտ և խորությամբ են իրենց մեջ արտացոլում զարգացող և փոփոխվող բնությունը, այնքան դառնում են դիալեկտիկական։ «Արդի ֆիզիկան...— գրում է Լենինը,— գնում է դեպի բնագիտության միակ ճիշտ փիլիսոփայությունը...»։ Դիալեկտիկական մատերիալիզմը նրանց տալիս է ճիշտ կողմնորոշվելու մեթոդ։ Բնությունն ուսումնասիրող գիտնականը, եթե փաստական նյութից ընդհանրացումներ է անում, ապա չի կարող շրջանցել դիալեկտիկական մատերիալիզմը, ընդհանուր մեթոդոլոգիական սկզբունքները։ Հենց այդ սկզբունքներն են կողմնորոշում բնագիտությունը և նրան ուղղություն տալիս։

Անհրաժեշտ է հատկապես ընդգծել՝ որքան ամրապնդվում է բնագիտության ու փիլիսոփայության կապը, այնքան բուրժուական փիլիսոփաների և ֆիզիկոսների զգալի մասն իր ուժերը կենտրոնացնում է դիալեկտիկական մատերիալիզմից բնագիտությունը կտրելու վրա։ Նրանք գործն այնպես են պատկերացնում, թե իբրև բնագիտությունը կարիք չունի փիլիսոփայության։

Բանն այն է, որ արտասահմանյան որոշ բնախույզներ հարցին մերձենում են միակողմանի։ Նրանք մասնակին դիտում են որպես ընդհանուր, ֆիզիկայի մի բնագավառը համարում են համընդհանուր և հանգեցնում փիլիսոփայությանը։ Այնինչ, փիլիսոփայությունը մատերիայի մասին համընդհանուր գիտություն է։ Օրինակ, քվանտային տեսությունը ֆիզիկայի մի բնագավառ է և

ուսումնասիրում է մատերիայի միայն մի կողմը։ Քվանտային տեսությունը չի կարող փիլիսոփայություն լինել նաև այն պատճառով, որ այն չի դնում և չի լուծում փիլիսոփայական հարցեր, ասենք կեցության և մտածողության, օբյեկտի և սուբյեկտի փոխհարաբերության հարցը և այլն։ Բնախույզների նման մոտեցումը սուբյեկտիվ է։

Դիալեկտիկական մատերիալիզմը բնագիտությունից տարբերվում է նրանով, որ նա իր զինանոցում չունի մատերիայի օրենքների ուսումնասիրության համար էքսպերիմենտալ և այլ միջոցներ։ Նա գործ ունի մտածողական նյութի և փաստերի հետ, որոնք նրան տալիս են բնական գիտությունները։ Բայց դիալեկտիկական մատերիալիզմն իր առաջ բնագիտության նյութի հասարակ սիստեմավորման նպատակ չի դնում։ Նա բնագիտության նյութը ինքնուրույն վերլուծում է, նպատակ ունենալով գտնել այն օբյեկտիվ կապերն ու օրենքները, որոնք շոշափում են աշխարհայացքային բնագավառը։ Հենց այստեղ, ինչպես նկատում է Էնգելսը, փիլիսոփայությունը դառնում է անհրաժեշտ և տալիս այնպիսի արդյունքներ, որոնց հասնելը, գիտական հետազոտության հատուկ մեթոդների օգնությամբ, դառնում է անհնար։

Բնական գիտությունները դիալեկտիկական մատերիալիզմի, նրա կատեգորիաների ու օրենքների կոնկրետացման համար խաղում են խիստ կարևոր դեր։ Իսկ դիալեկտիկական մատերիալիզմը բնագիտությանը տալիս է սկզբունքներ, որոնք նրա համար որոշակի պահանջարկ են։ Ակադեմիկոս Համբարձումյանը 1958 թ. հանդես գալով բնագիտության, փիլիսոփայության հարցերին նվիրված համամիութենական խորհրդակցությունում, ընդգծում է դիալեկտիկական մատերիալիզմի մեթոդի դերն աստղագիտության ձեռք բերած հայտնագործությունների և հետազոտությունների մեջ։ Նա ասում է. մենք հպարտանում ենք նրանով, որ հենց Սովետական Միությունն է այդ բնագավառում ձեռք բերել ավելի մեծ հաջողություններ, և դա հասկանալի է, քանի որ սովետական աստղագետների աշխարհայացքը դիալեկտիկական մատերիալիզմն է (տե՛ս Философские проблемы современного естествознания, изд. АН СССР, М., 1959, стр. 280)։ Հարցն այն է, որ ժամանակակից բնագիտությունը, դիալեկտիկական մատերիալիզմի սկզբունքների մեջ տեսնում է այն անհրաժեշտ մեթոդոլոգիական հիմքը, որի վրա կատարվում են կոնկրետ հետազոտությունները, որոնց շրջանակներում բացահայտվում է ընդհանուրը։ Հետևաբար այն է՛լ ավելի է սինթեզային բնույթ ստանում։

Բնական գիտությունները, դառնալով սինթեզող գիտություններ, առավել խորությամբ կթափանցեն իրենց առարկայի մեջ, կբացահայտեն դրա դիալեկտիկական բնույթը, որը հնարավորություն կտա դիալեկտիկական մատերիալիզմի հետ միասին ստեղծելու ողջ աշխարհի իրական պատկերը, մի պատկեր, որն ավելի բարձր հարաբերական ճշտությամբ կհամընկնի օրիգինալի, այսինքն՝ բնության հետ։

Անհրաժեշտ է նկատել, որ դիալեկտիկական մատերիալիզմը տեղում չի մնում, այն նույնպես մշակում է իր մեթոդոլոգիան, հարստացնում իր սկզբունքների բովանդակությունը, որպեսզի կարողանա հաղթահարել բնագիտության նոր նյութը և լուծել նոր պրոբլեմներ։ Այստեղից երևում է, որ դիալեկտիկական մատերիալիզմը առանց բնագիտության հետ սերտ կապի չի կարող հաջողությամբ զարգանալ։ Նա իրեն չի սահմանափակում, չի առանձնացնում բնագիտությունից, այլ հենվում է նրա հաջողությունների վրա։ Դիալեկտիկական մատերիալիզմի կապը բնագիտության հետ բնական է և անհրաժեշտ։ Այդ փոխադարձ կապի և փոխադարձ ներգործության ժամանակ դրանք պահպանում են իրենց ինքնուրույնությունը և երկուսն էլ ունեն ստեղծագործական բնույթ, որն ունի հարաբերական ինքնուրույնություն։ Այդ հարաբերական ինքնուրույնությունը բխում է իրենց ներքին բնույթից, իրենց առարկայի յուրահատկությունից։ Բնական գիտությունների հարաբերական ինքնուրույն զարգացումը շատ ավելի խոր է լինում և ավելի շուտ է հասնում վերջնական նպատակին, եթե այն զինված է ճիշտ աշխարհայացքով, ճիշտ գիտական մեթոդով, որը հենց դիալեկտիկական մատերիալիզմն է։ Եթե փիլիսոփայությունը հաշվի չառնի բնագիտության նվաճումները, կարող է դառնալ դոգմատիկ և ետ մնալ, իսկ բնագիտությունն առանց համընդհանուր փիլիսոփայական աշխարհայացքի ու մեթոդի կմնա էմպիրիկ հետազոտության մակարդակին, չի կարող ընդհանրացնել էքսպերիմենտալ նյութը։

Լենինը կոչ էր անում իր ժամանակի բնագետներին՝ ուսումնասիրել դիալեկտիկական մատերիալիզմը, որի մեջ նրանք կգտնեն «...մի շարք պատասխաններ այն փիլիսոփայական հարցերին, որ բնագիտության մեջ կատարված հեղափոխությունը առաջադրում է... Առանց դրան՝ խոշոր բնագետները նույնքան հաճախ, որքան մինչև այժմ, անճարակ կլինեն իրենց փիլիսոփայական եզրակացությունների և ընդհանրացումների մեջ։ Որովհետև բնագիտությունն այնքան արագ է առաջադիմում, այնքան խոր հեղափոխական բեկման շրջան է ապրում բոլոր ասպարեզներում, որ բնագիտությունն առանց փիլիսոփայական եզրակացությունների ոչ մի դեպքում չի կարող կառավարվել» (Երկեր, հ. 33, էջ 275—276)։

Բացի դրանից, այնտեղ, որտեղ բնագիտության պրոբլեմները չեն դրվում և չեն լուծվում դիալեկտիկական մատերիալիզմի դիրքերից, հող է ստեղծվում բուրժուական գաղափարախոսության համար։

«...առանց լուրջ փիլիսոփայական հիմնավորման,— ասում է Լենինը,— ոչ մի բնական գիտություն, ոչ մի մատերիալիզմ... բուրժուական աշխարհայեցողության վերականգնման դեմ մղվող պայքարում դիմանալ չի կարող։ Այդ պայքարին դիմանալու և այն լիակատար հաջողությամբ մինչև վերջը հասցնելու համար բնագետը պետք է լինի ժամանակակից մատերիալիստ, գիտակից կողմնակից այն մատերիալիզմի, որը ներկայացրել է Մարքսը, այսինքն՝ պետք է դիալեկտիկ մատերիալիստ լինի» (Երկեր, հ. 33, էջ 274)։

Աշխարհի դիալեկտիկական միասնության ըմբռնումն օգնում է գիտնականներին՝ մասնակի խնդիրների լուծման ժամանակ խուսափել միակողմանիությունից, ավելի ճիշտ արտացոլել զարգացման և պահպանման օրենքները։ Այդ միասնության ամբողջական ըմբռնումն ավելի է անհրաժեշտ դարձել գիտությունների ներկա դիֆերենցիայի և գիտնականների՝ գիտության կոնկրետ բնագավառներում խորանալու շնորհիվ, դրա անտեսման հետևանքով գիտնականները կարող են կորցնել կողմնորոշումը և իրենց նեղ մասնագիտական նյութից անել աշխարհայացքային սխալ հետևություններ։

Եթե գիտնականն ընկալել է ողջ պրոցեսը, միասնական պրոցեսի մեջ կարողանում է տեսնել իր կողմից ուսումնասիրվող առարկայի տեղը և կապերը մյուս գիտությունների առարկաների հետ, գնահատել նրա դերը մատերիայի կառուցվածքում և հավիտենական պրոցեսում, հասկանալ, որ կոնկրետն ամբողջությամբ և բազմակողմանիորեն դրսևորում է իր էությունը միայն

ամբողջի մեջ, կարող է մեծ հաջողությունների հասնել և ճիշտ աշխարհայացքային հետևություններ անել։ Այս, իհարկե, չի նշանակում, որ միայն ամբողջականն ըմբռնելով կարելի է հաջողությունների հասնել, առանց փաստական նյութի խոր իմացության։ Այստեղ պետք է միացվեն փաստական նյութի խոր իմացությունը և դիալեկտիկական մատերիալիզմի ու գիտնականի հմտությունը։ Բնագիտության զարգացումն է հենց գիտնականներին ստիպում, անկախ նրանց ցանկություններից ու ձգտումներից, բնությունը դիտել որպես պրոցես, դիտել դիալեկտիկորեն։ Ուստի, նրանց մեծ մասը տարերայնորեն կանգնում է դիալեկտիկայի դիրքերում, իսկ մյուսը՝ գիտակցորեն ընդունում է դիալեկտիկական մատերիալիզմը՝ որպես իր հետազոտության հիմք։ Դիալեկտիկորեն տարերային մտածող գիտնականները ևս անհրաժեշտորեն ձգտում են ունենալ համընդհանուր մեթոդ, յուրատեսակ կողմնացույց. այս դրսևորվում է որպես տենդենց։ Սա է պատճառը, որ կապիտալիստական երկրների շատ բնախույզներ հասկանում են դիալեկտիկական մատերիալիզմի կարևոր դերը ժամանակակից գիտության զարգացման համար, աստիճանաբար հրաժարվում են մետաֆիզիկական մեթոդից։

Ստեղծագործական մտքի օրենքների իմացությունը համարվում է փիլիսոփայական կարևոր հարցերից մեկը։ Բնախույզն այդ օրենքները չի ստեղծում, իսկ չիմանալով դրանք չի կարող ընդհանրացումներ անել բնագիտության մեջ։ Առարկաների էությունն արտահայտվում է հասկացություններում, դատողություններում, մտահանգումների մեջ, դրանցով առաջնորդվելու կարողանալուց է մեծ չափով կախված հետազոտման արդյունքը (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 20, стр. 266):

Դիալեկտիկական մատերիալիզմի օրենքները հնարավորություն են տալիս բնախույզներին մասնակի պրոցեսները հետազոտելիս, որոշակի դիրքերից ելնելով, բացահայտել առարկայի շարժման տենդենցը, նշանավորել հիմնական ուղղությունը, որով պետք է ընթանա առարկայի ուսումնասիրությունը։ Դիալեկտիկական մատերիալիզմի իմացությունն օգնում է բնախույզին՝ նշելու առարկայի բնույթին համապատասխան նրա ուսումնասիրության ընդհանուր ուղին։ Բնախույզն իր հետազոտության ողջ բովանդակությամբ ստիպված է լուծելու որոշակի փիլիսոփայական հարցեր, անկախ նրանից, այդ ցանկանում է նա, թե ոչ։ Եթե գիտնականը փիլիսոփայության մեջ վարժված չէ, ապա նա փիլիսոփայության կատեգորիաներն օգտագործում է ըստ իր հայեցողության, որը նրան տանում է դեպի իդեալիզմ։



## Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

### ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՄՈՒՆԵՏԻԿԸ

Ահա վաթսուն տարի է, ինչ մեր կուսակցության դրոշակակիր լենինյան «Պրավդան» լույս է տալիս, ջերմացնում երկրագնդի աշխատավորների սրտերը։ Իր գոյության վեց տասնամյակներին «Պրավդան» եղել է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության կրքոտ ջատագովը։ Ահա թե ինչու մեծ Հոկտեմբերի հաղթանակից առաջ, տակավին 1912 թվականի հուլիսին, Վ. Ի. Լենինը գրել է, որ, բանվորական օրաթերթ հիմնելով, Պետերբուրգի բանվորները խոշոր, առանց չափազանցության կարելի է ասել, պատմական գործ կատարեցին։ Բանվորական դեմոկրատիան համախմբվեց և իրեն ամրապնդեց աներևակայելի ծանր պայմաններում... «Պրավդայի» ստեղծումը ռուս բանվորների գիտակցականության, էներգիայի և համախմբվածության ակնառու **ապացույցն է։**

Պրոլետարիատի ազատագրական պայքարում, ցարական բռնակալության դեմ ժողովուրդների համախմբման գործում «Պրավդայի» հիմնադրման կարևոր նշանակության առհավատչյան էր այն ջերմ ընդունելությունը, որ ցույց տվեցին ընթերցող լայն խավերը։ Հենց այդ երևույթը հիմք եղավ Վ. Ի. Լենինի համար՝ թերթի ծննդյան օրից երեք ամիս անց, **Բանվորները և «Պրավդան»** վերնագրով հոդվածում նկատել, թե շատ ավելի պատկառելի է բանվորական այն խմբերի թիվը, որոնք իրենց ուղղակի կապել են «Պրավդայի» հետ։ Այդ թերթը նա անվանեց այն գարնան առաջին ծիծեռնակը, երբ ամբողջ Ռուսաստանը կծածկվի բանվորական կազմակերպությունների և բանվորական թերթերի ցանցով։

Կյանքը ցույց տվեց, թե ինչպես իրականացան Լենինի կանխատեսումները։ Եթե իր ծննդյան օրը՝ 1912 թվականի ապրիլի 22-ին (մայիսի 5-ին), «Պրավդան» լույս էր ընծայվում 40 հազար տպաքանակով, ապա այժմ՝ ինը միլիոն։ Երևանը Սովետական Միության քառասուն քաղաքներից մեկն է, ուր ամեն օր ինքնաթիռով ստացվում է «Պրավդա» թերթի տառամայրը (մատրիցան), տպագրվում, բազմացվում տեղում, ապա իսկույն բաժանվում ընթերցողներին։

Դժվարին է եղել «Պրավդայի» ուղին։ Եթե «Պրավդա» բառը նշանակում է ճշմարտություն, ապա նրա անցած ուղին կարելի է բնութագրել նույնպես մի բառով՝ պայքար։ Ամեն գույնի թշնամիների դեմ մղված պայքարում է ծնվել բոլշևիկյան «Պրավդան» և իր բոցեղեն էջերով տարածել մարքս-լենինյան գաղափարները, նախապատրաստել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որը նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։

«Պրավդայում» հրապարակված բազում հոդվածներում, թերթի խմբագրությանն ուղղված նամակներում Լենինը գիտականորեն հիմնավորում էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության և համագործակցության վեհ գաղափարները, իսկ «Պրավդան», պրոպագանդելով լենինյան այդ դրույթները, ռուսական ու համաշխարհային բանվորական շարժման օրինակով հրապարակախոսության ներգործուն, հատու զենքով նըպաստում էր այդ բարեկամության ամրապնդմանը։

Լենինն առաջ էր քաշում «Путь правды» թերթի եռապատիկ, քառապատիկ, հնգապատիկ ավելի շատ տարածման, թերթի մարզային՝ Մոսկվայի, Ուրալի, Կովկասի, Մերձբալ-

թիկայի, Ուկրաինայի հավելվածներ ստեղծելու հարցը: Հակառակ բոլոր ազգերի ամեն տեսակ բուրժուական ու մանրբուրժուական նացիոնալիստների, նա խնդիր էր դնում առավել ամրապնդել Ռուսաստանի բոլոր ազգությունների բանվորների միասնությունը և դրա համար, ի միջի այլոց, ակիզբ դնել թերթերի այնպիսի հավելվածների, որոնք նվիրված լինեն Ռուսաստանի տարբեր ազգությունների բանվորների շարժմանը: Այս առնչությամբ Լենինը գտնում էր, որ պետք է ստեղծել «Вечерняя правда» մի կոպեկի արժեքով թերթը, որը թափանցեր պրոլետարական, կիսապրոլետարական մասսաների խորքը՝ ցույց տալով նրան համաշխարհային բանվորական շարժման լույսը, հավատ ներշնչելով իր ուժերի հանդեպ, մղելով նրան դեպի համախմբում, օգնելով բարձրանալ մինչև լիակատար գիտակցականություն: Այստեղ հստակորեն շարադրված է Ռուսաստանի տարբեր մարզերի ու ազգությունների բանվորների ուժերի համախմբման, համերաշխության, պրոլետարական ու կիսապրոլետարական մասսային օգնելու, համաշխարհային բանվորական շարժման ուղղություն տալու, նրանց լիակատար գիտակցականությունը բարձրացնելու գործում «Путь правды» և բանվորական մյուս թերթերի խնդիրները:

Կոմունիստական գաղափարախոսությունը, կուսակցական սկզբունքայնությունը, քաղաքական նպատակայնությունը սովետական մամուլի հիմքերի հիմքն են, ուժի աղբյուրները: Լենինը սովորեցնում է, որ մամուլի կուսակցականությունը սոցիալիստական գաղափարի մեջ է, աշխատավոր մասսաներին հանուն հեղափոխական վերափոխումների համախմբելու գործում կոմունիստական կուսակցությանը ծառայելու մեջ: Ահա թե ինչու մեծ առաջնորդը մամուլը միշտ համարել է կուսակցական աշխատանքի անբաժանելի մասը, կարևորագույն խնդիրը: Տակավին 1914 թվականին «Մեր խնդիրները» վերնագրով հոդվածում նա գրում էր. «Է՛լ ավելի զարգացնելով «պրավդիստական» աշխատանքը, մենք ձեռք-ձեռքի տված զուտ լրագրական գործը առաջ կտանենք բանվորական գործի **բոլոր** կողմերի հետ» (Երկեր, հ. 36, էջ 306):

Հսկայական գործ է կատարել «Պրավդան» ազգային հարցի լենինյան ուսմունքը մասսայականացնելու և կենսագործելու համար: «Պրավդայում» հրապարակված Լենինի մի շարք հոդվածները՝ «Բանվոր դասակարգը և ազգային հարցը», ««Կուլտուր-ազգային» ավտոնոմիայի մասին», «Ազգային իրավահավասարություն», «Բանվորների այլասերումը նրբին նացիոնալիզմով», «Ազգային ծրագրի պատմության շուրջը Ավստրիայում և Ռուսաստանում», ընթերցող մասսաների մեջ հետևողականորեն սերմանում էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները: Ցարիզմի շովինիստական քաղաքականությանը և տեղական բուրժուական նացիոնալիզմին բոլշևիկյան «Պրավդան» հակադրում էր պրոլետարական ինտերնացիոնալիզմը— բոլոր ազգերի ազատության ու իրավահավասարության պաշտպանությունը, բոլոր բանվորների քաղաքական պայքարում նրանց համագործակցությունը, համախմբվածությունը:

Մինչհոկտեմբերյան «Պրավդան» վճռականորեն հանդես էր գալիս ուկրաինացիների բռնի ռուսիֆիկացման, Թուրքեստանում դատական ատյանների կամայականությունների դեմ, գրում Դաղստանի բնակչության ողբերգական վիճակի մասին: «Պրավդայում» տպագրված հոդվածներում Վ. Ի. Լենինը հիմնավորում և զարգացնում էր կուսակցության ծրագիրը ազգերի ինքնորոշման իրավունքի, իրավահավասարության, դեմոկրատական հիմունքներով բազմազգ պետություն ստեղծելու, բանվոր դասակարգի կազմակերպությունների ինտերնացիոնալ բնույթի մասին: Հենվելով ազգային հարցի լենինյան ուսմունքի վրա՝ «Պրավդան» հաճախ է օգնել Անդրկովկասի բոլշևիկներին և խրախուսել նրանց ինտերնացիոնալ միասնության օրինակը: Այսպես, «Բանվորական համերաշխություն» վերնագրով խմբագրականում, որը տպագրվել է 1913 թվականի № 12-ում, թերթը գրում է. «Կովկասում 15 տարի շարունակ բոլոր ազգությունների բանվորները՝ և՛ վրացիները, և՛ հայերը, և՛ թաթարները, և՛ ռուսները կիրառում են կազմակերպության այդ ձևը: Եվ միայն դա է նպաստում բոլոր ազգությունների բանվորների համախմբման և ամեն մի նացիոնալիզմի հակահարված տալու նպատակին: Կազմակերպության որևէ այլ ձև կլինի զիջում բուրժուական ազդեցությանը»: Վ. Ի. Լենինը բարձր է գնահատել Կովկասի բոլշևիկների ինտերնացիոնալ միասնությունը և նշել, որ «...Կովկասում և.-դ. վրացիները+հայերը+թաթարները+ռուսները աշխատում էին **միասին տասը տարուց ավելի** միասնական և.-դ. կազմակերպության մեջ: Այդ ֆրազ չէ, այլ ազգային հարցի պրոլետարական լուծում: Միակ լուծումը» (Երկեր, հ. 35, էջ 79):

Կենսագործելով լենինյան ուսմունքը՝ «Պրավդան» դարձավ ժողովրդական մասսաների կոլեկտիվ ագիտատոր, պրոպագանդիստ և կազմակերպիչ: Թերթը պրոպագանդում էր բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի լենինյան գաղափարները և իր էջերում բացատրում, որ գյուղացուն փրկություն չկա այլ կերպ, քան միանալ պրոլետարիատի գործունեությանը:

Եթե մինչհոկտեմբերյան «Պրավդայում» Լենինը դրեց Ռուսաստանի և հարևան պետությունների բանվոր դասակարգի բարեկամության հիմքերը, բարեկամություն, որ կոչված էր համախմբելու պրոլետարիատի ուժերը՝ կապիտալիստների ու կալվածատերերի տիրապետության կործանման համար, ապա սովետական իշխանության հաղթանակից հետո Լենինը և «Պրավդան» նոր կարգերի ամրապնդման, օտարերկրյա ինտերվենտներից և հակահեղափոխական տարրերից պաշտպանելու և ամրապնդելու կոչ էին անում մյուս երկրների բանվորներին, աշխատավոր ժողովրդին ու ոտքի հանում նրանց՝ «Ձեռքներդ հեռու Սովետական Ռուսաստանից» լոզունգով: Առանց միջազգային պրոլետարիատի հետ բարեկամական համերաշխության և ներքին ու արտաքին հակահեղափոխության դեմ միասնական պայքարի անհնար էր պաշտպանել մեծ Հոկտեմբերի պատմական նվաճումները:

Վերին աստիճանի խորհրդանշական է, որ «Պրավդայի» վաթսունամյակը մեծ հանդիսավորությամբ տոնվում է Սովետական Միության կազմավորման հիսնամյակի նախօրյակին: Այնքա՜ն շատ բան է արել «Պրավդան» դրա համար: Կենսագործելով լենինյան ազգային քաղաքականությունը՝ «Պրավդան» լայնորեն լուսաբանեց Ռուսաստանի Սովետական Սոցիալիստական Ֆեդերատիվ Հանրապետության, Անդրկովկասյան Ֆեդերացիայի ստեղծման, ապա՝ Սովետական Միության կազմավորման նախապատրաստական ողջ պրոցեսը: 1922 թ. դեկտեմբերի 30-ին թերթը հրապարակել է ՍՍՀՄ Սովետների առաջին համագումարի նյութերը, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միություն կազմելու մասին դեկլարացիան, այդ առթիվ կնքված համապատասխան պայմանագիրը և այլն:

«Պրավդայի» էջերում բազմակողմանի ու խորությամբ արտացոլվել են սովետական հասարակության ղեկավար ուժի՝ կոմունիստական կուսակցության ջանքերով սոցիալիստական ազգերի ծաղկումն ու մերձեցումը: Սոցիալիստական շինարարության կոնկրետ փաստերի ընդհանրացման հիման վրա թերթը քայլ առ քայլ լուսաբանել է ՍՍՀՄ ժողովուրդների փաստական անհավասարությունը վերացնելու նպատակով կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության վիթխարի ծրագրի կենսագործման ընթացքը: Նա ցույց է տվել, թե ինչպես սոցիալիստական ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման և կուլտուրական հեղափոխության հաղթանակի շնորհիվ արմատապես փոխվեց միութենական հանրապետությունների և ժողովուրդների դեմքը, անսահման լայն հնարավորություններ ընդեղծվեցին առաջներում հետամնաց ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական զարգացման համար և ինչպես սովետական հնգամյա պլանների կենսագործման շնորհիվ վերացավ առանձին ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը, նրանք հավասարվեցին առաջավոր ժողովուրդներին, ՍՍՀՄ մեծ ընտանիքում ստեղծեցին հզոր էկոնոմիկա, բարձրացան կուլտուրապես:

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմը և սովետական հայրենասիրությունը նոր հասարակարգ կառուցող մարդկանց անբաժանելի, ներդաշնակ հատկություններն են, կոմունիստական գիտակցության էական ու բնորոշ հատկանիշները, որոնք օրավուր զարգանում են ժողովուրդների եղբայրական համագործակցության պայմաններում: Այդ համագործակցությունը համակողմանի արտացոլվում է «Պրավդայի» էջերում: Հիշենք եղբայրական հանրապետությունների տնտեսական համագործակցության զարգացման, արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողների սոցիալիստական մրցության լուսաբանումը: Մեր երկրում հիանալի ավանդույթ դարձած արվեստի և գրականության տասնօրյակները, որոնք տեղի են ունեցել Մոսկվայում, Կիևում, Թբիլիսիում, Բաքվում, Երևանում և միութենական մյուս հանրապետությունների մայրաքաղաքներում, «Պրավդան» լուսաբանել է փորձի փոխանակության, հոգևոր մշակույթի փոխադարձ հարստացման նշանաբանով:

Ինչպես միշտ, Հայրենական պատերազմի տարիներին նույնպես, մեր հայրենիքի ուժի ու հզորության կարևորագույն աղբյուրը հանդիսացել են ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրական համագործակցությունը: Այդ բարեկամությունն ու համագործակցությունն է՛լ ավելի ամրապնդվեցին պատերազմի ընթացքում և լավ քննություն բռնեցին: «Պրավդան» համարից համար նյութեր էր տպագրում, թե ինչպես Սովետական Միության եղբայրական ժողովուրդների խիզախ զավակները, ուս-ուսի տված, մարտնչում են ռազմաճակատներում և մաքառում թիկունքում: Հայրենական պատերազմի ահեղ օրերին «Պրավդան» ժողովրդին ոգեշնչում էր դեպի հաղթանակ: Նրա էջերում հնչում էին սոցիալիստական հայրենիքի պաշտպանության կոչերը. «Ամեն ինչ ռազմաճակատի, ամեն ինչ հաղթանակի համար», «Ռազմաճակատը պահանջում է, ուրեմն պետք է անել», «Ամեն ինչ արե՛լ

ես ռազմաճակատի համար»: «Պրավդան» տըպվեց Հայրենական պատերազմում սովետական բազմազգ ժողովրդի սխրագործությունների տարեգրությունը:

Հայրենական մեծ պատերազմից հետո, 1946 թ. հունվարի մեկի առաջնորդողում «Պրավդան» գրում էր. «Եթե պատերազմական տարիներին Հայրենիքի պաշտպանությունը ծնեց աշխատանքային անօրինակ սխրանքներ, հազարավոր ու հազարավոր հերոսներ, ապա այժմ, խաղաղ շինարարության պայմաններում, այդ կենարար աղբյուրը ծնում է խաղաղ, քստեղծագործական աշխատանքի նոր հերոսներ: Թո՛ղ աճի ու բազմանա ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում առաջավորների պանծալի սերունդը, թող նրա անձնազոհ աշխատանքը և հայրենասիրական նախաձեռնությունն առաջ մղի մեր հայրենիքը, ամրապնդի նրա հզորությունը, բազմապատկի նրա փառքը»:

«Պրավդան» սիստեմատիկաբար տպագրում էր երկրի բոլոր կողմերից ստացվող հաղորդումները սոցիալիստական պարտավորությունների մասին և արտացոլում հանուն ժողովրդական տնտեսության վերականգնման սոցիալիստական մրցության ընթացքը, վահանի վրա բարձրացնում արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավորների փորձը, նրանց օրինակով ոտքի հանում բոլորին:

Երկրագնդի աշխատավոր ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության թեման նոր երանգ ստացավ «Պրավդայի» էջերում համաշխարհային երկրորդ պատերազմից հետո: Չէ՞ որ հիտլերյան Գերմանիայի և նրա գործակիցների պարտության հետևանքով կապիտալիստական համակարգից դուրս եկան Եվրոպայի ու Ասիայի շատ երկրներ և ստեղծվեց համաշխարհային սոցիալիստական լագերը: Հետպատերազմյան տարիները նշանավորվեցին ճընշված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի ծավալմամբ և իմպերիալիզմի գաղութային համակարգի տրոհմամբ: Գաղութային լծից դուրս եկան Հնդկաստանը և Աֆրիկայի մի շարք ժողովուրդներ: «Պրավդան» պարբերաբար լուսաբանում է ազգային-ազատագրական շարժման հաջողությունները, ցույց տալիս, թե ինչպես ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրները ջերմորեն են պաշտպանում այդ ժողովուրդներին: Թերթն ընթերցողների լայն խավերին լուսաբանում է մեր կուսակցության ու կառավարության վարած խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը և ապացուցում, որ ՍՍՀՄ խաղաղության հուսալի հենարանն է:

Սովետական բազմազգ ժողովուրդների բարեկամության, համագործակցության արդյունքները «Պրավդան» առանձին հանդիսավորությամբ լուսաբանեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 40 և 50-ամյակների նախօրյակներին: «Պրավդան» հատուկ համար նվիրեց յուրաքանչյուր միութենական հանրապետության: Թերթի այդ համարների նյութերը վառ գույներով պատմում են սովետական եղբայրական ժողովուրդների հաջողությունները էկոնոմիկայի և մշակույթի բոլոր բնագավառներում:

Հետագայում «Պրավդան» ժողովուրդների լենինյան բարեկամության նշանաբանով լուսաբանեց միութենական հանրապետությունների 50-ամյակները: Այդ իրոք պատմական տոներին թերթը փաստորեն հանրագումարի էր բերում սովետական վառ արևի ներքո աճած ու զարգացած եղբայրական ազգությունների նըվաճումները սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար մղվող մեծ պայքարում: «Պրավդայի» գնահատականը յուրաքանչյուր հանրապետության աշխատավորություն դիտում է որպես ամբողջ երկրին կոմունիստական կուսակցության կողմից տրված գնահատական և ոգեշնչվում, թևավորվում, ավելի բորբոքում սոցիալիստական մրցության կրակը՝ ի փառս Սովետական մեծ Միության:

Ժողովուրդների բարեկամության թեման «Պրավդայի» էջերում բացառիկ խորությամբ լուսաբանվեց մեր կուսակցության ու պետության հիմնադիր Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստության օրերին: Լենինյան թեման «Պրավդայի» և, առհասարակ, սովետական մամուլի մշտական, առաջատար բաժիններից է: Ամբողջ մամուլը տոգորված է լենինյան գաղափարներով: Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի, սովետական կարգերի ամրապնդման ու զարգացման, սոցիալիստական շինարարության հրատապ խնդիրների լուծման, կոմունիստական հասարակարգի կառուցման ծրագրի կենսագործման համար մղվող պայքարում Լենինը մեր մեծագործ կուսակցությանը սովորեցնում էր՝ հենվել ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության վրա:

Լենինյան «Պրավդայի» էջերում մշակված ժողովուրդների բարեկամության ավանդույթներով է զարգանում միութենական հանրապետությունների բազմալեզու մամուլը: Ո՛չ միայն «Պրավդայի» աշխատակիցները, այլև բովանդակ սովետական մամուլի գործիչներն ամենայն իրավամբ իրենց համարում են «պրավդիստներ»: «Պրավդայի» բարերար ազդեցության շնորհիվ միութենական հանրապետությունների բոլոր թերթերը, ամսագրերը, հանդեսները, ռադիոն, հեռուստատեսությունը բազմազան ձևերով պրոպագանդում են մեր հասարակության ուժի, հզորության աղբյուր հանդիսացող ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության լենինյան գաղափարները, տեղական կյանքից վերցրած կոնկրետ օրինակներով ցույց տալիս կոմունիզմ կառուցող մարդկանց հարուստ ներքնաշխարհը, նրանց լավ գործերն ու խոհերը:

Վերցնենք թեկուզ Սովետական Հայաստանի օրինակը: Մեր հանրապետությունում այժմ լույս են տեսնում 103 անուն թերթ, ամսագիր, հանդես և այլ պարբերականներ, որոնց ընդհանուր տպաքանակը հասել է ավելի քան երկու միլիոն 700 հազարի: Այդ նշանակում է, որ մեր հանրապետության յուրաքանչյուր հազար բնակչին ընկնում է 1100 թերթ, ամսագիր, հանդես: Հայաստանը լիովին ռադիոֆիկացված է, իսկ բնակչության 80 տոկոսն արդեն հնարավորություն ունի դիտելու Մոսկվայից ու Երևանից տրվող հեռուստատեսային հաղորդումները: Հայաստանում հրատարակվող հայերեն, ռուսերեն, ադրբեջաներեն, քրդերեն թերթերն առաքվում են աշխարհի 60 երկրներ, իսկ ռադիոհաղորդումները, բացի վերոհիշյալ լեզուներից, տրվում են նաև արտասահմանյան լեզուներով: Մեր հանրապետությունում տարեկան հրատարակվում է մոտ 1000 գիրք: Բայց մամուլի համատարած պատկերը լիակատար կլինի, եթե ավելացնենք, որ օրական տասնյակ հազարներով «Պրավդա» և «Իզվեստիա», միութենական այլ թերթեր, ամսագրեր, հանդեսներ են ստացվում Հայաստանում...

ՍՄԿԿ Կենտկոմի օրգան, Լենինի կրկնակի շքանշանակիր «Պրավդան» իր վաթսունամյա գոյության ընթացքում արգասալի ու հսկայական աշխատանք է կատարել ՍՄԿԿ հեղինակավոր խոսքն ու գործը, նոր կյանքի կառուցման վերաբերյալ նրա քաղաքական, ստեղծագործական խոշորագույն և ծրագրային փաստաթղթերը բարձր մակարդակով պրոպագանդելու և դրվատելու նպատակով: Հոբելյար «Պրավդայի» բազմապիսի և արժեքավոր հոդվածները, նմանապես և այլ բնույթի նյութերը տոգորում են սովետական մարդկանց կուսակցության XXIV համագումարի հարուստ նյութերի լենինյան ոգով, մոբիլիզացնում նրանց՝ արժանավայել դիմավորելու ՍՍՀՄ կազմավորման պատմական հիսնամյակը:

Կենսագործելով մեծ Լենինի պատգամները, «Պրավդայի» օրինակով է ժողովուրդների բարեկամությունը պրոպագանդում ամբողջ սովետական բազմալեզու մամուլը: Այդ պրոպագանդան տարվում է բազմազան ձևերով, արտահայտչական միջոցներով: Պրոպագանդելով սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության լենինյան գաղափարները՝ մեր երկրի թերթերը, ամսագրերը, հանդեսները, ռադիոն ու հեռուստատեսությունը կյանքից վերցրած օրինակներով, կոնկրետ փաստերով ցույց են տալիս ժողովուրդների անխախտ բարեկամության ու սերտ համագործակցության կենարար ուժն ու հիմքը: Այդ տեսակետից կարելի է վկայակոչել Հայաստանի մամուլը, որը խոր ու բազմակողմանի է արտացոլում մեր եղբայրական միութենական հանրապետությունների, մարզերի, շրջանների, արտադրական ձեռնարկությունների ու կոլտնտեսությունների միջև ավանդույթ դարձած սոցիալիստական մրցությունը:

Արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի զարգացմանը, բուռն վերելքին մեծապես խթանել են Ռուսաստանյան Ֆեդերացիայի, Ուկրաինայի, Մոլդավիայի, Բելոռուսիայի, Վրաստանի, Ադրբեջանի, Հայաստանի և մյուս հանրապետությունների աշխատավորների սոցիալիստական մրցությունը, փոխադարձ օգնությունն ու բարեկամությունը: Վաղուց է, որ բարեկամական մրցության մեջ են Անդրկովկասի եղբայրական երեք հանրապետությունների մայրաքաղաքները՝ Բաքուն, Թբիլիսին և Երևանը, ինչպես նաև Կիրովաբադը, Քութաիսին ու Լենինականը, Սումգայիթը, Ռուսթավին ու Կիրովականը, մյուս հանրապետությունների ու Հայաստանի շատ կոլեկտիվներ:

«Պրավդայի» պանծալի վաթսունամյակը նշվում է այն օրերին, երբ բազմազգ սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ստեղծագործական բուռն պայքարի է ելել ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների կենսագործման համար: Այս օրերը բացառիկ նշանակություն ունեն նաև նրանով, որ մեր ժողովուրդը նախապատրաստվում է՝ մեծ շուքով տոնելու Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման հիսնամյակը:

Տոնակատարության նախապատրաստության այս օրերին «Պրավդան» և նրա օրինակով ամբողջ սովետական մամուլը հանրագումարի են բերում մեր երկրի ժողովուրդների պայքարի ու հաղթանակների արդյունքները, հրապարակախոսական հոդվածներով ցույց տալիս, թե ինչպես ՍՍՀՄ կազմավորումն ամրապնդեց մեր ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, ապահովեց քաղաքական, տնտեսական, մշակութային զարգացումը, ուժեղացրեց մեր երկրի պաշտպանունակությունը: ՍՍՀՄ-ն

իր մեջ մարմնավորում է ազատ ժողովուրդների միջև այդ պատմության մեջ գոյություն չունեցած միասնության և բարեկամության հարաբերությունները: Դա սոցիալիզմի մեծագույն նվաճումներից է, սովետական հասարակության շարժիչ ուժը, սովետական բոլոր ազգերի ստեղծագործական աշխատանքի հորդառատ աղբյուրը:

Իր էջերում «Պրավդան» լայնորեն պրոպագանդում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագրի հիմնական դրույթները և միլիոնավոր ընթերցողներին կրկին ու կրկին հիշեցնում, որ **կուսակցությունը ՍՍՀՄ-ում կոմունիստական շինարարությունը դիտում է որպես սովետական ժողովրդի ինտերնացիոնալ մեծ խնդիր,** որը համապատասխանում է ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի շահերին, միջազգային պրոլետարիատի, բովանդակ մարդկության շահերին: Կոմունիզմը կատարում է բոլոր մարդկանց սոցիալական անվստահությունից, ճնշման ու շահագործման բոլոր ձևերից, պատերազմի սարսափներից փրկելու պատմական առաքելությունը և աշխարհում հաստատում է **Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն և Երջանկություն** բոլոր ժողովուրդներին:

Ժողովուրդների լենինյան բարեկամության մունետիկ «Պրավդան» թևակոխեց պատկառելի տարիք՝ իր գոյության յոթերորդ տասնամյակը: Տարիները նոր ուժ ու կորով են տվել Լենինի ստեղծած թերթին: Ահա թե ինչու, ինչպես միշտ, այսօր էլ յուրաքանչյուր ընթերցող անհամբերությամբ, սրտի թրթիռով սպասում է լույս և հավատ ներշնչող այդ հիանալի թերթի յուրաքանչյուր համարին:

**Վ. Մ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների թեկնածու**

# ՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԻ ՀԱՐՑԵՐԸ «ՊՐԱՎԴԱՅԻ» ԷՋԵՐՈՒՄ

Անփոխարինելի է «Պրավդայի» դերը կոմունիստական կուսակցության մեծ կանխագծումները կենսագործելու համար մղվող պայքարում: Եթե մինչհոկտեմբերյան «Պրավդան» ցարիզմի և բուրժուազիայի դեմ վճռական գրոհի էր նախապատրաստում Ռուսաստանի պրոլետարիատին ու չքավոր գյուղացիությանը, ապա հեղափոխության հաղթանակից հետո նրա ողջ գործունեությունն ի սպաս դրվեց նոր կյանքի կառուցմանը, սոցիալիզմի նվաճումների պաշտպանությանը, կոմունիստական շինարարության ծրագրի իրականացմանը:

«Պրավդայի» բազմակողմանի գործունեության ուրույն դրսևորումներից են գրականության և արվեստի վերաբերյալ նրա ելույթները ինչպես նախահոկտեմբերյան շրջանում, այնպես էլ սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում:

«Պրավդայի» էջերում իրենց արձագանքը, արտացոլումն ու գնահատությունն են ստացել սովետական բոլոր ժողովուրդների և ազգությունների գրականության ու արվեստի էական հարցերը, նրանց մշակութային կյանքում տեղի ունեցող կարևոր իրադարձությունները: Եվ «Պրավդայի» գործունեության այս կողմը արժանի է հատուկ ուշադրության, հանգամանալից ուսումնասիրման:

Ստորև համառոտակի կանդրադառնանք բազմադարյան հայ մշակույթին, սովետահայ գրականության և արվեստի զարգացմանը վերաբերող այն նյութերին, որոնք տեղ են գտել «Պրավդայի» էջերում 1920-ական թվականներից մինչև Հայրենական մեծ պատերազմի ընկիզբը՝ հետագա տարիների նյութը թողնելով մի այլ առիթի:

* * *

Հայ մշակույթին նվիրված «Պրավդայի» ելույթները բազմազան են թե՛ ժանրային առումով և թե նյութի ընդգրկման շառավիղներով՝ ինֆորմացիայից մինչև առաջնորդող: 20-ական թվականների համար բնորոշ են «Պրավդայում» տպագրված նյութերը հայկական առաջին կինոնկարների մասին: Թերթի հատուկ ուշադրությանն են արժանացել «Նամուսը», «Զարեն», «Խաս-փուշը»: Բարձր գնահատվեց ականավոր ռեժիսյոր Համո Բեկ-Նազարյանի «նպատակասլաց, մեծ ու բարեխիղճ աշխատանքը», նրա նուրբ ճաշակն ու տաղանդը, արվեստը կյանքին ծառայեցնելու օրինակելի վարպետությունը: «Նամուս» կինոնկարի առիթով «Պրավդայի» հոդվածագիրը ռեժիսորի հաջողությունը համարում էր այն, որ նա, հրաժարվելով կեղծ «օբյեկտիվությունից», դրսևորել է «տենդենցիոզություն» բառիս լավագույն իմաստով, այսինքն՝ «բացահայտել է իր պատմած դրամայի հասարակական նշանակությունը». իրո՛ք, արդիական այդպիսի մեկնաբանությունը նա կարողացել է պահպանել ինչպես ամբողջ կինոնկարում, այնպես էլ մանրամասնությունների մեջ: Ընդհանրացնելով Հայկինոյի այս հաջողությունը՝ թերթը եզրակացնում է. «Սովետական նոր ազգային կինոկազմակերպությունը, ավագ եղբոր (Վրաստանի պետկինոյի) աջակցությամբ իր առաջին աշխատանքը կատարել է գերազանց կերպով» («Պրավդա», 1926, № 247):

Հայկինոյի հաջորդ արտադրանքը՝ «Զարեն» նս ընդհանուր առմամբ դրական գնահատական ստացավ «Պրավդայի» էջերում: Մի շարք դիտողություններով հանդերձ (տեղ-տեղ ընկատվող չափի զգացման պակաս, կոպիտ հնարանքներ, ռեալիստական ոճի խախտումներ և այլն), հոդվածագիրը (Ս. Երմոլինսկի) ինչպես այս, այնպես էլ նախորդ կինոնկարի կարևոր առավելությունն է համարում այն հանգամանքը, որ, չնայած անցյալի կենցաղից առնված նյութին, «նրանց բովանդակությունը թելադրված է երիտասարդ Հայաստանի՝ վառ արտահայտված հեղափոխական գիտակցությամբ». «Անփոփոխ կերպով և՛ «Նամուսի» մեջ, և՛ «Զարեում» բացակայում է Արևելքի պաճուճազարդ ու գեղապաշտական «էկզոտիկան», որ դեռ ոչ վաղուց այնքան սիրված էր թե՛ թատրոնի և թե կինոյի կողմից: Դաժան ու խեղճ Արևելքը, սովորույթների ճիրաններում խճճված, նվաճողների կողմից շահագործվող, վրիժառու և փառամոլ ավագանու կրնկի տակ հեծող,— այս Արևելքն է դառնում այսօրվա կինոարվեստի միակ բովանդակությունը» («Պրավդա», 1927, № 30): Այս տեսանկյունից է գնահատված «Պրավդայում» նաև «Խասփուշ» կինոնկարը (1928, № 16):

Տարիներ անց լայն արձագանք գտավ Հայկինոյի լավագույն ֆիլմերից մեկը՝ «Պեպոն», որի միութենական էկրան դուրս գալու առիթով 1935 թ. մայիսին բազմազան նյութեր հրապարակվեցին կենտրոնական պարբերականներում: «Պրավդայում» տպագրվեց Մ. Շահինյանի արժեքավոր հոդվածը (««Պեպոն» միության էկրանների վրա»):

Հայկական կինոնկարներին նվիրված «Պրավդայի» ելույթներում թեմատիկայի, ռեժիսորական աշխատանքի վերլուծման ու գնահատման հետ մեկտեղ, արժեքավորված են նաև դերակատարները. բարձր գնահատական է տրված Հ. Աբելյանի, Հր. Ներսիսյանի, Հ. Խաչանյանի, Ա. Ավետիսյանի և այլոց խաղին, որոնք ոչ միայն առաջին հայ կինոդերասանները եղան, այլև ստեղծեցին ուսանելի ավանդներ:

1926 թ. օգոստոսի 14-ին «Պրավդայում» «Թատրոն և կինո» խորագրի ներքո հրապարակվեց «Հայկական թատրոն» հոդվածը (հեղինակ՝ Պրոսպերո): Անդրադառնալով Երևանի և Թբիլիսիի հայկական թատրոնների աշխատանքին, հեղինակը իբրև դրական երևույթ նշում է այն հանգամանքը, որ ռեժիսորներ Բուրջալովն ու Քափանակյանը՝ կոլեկտիվների ղեկավարները, սկզբից ևեթ գործունեության անկյունաքար դարձրին սոցիալական, կենցաղային ու դասական պիեսները. երկու հայկական թատրոններն էլ տարեցտարի ավելի հետևողականորեն են արձագանքում արդիականության պահանջներին՝ թե՛ ժամանակակից դրամատուրգիայի բեմադրությամբ և թե դասական երկերի ուրույն մեկնաբանությամբ: Վերջին թատերաշրջանը, նկատում էր թերթը, հատկանշվում է ազգային դրամատուրգիայի լավագույն նմուշների բեմադրությամբ (Սունդուկյանի, Շիրվանզադեի, Դեմիրճյանի և այլոց գործերը), ինչպես և խաղացանկի մեջ ռուսական նոր պիեսների ներմուծումով: Նոր խաղացանկը ընդլայնեց թատրոնի ստեղծագործական հնարավորությունների ոլորտը, աշխուժացրեց երիտասարդ դերասաններին: Համմիկի, Արուս Ոսկանյանի, Ալիխանյանի և մյուս տաղանդավոր արտիստների խաղը նշանակալից չափով մեծացրեց լայն զանգվածների հետաքրքրությունը հայ թատրոնի նկատմամբ. «թատրոնը նրանց համար դարձել է կուլտուրական պահանջմունք»:

Ուշագրավ է նաև «Պրավդայում» տպագրված հաղորդումը (1927, № 113) Մոսկվայի Հայկական կուլտուրայի տան դրամատիկական ստուդիայի մասին, որը Ռ. Սիմոնովի ղեկավարությամբ խոշոր դեր կատարեց ինչպես դերասանական որակյալ կադրերի պատրաստման, այնպես էլ ազգային դրամատուրգիայի բեմադրության ասպարեզում («Մեծապատիվ մուրացկաններ», «Պեպո», «Պաղտասար աղբար» և այլն):

20-ական թվականների «Պրավդայում» հայ արվեստին վերաբերող նյութերի մեջ առանձնանում է Մոսկվայում Ալ. Սպենդիարյանի ստեղծագործություններից կազմված համերգին նվիրված հոդվածը (1928, № 6): Հեղինակը (Եվգ. Բրաուդո) համառոտակի ներկայացնում է Ալ. Սպենդիարյանի երաժշտական գործու-

նեությունը, բնութագրելով նրան որպես «միութենական մասշտաբի ականավոր կոմպոզիտոր»: Հայաստանի ժողովրդական արտիստի սիմֆոնիկ համերգը, նկատում է հեղինակը, ո՛չ միայն հստակ պատկերացում տվեց նրա ընտեղծագործության մասին, «այլև մեզ տարավ կուլտուրական հնագույն ազգերից մեկի երաժշտական աշխարհը». այս համերգն ունի **«հասարակական մեծ նշանակություն».** բանն այն է, բացատրում էր թերթը, որ մինչև այժմ միութենական հանրապետության գրեթե ոչ մի խոշոր կոմպոզիտորի սիմֆոնիկ համերգ չի կազմակերպվել կենտրոնում. «վաղուց արդեն ժամանակն է վերջ տալու ազգային փոքրամասնությունների կոմպոզիտորների ստեղծագործությանը ծանոթանալու խնդրում մեր անկազմակերպվածությանը, և հուսով ենք, որ Ալ. Սպենդիարյանի ելույթը կլինի այդ բնագավառում հետագա կազմակերպական փորձերի ազդակներից մեկը»:

* * *

Սկզբունքային կարևոր նշանակություն ունեցան «Պրավդայի» այն ելույթները, որոնք նվիրված են ինչպես ՍՍՀՄ տարբեր ժողովուրդների անցյալի մեծ մտածողներին ու դասական գրողներին, նրանց առաջավոր ավանդույթների պահպանման ու զարգացման հարցերին, այնպես էլ բուն ժողովրդական ստեղծագործությունների արժեքավորմանը: Նշանակալից էին այս տեսակետից «Ռուս ժողովրդի փառքն ու պարծանքը» (Ա. Ս. Պուշկինի մահվան 100-ամյակի առթիվ), «Խորհրդային կուլտուրայի մեծ տոնը» (Շ. Ռուսթավելու «Վագրենավորի 750-ամյակը»), «Ռուսական հին գրականության անմահ ստեղծագործությունը» («Ասք Իգորի գնդի մասին» էպոսի 750-ամյակը) խմբագրականները, սովետական մյուս ժողովուրդների էպոսներին նվիրված նյութերը:

Առանձնակի ուշադրություն նվիրեց «Պրավդան» հայ ժողովրդական էպոսի՝ «Սասունցի Դավթի», 1000-ամյակին, որ մեծ շուքով տոնվեց 1939 թ. սեպտեմբերին: Մեր էպոսի մասին «Պրավդան» իր ընթերցողներին իրազեկ էր դարձրել դեռևս դրանից երեք տարի առաջ՝ «Սասնա ծռերի» առաջին հատորի հրատարակման առիթով տպագրված հաղորդագրությամբ: Հայպետհրատի այդ բացառիկ հրատարակության վերաբերյալ ծանուցման մեջ արժեքավորված է էպոսի թեման, ընդգծված է առաջին գրի առնողի՝ ականավոր բանահավաք Գ. Սրվանձտյանցի վաստակը: Միաժամանակ հայտնվում էր, որ սովետական շրջանում հավաքվել ու գրի են առնվել էպոսի 50-ից ավելի տարբերակներ, էպոս, որը «գեղարվեստական առումով բացառիկ երևույթ է հայ գրականության մեջ և առանձնահատուկ տեղ է գրավում համաշխարհային էպոսի մեջ» («Պրավդա», 1936, № 83):

«Սասունցի Դավթի» 1000-ամյակի տոնակատարության օրերին «Պրավդան» պարբերաբար անդրադառնում էր մշակութային այդ մեծ իրադարձությանը՝ տպագրելով ամենատարբեր բնույթի նյութեր՝ սկսած Կազանում կայացած հանդիսավոր երեկոյի վերաբերյալ հաղորդագրությունից մինչև «Սովետական ժողովրդի կուլտուրական տոնը» խորագրով խմբագրականը (1939, № 256), որ գրված է ընդհանրացման մեծ ուժով, ժողովուրդների ստեղծած մշակութային արժեքների նկատմամբ խոր հարգանքով:

Հայ ժողովրդի հետ միասին, գրում էր «Պրավդան», այդ մեծ տարելիցը տոնում են մեր հայրենիքի բոլոր ժողովուրդները, որովհետև «Սասունցի Դավիթը» սովետական կուլտուրայի ընդհանուր գանձարանի անկապտելի հարստությունն է. հայկական էպոսը «մտնում է համաշխարհային կուլտուրայի ոլորտը և դառնում մարդկության հերոսական մեծ էպոսի մի մասը՝ «Իլիականի» և «Ոդիսականի», ռուս ժողովրդի դյուցազնական բիլինային էպոսի, «Կալեվալայի» և Հյուսիսի սագաների, «Նիբելունգների երգի» և ժողովրդական ստեղծագործության շատ այլ գանձերի կողքին»:

«Սասունցի Դավիթը» ժողովրդի հերոսական ոգու, այլազգի նվաճողների դեմ նրա տևական մաքառման մարմնավորումն է, ժողովուրդ, որ «համառորեն ու արիաբար պաշտպանում էր իր ինքնուրույնությունը, իր մշակույթը, իր լեզուն, իր խաղաղ աշխատանքը դաշտերում», մաքառում էր և իր սաքերի մեջ վառ պահում «հերոսության, քաջության և ուժի պատվիրանները». այդ սաքերից շիթ առ շիթ ամբարվեց ու պոռթկաց Սասնա Դավթի դյուցազնական կերպարը, որ «մարմնավորում է Հայաստանը՝ խաղաղ հողագործության և հերոսական պայքարի երկիրը»:

Եվ այսպես ապրում էր ժողովուրդը, հող էր հերկում, բարեկամություն անում, կռվում հանուն արդարության, լավ ու ազատ կյանք էր երազում և ստեղծում իր հոգևոր գանձերը, ավանդելով դրանք գալիք, բախտավոր սերունդներին: «Նոր, սոցիալիստական Հայաստանում,— շարունակում է «Պրավդան», նոր ձևով սկսեց կենդանություն առնել ալեզարդ հնությունը: Հերոսական ներկայի համար մոտիկ ու հասկանալի են անցյալի հերոսական կերպարները»: Իրենց հաղթանակն ու ծաղկումը տոնող սովետական ժողովուրդները հե-



րոսական անցյալն ի սպաս են դնում ներկային, է՛լ ավելի հիանալի ապագայի համար մղվող պայքարին. «...և բազմադարյան կուլտուրան բաց է անում իր բոլոր գանձերը՝ գրականության, արվեստի հարստացման համար, ամբողջ կյանքը ազգային գույների, կերպարների, հնչյունների շողշողուն խաղով հագեցնելու համար»: Այսպես, անցյալը կապվում է ներկային՝ իր հերոսական ավանդներով, մարդասիրության, արդարության գաղափարներով: Եվ շարունակվում է ժողովուրդների մեծ պատմությունը սոցիալիստական ներկայի նորաբաց հունով:

Սոցիալի՛զմն էր, որ մեր հայրենիքի ժողովուրդներին տվեց ազգային զարթոնքի ու վերածննդի մեծ պարգևը, նրանց դարձնելով անցյալի արժեքների լիիրավ տերը: «Չկա այլևս արևելյան «էկզոտիկան», որը քողարկում էր կուլտուրական ստրկությունը,— գրում էր «Պրավդան»:— Կա ժողովուրդների եղբայրական մասնակցությունը սոցիալիզմի միասնական մեծ մշակույթի ստեղծմանը»: «Սասունցի Դավթի» 1000-ամյակը,— եզրափակում էր թերթը,— «հայ ժողովրդի տոնը, որը դարձել է ամբողջ սովետական ժողովրդի տոն, վկայում է նոր կուլտուրայի այդ հզոր աճման մասին, սոցիալիզմի ստեղծած նոր աշխարհի ամենահաղթ ուժի մասին»: 1939 թ. սեպտեմբերի 12-ին «Պրավդան» մի ամբողջ էջ նվիրեց «Սասունցի Դավթին»:

Բազմադարյան հայ մշակույթի գնահատման յուրօրինակ դրսևորումներ են «Պրավդայում» տպագրված այն նյութերը, որոնք ընթերցողին պատմում են Հայաստանի հնագույն հուշարձանների, ճարտարապետական կոթողների, ձեռագրերի հավաքածուների մասին: Լ. Օվալովը «Երևանի փողոցներում» ակնարկում («Պրավդա», 1936, № 19), նկարագրելով հայոց մայրաքաղաքի մշակութային նոր կյանքը, կառուցողական եռուզեռը, մեծ հիացմունքով խոսելով Ալ. Թամանյանի արվեստանոցի աշխատանքների մասին, հրավիրում է ընթերցողին մի պահ դուրս գալ սոցիալիստական առօրյայով շնչող քաղաքից. «Երևանի շրջակայքում է գտնվում պեղված Զվարթնոցը, կանգնած են հնության հիասքանչ հուշարձանները՝ տաճարներն ու ապարանքները, որ գոյություն ունեն ավելի քան մեկուկես հազարամյակ»: Հեղինակն իրավացիորեն ընդգծում է այն միտքը, թե անցյալի արժեքներով սոսկ հիանալը քիչ է, պետք է կարողանալ օգտվել նրանցից այնպես, որ մշակույթի դարավոր ավանդույթները խորացվեն ու զարգացվեն, որ «հին հայկական արվեստի անպաճույճ ու գեղեցիկ ձևերը, նորոգված ու թարմացված, վերակենդանանան նոր կառույցներում»: «Պրավդայի» բարձր ամբիոնից նա առաջադրում էր ճարտարապետության մեջ ազգային ոճի պահպանման կենսական խնդիրը:

Նախապատերազմյան տարիներին «Պրավդան» տարբեր առիթներով մի քանի անգամ անդրադարձել է Մատենադարանին՝ բնութագրելով այն իբրև «հնադարյան մշակույթի գանձարան», «համաշխարհային հուշարձան»: Այդ նյութերի մեջ առանձնանում է սովետական ականավոր գրող Կ. Ֆեդինի պատկերավոր ու ոգեշունչ խոսքը: Երբ բաց ես անում հնագույն ձեռագրերը, երբ համոզվում ես, որ գրքերը ճշտորեն թվագրված են տքնող գրիչների անփոփոխ հետգրությամբ,— գրում է նա,— «հուզմունքը պաշարում է քեզ, կարծես խորասուզվում ես ժամանակի հատակը, մարդկային հետաքրքրության ու երևակայության ակունքները: Հազարավոր գրքերից ամեն մեկը աշխատասիրության ու վարպետության կատարյալ ստեղծագործություն է: Այդպիսի մի գիրքը մի ամբողջ «հրատարակություն» է՝ անկրկնելի, եզակի, զարդանկարչի և գրչի արվեստի արգասիք: Համարյա միշտ նրանք անհայտ են, բայց որքա՜ն կենդանի է նրանց վարժ ձեռքերի գործը»: Սակայն այդ ամենը սոսկ ինքնամփոփ գեղեցկություններ չեն, որ «պահպանվում են գերազանց կերպով. սովետական գիտնականները «խնամում և ուսումնասիրում են այդ հազարավոր «հրատարակությունները», որոնցից յուրաքանչյուրը կարող էր ուզածդ հարուստ գրադարանի հպարտությունը կազմել» («Պրավդա», 1941, № 135):

* * *

«Սասունցի Դավթի» համաժողովրդական տոնակատարությանն անմիջապես հաջորդեց հայ արվեստի տասնօրյակը Մոսկվայում: Այս նշանակալից իրադարձությունը ևս արժանացավ «Պրավդայի» հատուկ ուշադրությանը: Դեռևս 1939 թ. սեպտեմբերի 3-ին թերթի հատուկ թղթակից Ն. Կրասնոչուբը Երևանից հաղորդում էր. այն հանգամանքը, որ հայկական էպոսի 1000-ամյակին և հայ արվեստի առաջիկա տասնօրյակին— «այս երկու իրադարձություններին է սևեռված ամբողջ երկրի ուշադրությունը, այստեղ առաջացրել է բերկրանքի և հպարտության զգացմունք» («Պրավդա», 1939, № 244): Այնուհետև նա թվարկում է ցուցադրվելիք ներկայացումները, համառոտակի պատմում նրանց սյուժեն, նշում բեմադրողներին ու դերակատարներին, ընդգծելով Երևանում կատարվող նախապատրաստական աշխատանքների լրջությունն ու լայն ծավալը.

«բոլոր դեկորացիաները ու «հանդերձապահարանը» Մոսկվա փոխադրելու համար կապանշվի 40 վագոնից կազմված ապրանքատար մի գնացքաշարք»:

Տասնօրյակն սկսվեց հոկտեմբերի 20-ին, բայց դեռևս ամսի սկզբից հատուկ խորագրի ներքո «Պրավդան» պարբերաբար տպագրում էր տարբեր բնույթի նյութեր (ինֆորմացիա, հոդված, խոսք և այլն), որոնց նպատակն էր համամիութենական հասարակայնությանը ծանոթացնել հայ արվեստի նվաճումներին, Սովետական Հայաստանի մշակութային-գրական կյանքին, հեղինակավոր ամբիոնից ներկայացնել մեր արտիստներին, նկարիչներին, գրողներին, ժողովրդական ստեղծագործությունը: Հոկտեմբերի 11-ին և 19-ին «Պրավդան» հատուկ էջեր նվիրեց հայ արվեստին: Դրանցում զետեղված էին Ռ. Սիմոնովի, Գ. Խուբովի հոդվածները, Ն. Զարյանի «Հայաստան», Գ. Սարյանի «Կոմունարները» բանաստեղծությունները, Մ. Սարյանի, Ծ. Տալյանի, Հ. Դանիելյանի, Տ. Սազանդարյանի, Ա. Վոյինովա-Ծիկանյանի և այլոց խոսքերը: «Պրավդայում» տպագրվեց ՀԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար Գր. Հարությունյանի «Հայ ժողովրդի մշակույթը» խորագրով ընդարձակ հոդվածը (1939, № 277): Տասնօրյակից առաջ հայ գրականության և արվեստի վերաբերյալ հաղորդումներով թերթում հանդես եկան նաև պրոֆ. Գ. Աբովը (№ 288), Հմ. Սիրասը (№ 290), Ի. Արբատովը (№ 290) և ուրիշներ:

Տասնօրյակի ողջ ընթացքում «Պրավդան» յուրաքանչյուր համարում արձագանքում էր հայ մշակույթի այդ խոշոր իրադարձությանը՝ ամեն անգամ տպագրելով մեկից ավելի նյութեր: Հայկական օպերայի և բալետի պետական թատրոնի ցուցադրած բոլոր ներկայացումների մասին թերթը ո՛չ միայն հատուկ հաղորդագրություն զետեղեց առաջին էջում, այլև տպագրեց ընդարձակ հոդվածներ:

Մոսկվայում բացված հայ գեղանկարչության և քանդակագործության ցուցահանդեսի առթիվ «Պրավդան» տպագրեց Ս. Գերասիմովի հոդվածը: Հեղինակը համառոտակի հիշատակում է անցյալի հայ գեղանկարչության վարպետների վաստակը (Թ. Ռոսլին, Հ. Հովնաթանյան, Վ. Սուրենյանց և ուրիշներ), ապա անդրադառնում Ե. Թադևոսյանի, Փ. Թերլեմեզյանի, Մ. Սարյանի, Մ. Աբեղյանի, Ա. Սարգսյանի, Ա. Ուրարտուի և ժամանակակից այլ արվեստագետների ստեղծագործություններին: Առանձին կտավների ու քանդակների կապակցությամբ որոշ դիտողություններ անելուց հետո նա տալիս է իր ընդհանուր գնահատականը. «Ցուցահանդեսը պերճախոս կերպով վկայում է, որ Հայաստանի նկարիչները բարձր են պահում սովետական արվեստի դրոշը: Նրանք իրավացիորեն պատվավոր տեղ ունեն սովետական արվեստագետների ընդհանուր ընտանիքում» (1939, № 298): Պրոֆ. Ա. Դյակովի «Հիանալի անսամբլ» հոդվածը (1939, № 299) նվիրված է Կոմիտասի անվան վաստակավոր կվարտետին, որի տասնհինգամյակը լրացավ Մոսկվայում հայ արվեստի փառատոնի ժամանակ:

Հոկտեմբերի 30-ին «Պրավդան» տպագրեց Մոսկվայում հայ արվեստի տասնօրյակի ավարտի մասին հաղորդագրությունը և եզրափակիչ համերգի ընդարձակ նկարագրությունը: Տասնօրյակին նվիրված խմբագրական հոդվածում, անդրադառնալով հայ ժողովրդի տառապալից անցյալին, «Պրավդան» հիացմունքի խոսքերով բնութագրեց պատմության արհավիրքներին դիմագրավելու, իր մշակույթը պահպանելու նրա համառ ճիգերը: Հայ ժողովուրդը, ընդգծում էր «Պրավդան», Սովետական Միության եղբայրական ազգերի մեծ ընտանիքում ապրեց իր սոցիալական ու ազգային վերածնունդը, սոցիալիզմի օրոք հոյակապ ծաղկման հասավ դարավոր հայ մշակույթը. «Իրականացավ հայ ժողովրդի իղձը: Ժողովրդական զանգվածների մեջ կուտակված հզոր ուժերը ելք ու գործադրում գտան: Խնամքով պահպանելով անցյալի դասական արվեստի հուշարձանները, հայ ժողովուրդը ստեղծում է նոր, հիանալի արվեստ...»: Եվ դրա վկայություններից մեկն էլ հայ արվեստի տասնօրյակն էր Մոսկվայում:

* * *

Նախապատերազմյան «Պրավդայում» զգալի թիվ են կազմում հայ գրականությանը վերաբերող նյութերը, որոնք կարելի է խմբավորել հետևյալ կերպ՝ սովետահայ գրողների գործերի հրապարակում. գրական ժառանգության հարցեր. ժամանակակից գրական պրոցեսի ու առանձին գրողների բնութագրումներ:

Միութենական ընթերցողն առաջին անգամ «Պրավդա»-ի էջերում է ծանոթացել Ե. Չարենցի «Գանգրահեր տղան» չափածո նովել-տեսիլին, այստեղ տպագրվել են Հ. Հակոբյանի, Ա. Վշտունու, Ալազանի, Ն. Զարյանի, Գ. Սարյանի, Գ. Բորյանի, Ա. Գրաշու և սովետահայ այլ բանաստեղծների գործերի թարգմանությունները: Տարբեր առիթներով «Պրավդան» զետեղել է Ավ. Իսահակյանի, Դ. Դեմիրճյանի, Ստ. Զորյանի խոսքերը, Մ. Ծահինյանի ակնարկները: Նշանակալից փաստ է, որ ՍՍՀՄ գրողների առաջին համագումարին նվիրված «Պրավդայի» առաջնորդողը («Բոլոր



լեզուներով հնչում է սոցիալիզմի հաղթական երգը») սկսվում էր հայ ավագագույն գրողի՝ Ալ. Ծիրվանզադեի՝ համագումարում ունեցած ելույթից քաղված մեջբերումով:

«Պրավդայում» զետեղվել է ինֆորմացիա Սայաթ-Նովայի երգերի հրատարակության մասին, այն հայ մեծ բանաստեղծի, որի «ստեղծագործությանը ռուս ընթերցողը ծանոթ էր դեռևս Վալերի Բրյուսովի հիանալի թարգմանություններից» (1936, № 111), տպագրվել են նյութեր հայ աշուղների վերաբերյալ (1929, № 2, 1941, № 132): Անցյալի հայ գրականությունն արժեքավորող բնութագրումներ կան 1935 թ. մայիսի 12-ին Մոսկվայում ՍՍՀՄ գրողների միության նախագահության կազմակերպած՝ ռուս գրողների հետ հայ գրողների պատվիրակության հանդիպման վերաբերյալ «Պրավդայում» տպագրված հաղորդագրության մեջ, հայ գրականության մոսկովյան տասնօրյակը լուսաբանող նյութերում և այլուր:

1939 թ. ապրիլի 16-ին «Պրավդայում» հրապարակվեց սովետական մեծ գրող և ականավոր հասարակական գործիչ Ա. Ֆադեևի «Աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը և սովետական արվեստը» խորագրով ծրագրային հոդվածը, որտեղ հատուկ ընդգծված է դասական ժառանգության հսկայական դերը ժողովրդի կուլտուրական մակարդակի բարձրացման և գրական նոր սերնդի դաստիարակության գործում: «Պրավդան» խստագույնս քննադատեց այս կարևոր հարցում ազգային հանրապետություններում տեղ գտած վնասակար, ծուռ ու սխալ մոտայնության դրրսևորումները: Վերանայվեց նաև Րաֆֆու գրական հարուստ ժառանգության հանդեպ մեզանում եղած ոչ ճիշտ վերաբերմունքը: Դասականների նկատմամբ այս խառնափնթոր, ոչ հստակ դիրքորոշումը անհրաժեշտ է անհապաղ շտկել, պետք է սովորել նրանցից, սովորել քննադատաբար,— այս էր հոդվածագրի հիմնական եզրակացությունը: Ա. Ֆադեևի ելույթը «Պրավդայում» վճռական նշանակություն ունեցավ հայ մեծ գրողի ժառանգության ճիշտ գնահատման համար:

«Պրավդայի» էջերում լայնորեն լուսաբանվեց 1941 թ. մայիսի 10—20-ը Մոսկվայում կայացած հայ գրականության տասնօրյակը: Թերթի 10 համարներում զետեղված է մոտ 30 նյութ, որոնց նպատակն էր ներկայացնել հայ գրականությունն իր հին ու նոր արժեքներով, բնութագրել ժամանակակից հայ գրողների վաստակը, հավաստել ռուս գրողների բուռն հետաքրքրությունը եղբայրական ժողովրդի մշակույթի նկատմամբ:

Ինչպես տեղեկանում ենք «Պրավդայից», տասը օրվա ընթացքում Մոսկվայում կայացան 16 գրական հանդիպում և գիտական նստաշրջան: Մոսկվայի գրողների տան ակումբում տեղի ունեցավ Ավ. Իսահակյանին նվիրված հատուկ երեկո, որը ներածական խոսքով բաց արեց ՍՍՀՄ գրողների միության նախագահ Ա. Ֆադեևը: Մոսկվայի աշխատավորության առջև իրենց ստեղծագործությունները կարդացին Ավ. Իսահակյանը, Ն. Զարյանը, Գ. Սարյանը, Գ. Բորյանը և տասնօրյակին մասնակցող մյուս գրողները: Վերոհիշյալ հանդիպումների և երեկոների ժամանակ հայ գրականությանը նվիրված ջերմ խոսքով կամ իրենց թարգմանությունների ընթերցմամբ հանդես եկան Ալ. Տոլստոյը, Ա. Ֆադեևը, Վս. Վիշնևսկին, Վ. Կիրպոտինը, Ալ. Բեզիմենսկին, Վ. Ի. Լեբեդև-Կումաչը, Վ. Զվյագինցևան, Ս. Գորոդեցկին, Վ. Դերժավինը, Ա. Կարավաևան, Կ. Զելինսկին և ուրիշներ: Տասնօրյակի առթիվ ՍՍՀՄ ակադեմիայում կազմակերպված գիտական նստաշրջանում զեկուցում կարդացին ակադեմիկոս Հ. Օրբելին («XII և XIII դարերի հայկական վերածննդի գեղարվեստական և գրական երևույթները») և պրոֆ. Ծ. Նուցուբիձեն («Հայաստանը և Արևելյան վերածնունդը»):

Տասնօրյակի առիթով «Պրավդան» տպագրեց Ավ. Իսահակյանի, Ստ. Զորյանի, Մ. Արազու, Ն. Զարյանի ստեղծագործություններն արժեքավորող հոդվածներ՝ գրական դիմանկարներ (1941, №№ 133, 135, 137, 138): Ժամանակակից հայ պոեզիայի բնութագրմանն էր նվիրված Ա. Ադալիսի «Ժողովրդի բանաստեղծական օրագիրը» խորագրով ընդարձակ հոդվածը («Պրավդա», 1941, № 134), որտեղ գնահատանքի խոսք է ասվում սովետահայ պոեզիայի տարբեր սերունդների ներկայացուցիչների մասին: Հեղինակը ժամանակակից հայ պոեզիայի հիմնական մոտիվներն է համարում ժողովուրդների բարեկամության փառաբանումը, սոցիալիստական իրականության պատկերումը, հայրենիքի սիրո և հզորության գովքը: Հոդվածում կան նաև ընդհանուր բնույթի մի շարք դիտողություններ («ավելորդ դեկորատիվ փքունություն», «սխեմատիզմ, թերթային ոճ» և այլն):

Հայ գրականության տասնօրյակին լայնորեն արձագանքեց ողջ կենտրոնական մամուլը. «Իզվեստիան» տպագրեց հատուկ խմբագրական, Հ. Օրբելու «Մեծ ավանդներ», Պ. Անտոկոլսկու «Հայաստանի բանաստեղծները», Ս. Վուրգունի «Ստեղծագործական բարեկամություն» հոդվածները և այլ նյութեր, «Լիտերատուրնայա գազետա» առաջնորդող հոդված և մի քանի ամբողջական էջեր նվիրեց հայ

գրականությանը, տասնօրյակի ընթացքը լուսաբանում էին մոսկովյան թերթերը...

Հայ գրականությանը նվիրված երեկոներին մասնակցում էին այդ օրերին Մոսկվայում հյուրընկալվող լատվիացի, էստոնացի, լիտվացի, ղազախ, թաթար և այլ եղբայրական հանրապետությունների մի շարք գրողներ ու արվեստի գործիչներ: Հանդիպումներն անցնում էին, ինչպես նշում էր «Պրավդան», ջերմ, բարեկամական իրադրության պայմաններում. տասնօրյակի երեկոները մեծ մասսայականություն էին վայելում մոսկվացիների մեջ. դրանց մասնակցեց ավելի քան 10 հազար մարդ» (1941, № 139):

Մոսկվայում կայացած հայ գրականության տասնօրյակը վերածվեց հայ և ռուս ժողովուրդների բարեկամության իսկական տոնի: «Կրկին հանդիպում են սովետական երկու գրականություն՝ ամրապնդելու անքակտելի փոխադարձ ըմբռնողությունը, հանդիպում են բարեկամները՝ հայերն ու ռուսները՝ նորից սեղմելու միմյանց ձեռքը»,— գրում էր Կ. Ֆեդինը «Պրավդայում» տպագրված «Մեզ համար թանկ է Հայաստանի գրականությունը» հոդվածում: «Ռուս գրողները թանկ են գնահատում Հայաստանի եղբայրական գրականությունը,— եզրափակում է իր խոսքըականավոր գրողը:— Այն աչքի է ընկնում մեծ գաղափարայնությամբ և գեղարվեստական բարձր մակարդակով: Սովետական Հայաստանի գրականությունը հարուստ է տաղանդներով և լի երիտասարդ ուժերով: Պատմական մեծ անցյալի այդ տերերը,— անցյալ, որից ուժ են քաղել նրանց հայրերը,— մեր միասնական սոցիալիստական տերության մյուս ժողովուրդների մշակույթի վարպետների շարքում իրենց զգում են ապագայի լիակատար տերեր» (1941, № 135):

ՍՍՀՄ գրողների միության նախագահ Ա. Ֆադեևը ՀԺԳ-ի թղթակցի հետ ունեցած զրույցի ժամանակ նշեց հայ գրականության տասնօրյակի երկու հիմնական առանձնահատկությունը. նախ՝ տասնօրյակն անցավ գործարար բարձր մակարդակով և զգալիորեն ամրապընդեց Մոսկվայի ու Հայաստանի գրողների ըստեղծագործական-բարեկամական կապերը. և ապա՝ իր մասսայական բնույթով, մայրաքաղաքի բանվորների, կարմիրբանակայինների, ուսանողների, մտավորականության լայն ընդգրկումով այն «ամենաուժեղն էր մինչև այժմ անցկացված տասնօրյակներից»: Ամփոփելով տասնօրյակի արդյունքները, Ա. Ֆադեևն ընդգծեց. «Մեր գրողների, բանաստեղծների ու թարգմանիչների խնդիրն է՝ ավելի ընդհույպ մոտենալ հայ գրականությանը, ուսումնասիրել այն, ուսումնասիրել հայ ժողովրդի պատմությունն ու հարուստ գրականությունը, ավելի շատ թարգմանել ինչպես դասական երկեր, այնպես էլ ժամանակակից հայ գրողների ըստեղծագործությունների լավագույն նմուշները...» («Սովետական Հայաստան», 1941, № 123):

Անելիքը պարզ էր, մթնոլորտը ոգևորիչ... Բայց շուտով, շատ շուտով, երբ տասնօրյակի մասնակիցներից շատերը դեռ չէին էլ հասցրել Երևան վերադառնալ, մեր հայրենիքի վրա պայթեց պատերազմի արհավիրքը: Սկսվեց Մեծ հայրենականի էպոպեան: Այնքան փայփայած և երգերում փառաբանված հայրենիքը հարկ եղավ պաշտպանել նաև զենքով և արյունով: Սովետական Միության բոլոր ազգերի զավակների հետ մեկտեղ ահեղ մարտի ելան նաև հայ ժողովրդի ուստրերն ու դուստրերը, հայ գրողները՝ սվինով ու գրչով...

Եվ նրանց այդ հերոսական մաքառումը նույնպես, ինչպես և հետպատերազմյան տարիների Հայաստանի տնտեսական, գիտական ու մշակութային կյանքը՝ ամենաբազմազան դրսևորումներով, իրենց ջերմ ու ոգևորիչ արձագանքը գտան «Պրավդայի» էջերում:

**Հ. Հ. ՖԵԼԵՔՅԱՆ**
**Պատմական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր**



# ԼԱՎԱԳՈՒՅՆԸ ՄԱՆՈՒԿՆԵՐԻՆ

Մայիսի 19-ը՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպության ծննդյան օրն է, մեր բազմամիլիոն պիոներիայի մեծ ու բերկրալից տոնը: Ողջ երկրով մեկ, թե՛ մեծ և թե՛ փոքր քաղաքներում, հեռավոր գյուղերում ու ավաններում տեղի են ունենում հավաքներ, տողաններ, վառվում են պիոներական խարույկները: Պիոներական դրուժինաներն ու ջոկատները հանրագումարի են բերում «Միշտ պատրաստ» երթին իրենց մասնակցության արդյունքները, ցուցադրում հանրօգուտ աշխատանքում, սպորտում, գիտության, գեղարվեստական ինքնագործունեության, տեխնիկական ստեղծագործության բնագավառներում ձեռք բերած նվաճումները: Մայիսյան այս օրերին պիոներները ցուցադրում են իրենց անսասան հավատարմությունն Իլյիչի պատգամներին:

Պիոներական կազմակերպության ծննդյան օրը միայն կարմիր փողկապակիրների տոնը չէ, այլ սովետական ողջ ժողովրդինը: Հայրենական մեծ պատերազմի միլիոնավոր ալեհեր վետերանները, բանվորներն ու գյուղի աշխատավորները, ինժեներներն ու գիտնականները ջերմ խանդաղատանքով են հիշում իրենց պիոներական դրուժինան՝ կոմունիստական կոփման, ըստեղծագործական խիզախումների առաջին դըպրոցը, ուր հաղորդակցվել են հասարակական կյանքին:

Մանկական կոմունիստական կազմակերպության ծնունդը մեր երկրում ընդհանուր հեղափոխական վերափոխություններին մասնակցելու նպատակով երեխաների ինքնակազմակերպման ձգտումի օրինաչափ արդյունքն էր: Երեխաների ու ղեկավարների այդ ձգտումն արժանացավ կոմունիստական կուսակցության պաշտպանությանը, կուսակցությունն ամեն կերպ օժանդակեց պատանեկան շարժման ամրապնդմանը, ղեկավարվելով լենինյան այն ցուցումով, թե երեխաները՝ աճող պրոլետարները ևս, պետք է օգնեն հեղափոխությանը... Երեխաների կազմակերպումը կոմունարների դաստիարակման լավագույն ուղին է:

Հանդիսանալով պրոլետարական շարժման մի մասը՝ պատանեկան շարժումն իր առաջ խնդիր դրեց՝ մատաղ սերնդին կազմակերպել, համախմբել, դաստիարակել և պայքարի նախապատրաստել հանուն պրոլետարների շահերի: Հիրավի, պիոներական կազմակերպության առջև, նրա ստեղծման առաջին իսկ տարում, ծառացավ աճող սերնդի կոմունիստական դաստիարակության խնդիրը, որի հաջողության գրավականը պատանիների աշխարհայացքի ձևավորումը, նըրանց բազմակողմանի գիտելիքներով զինելը, հանրային աշխատանքին ու սոցիալիստական համակեցությանը վարժեցնելն էր: Մեր պիոներիան այդ կարևոր խնդիրը լուծեց փայլուն կերպով:

Այն վաղ տարիներին, երբ ծնվում ու ամրապնդվում էր պիոներական կազմակերպությունը, կուսակցությունը սահմանեց մանկական կոմունիստական կազմակերպության զարգացման ուղիներն ու հեռանկարները, մշակեց պիոներական շարժման հիմնական տեսական խնդիրները: 1924 թվականի օգոստոսի 4-ի որոշման մեջ ասված է, որ «կուսակցության գաղափարական ղեկավարությունը պետք է մանկական շարժման համար ապահովի նրա հիմնական խնդրի իրականացումը— դառնա կոմունիստական դաստիարակության դպրոց»: Կուսակցությունը մատնանշում էր մանկական քաղաքական կազմակերպության ինքնուրույն բնույթը, նախազգուշացնում պիոներների հետ տարվող աշխատանքի «չափահասացումից», նրանց ծանրաբեռնելուց:

Պիոներական կազմակերպության գործունեության հիմքում դրվեց սովետական մանկավարժության գլխավոր սկզբունքը՝ դաստիարակության սերտ կապը կյանքի, նոր հասարակության ստեղծման հետ, պատանեկության ակտիվ մաս-

նակցությունը երկրի հասարակական-քաղաքական կյանքին: Պիոներական կազմակերպությանը բնորոշ այդ առանձնահատկությունն ակներև է նրա ողջ գոյության ընթացքում: Պիոներների առաջին ջոկատները միջոցներ էին հավաքում դպրոցների կառուցման, Մոպրի ֆոնդի համար, սովորում «տիրապետել գրքին ու հրացանին», որպեսզի հանրապետության առաջին իսկ կոչով պատրաստ լինեին նրա պաշտպանության գործին:

Առաջին պիոներական ջոկատները, չափահասների հետ միասին, ձգտում էին վերացնել մանուկների անապաստանությունը, պայքարել հանուն նրանց վիճակի բարվոքման, հանուն նոր դպրոցի ամրապնդման: Ձեռնարկություններին ու հիմնարկություններին կից պիոներական ջոկատները մարմնավորում էին բանվորական միջավայրի հեղափոխական ավանդույթները, իրենց հերթին հեղափոխական այդ նոր ալիքը նրանք տանում էին դպրոց, բարերար ազդեցություն գործելով բոլոր սովորողների գաղափարա-քաղաքական դաստիարակության վրա, միաժամանակ լայն գործունեություն ծավալում դպրոցներում չընդգրկված երեխաների շրջանում:

Քաղաքացիական պատերազմի ավարտին հաջորդող ծանր տարիներին պիոներական կազմակերպությունը երեխաներին ու դեռահասներին ուղարկում էր մասնակցելու ավերված ֆաբրիկաների ու գործարանների վերականգնմանը:

Չափազանց բեղուն է պիոներական կազմակերպության գործունեությունը սոցիալիստական ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման շրջանում: Պիոներները ագիտացիա էին մղում ինդուստրացման փոխառության բաժանորդագրման համար, հավաքում, պետությանն էին հանձնում մետաղի ջարդոն, հումքի օգտակար թափոն, իրենց ուժերի ներածին չափ մասնակցում սոցիալիստական շինարարությանը: Երեխաներն ու դեռահասներն ակտիվ մասնակցում էին սոցիալական ու քաղաքական մեծ նշանակություն ունեցող այնպիսի խնդրի լուծմանը, ինչպիսին անգրագիտության ու կիսագրագիտության վերացումն էր, իրենց ավանդն էին ներդնում կուլտուրական հեղափոխության ոլորտում: Միլիոնավոր անգրագետների գրագիտություն սովորեցրին նրանք, գյուղ ուղարկեցին ավելի քան 20 հազար ռադիոընդունիչ, 500 հազար գիրք, ինդուստրացման ֆոնդի համար հավաքեցին մեկ ու կես միլիոն ռուբլի: Ակտիվ մասնակցելով ընդհանուր ուսուցման համար մղվող պայքարին՝ պիոներներն օգնում էին կարգավորելու երեխաների հաշվառումը, կազմակերպում աշակերտների հավաք, հոգում կարիքավորների համար կոշիկ ու հագուստ ձեռք բերելու մասին: Գյուղական պիոներները, կոմերիտականների հետ մեկտեղ, ագիտացիա էին մղում հացը պետությանը հանձնելու համար, բացահայտում էին կուլակների ոտնձգությունները, կազմակերպում կարմիր սայլախմբեր:

1930 թվականի ապրիլին կայացած II համամիութենական կուսակցական խորհրդակցությունը, որ նվիրված էր ժողովրդական կրթության հարցերին, նշեց, որ մանկական կոմունիստական կազմակերպությունը «հզոր լծակ է անող սերնդի կոմունիստական դաստիարակության սիստեմում», որ նրա ազդեցությունն «զգացվում է ո՛չ միայն այդ կազմակերպության մեջ ընդգրկված երեխաների վրա, այլև փաստականապես չկազմակերպված բոլոր երեխաների վրա թե՛ դպրոցում, թե՛ ընտանիքում, թե՛ արտադպրոցական աշխատանքում»:

Խորհրդակցությունը բարձր գնահատեց պիոներական կազմակերպության գործունեությունը: Դպրոցականների կոմունիստական դաստիարակության ասպարեզում,— գրված է բանաձևում, — զգալի դեր խաղացին դպրոցի պիոներական ջոկատներն ու ֆորպոստերը, իսկ արտադպրոցական ողջ աշխատանքը հիմնականում պիոներական կազմակերպության մասսայական աշխատանքի արդյունք է:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին մանկական շարժման առաջ խնդիր էր դրված՝ օգնել մեծերին թշնամու դեմ մղվող պայքարում: Պիոներները հերթապահում էին հոսպիտալներում, թիմուրյան պահակախմբերում, օգնում ռազմաճակատայիններին, խնամում էին երեխաներին, դեղաբույսեր հավաքում, հագուստ ու նվերներ ուղարկում ռազմաճակատ: Պիոներների ներդրած միջոցներով կազմվեցին տանկային շարասյուներ ու ավիաէսկադրիլիաներ: Պիոներներն օգնում էին չափահասներին ֆաբրիկաներում, գործարաններում և դաշտերում, չափահասների հետ միասին մարտնչում պարտիզանական ջոկատներում:

Պիոներական կազմակերպության տարեգրության մեջ ոսկե տառերով է գրված Արտյոմովսկի շրջանի Պոկրովսկ գյուղում պատերազմի տարիներին գործած «Տասներկու խիզախներ» պիոներական ջոկատի, Խարկով քաղաքի բնակչության շրջանում հակաֆաշիստական թռուցիկներ տարածող «Ընկեր» պիոներական օղակի, Գրոդնիի մարզի Վոլկովիսկ շրջանի Կարպովցի գյուղի պարտիզաններին հետախուզական տվյալներ հաղորդելու գործում օգնություն ցույց տված ընդհատակյա պիոներական կազմակերպության և այլոց անմահ սխրագործությունների մասին: Սովետական մարդիկ միշտ վառ կպահեն պատանի պարտիզաններ, Սովետական Միության հերոսներ Լյոնյա Գոլիկովի և Վալյա Կոտիկի պայծառ հիշատակը, որոնք արիություն ու հերոսություն ցուցաբերեցին ֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարում:

Հետպատերազմյան տարիներին պիոներական կոլեկտիվների առաջ խնդիր դրվեց ակտիվ մասնակցել ժողովրդական տնտեսության վերականգնմանը: Չափահասների հետ մեկտեղ պիոներական ջոկատներն ու դրուժինաները բանում էին դպրոցական շենքերի կառույցներում, վերանորոգում կահույքը, պատրաստում դիտողական պիտույքները, մասնակցում գյուղերի, բանվորական ավանների ռադիոֆիկացմանն ու էլեկտրիֆիկացմանը, կառուցում էին դպրոցական հիդրոէլեկտրակայաններ, սպորտհրապարակներ, ստադիոններ:

Վերջին տասնամյակում պիոներական ջոկատներն ակտիվ մասնակցում են մեր ժողովրդի ողջ կյանքին: Պիոներները մետաղաջարդոն են հավաքում երկրի խոշորագույն կառույցների համար, օգնում քաղաքների ու գյուղերի կանաչապատմանը, մասնակցում համաժողովրդական շաբաթօրյակներին. արտադրական բրիգադներում և օղակներում ընդգրկվածները պայքարում են գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքի համար, ռեկորդային բերք աճեցնում դպրոցների ուսումնա-փորձնական հողամասերում:

Երկրի պիոներիան ակտիվ մասնակցեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի տոնակատարության նախապատրաստությանը: Հոբելյանին նախապատրաստվելու ընթացքում, մասնակցելով «Շողացե՛ք լենինյան աստղեր» համամիութենական ստուգատեսին՝ պիոներական կոլեկտիվները դարձան հանրօգուտ արժեքավոր գործերի նախաձեռնողներ, ուժերի ներածին չափ օգնելով մեծահասակներին՝ նրանց աշխատանքային առօրյայում:

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ պիոներները, կոմերիտականների հետ մեկտեղ, ակտիվ մասնակցում էին համամիութենական լենինյան ստուգարքին, կազմակերպում թանգարաններ ու անկյուններ, ուսումնասիրում մեծ առաջնորդի կյանքն ու գործունեությունը, մասնակցում աշխատանքային կոլեկտիվների նախաձեռնած շաբաթօրյակներին:

Պիոներական կազմակերպության ամենաակտիվ մասնակցությունը սովետական ժողովրդի եռուն և բազմաբեղուն կյանքին, իբրև շնորհակալ մի ավանդույթ, փոխանցվում է սերնդից սերունդ: Այսօրվա պիոներներն արժանավայել կերպով շարունակում են նախորդ սերունդների ավանդույթները: Պիոներիայի կազմավորման 50-ամյակին պիոներները դիմավորեցին «Մի՛շտ պատրաստ» համամիութենական ստուգատեսերով: Այն անցնում է «Մեր գերազանց գիտելիքները, աշխատանքային նվերները, հավատարմությունն ու սերը քե՛զ, հարազատ կուսակցություն, քե՛զ, սովետական հայրենիք» նշանաբանով: Արձագանքելով ՀամԼԿԵՄ XVI համագումարի դիմումին՝ երկրի պիոներիան երկու տարի առաջ մեկնարկ վերցրեց «Մի՛շտ պատրաստ» երթով, որին մեր բազմազգ հայրենիքի պիոներների հետ միասին, մասնակցում է նաև Հայաստանի 320 հազարանոց պիոներիան: Մասնակցելով «Գիտելիքների աշխարհում» երթուղուն՝ պիոներական ջոկատները ձգտում են այն բանին, որ յուրաքանչյուր պիոներ հարստացնի իր գիտելիքները, մասնակցի առարկայական խմբակներին: Հանրապետությունում այժմ ծավալվում են «Ամբողջ ջոկատով դասարանից դասարան», «Կողքիդ ոչ մի ետ մնացող», «Ջոկատն ապրում, սովորում, պայքարում է կոմերիտաբար» շարժումները: Ամենուր գործում են պատանի մաթեմատիկոսների և ֆիզիկոսների դպրոցական ակումբները: Պիոներների գիտելիքների խորացմանը ջանադիր օգնում են բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողները: Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի 200 ուսանողներ տեխնիկական խմբակներ են ղեկավարում, ծանոթացնում պիոներներին գիտության ու տեխնիկայի նվաճումներին: Ակադեմիկոսներ Վիկտոր Համբարձումյանը, Արտաշես Շահինյանը, ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների դոկտոր, աստղագետ Բենիկ Թումանյանը, հանդես գալով հանրապետական «Պիոներ կանչ» թերթի էջերում, պիոներիայի գործունեությունն ուղղում են դեպի գիտելիքների աշխարհը: Հանրապետության 1850 պիոներական ջոկատներ իրենց լավ աշխատանքով արժանացել են աշբևայինների կոչման:

Պիոներական ջոկատներն առավել խորությամբ ու սիստեմատիկաբար են ուսումնասիրում պիոներիայի պատմությունը, տվյալներ հավաքում իրենց դրուժինաների, շրջանային ու քաղաքային պիոներական կազմակերպությունների տարեգրության մասին, գրառում պիոներական շարժման վետերանների, Հայաստանի առաջին պատկոմների կազմակերպիչների հիշողությունները: Նախորդ սերունդների լավագույն ավանդույթներին է հետևում այսօրվա պիոներիան: Եվ, պատահական չէ, որ այդ երթուղին անցնում է «Պիոներական դրոշին հավասար» նշանաբանով: Պիոներական դրուժինաներում բացված են պիոներիայի պատմությանը նվիրված ավելի քան 200 թանգարաններ ու անկյուններ:

Պիոներներն ստանձնել են հոկտեմբերիկների խմբերի շեֆությունը. մասնակցելով «Աստղիկ» շքերթին, հարյուրավոր նոր ու հետաքրքրական գործեր են նվիրում նրանց հոկտեմբերիկներին, ծանոթացնում նրանց պիոներական կազմակեր-

պությունների պատմության պայծառ էջերին,
նրանց ավանդույթներին ու սովորույթներին:

Հանրապետության պիոներներն ակտիվ մաս-
նակցում են «Փայլակ» ռազմա-սպորտային խա-
ղին: Ավելի քան 1300 ջոկատներ ներգրավվել են
խաղի մեջ, 330 ջոկատներ օգնում են սահմանա-
պահներին՝ կատարելու մարտական հերթապա-
հություն մեր հանրապետության սահմաննե-
րում: Հանրապետության դպրոցներում բացված
են մարտական փառքի 200 թանգարաններ:

1971 թվականին պիոներները, հավաքված մե-
տաղի ջարդոնի և թափոնի հաշվին, ավելի քան
10 հազար ռուբլի մուծեցին Չուկոտկայում կա-
ռուցվելիք պալատի ֆոնդը: Ընդլայնվում է պիո-
ներների մասնակցությունը հանրապետության
քաղաքների ու շրջանների կանաչապատմանը,
նոր ճանապարհների շինարարությանը:

Աշխույժ է ընթանում «Իմ հայրենիքը ՍՍՀՄ-ն
է» երթուղու հետ կապված աշխատանքը, որն ա-
ռանձնապես ծավալվեց մեծ տոնին՝ ՍՍՀՄ կազ-
մավորման 50-ամյակին նախապատրաստվելու
առնչությամբ: Կարմիր հետախույզներն ուսում-
նասիրում են Վ. Ի. Լենինի կյանքն ու գործու-
նեությունը, նամակագրություն է սկսվել մեր
հայրենիքի հանրապետությունների պիոներների
միջև, շարունակվում է հարազատ վայրերի ու-
սումնասիրությունը. դպրոցականները ծանոթա-
նում են և մեր երկրի եղբայրական հանրապե-
տությունների պիոներների կյանքին: Հավաքված
նյութերն օգնեցին՝ հանրապետության դպրոցնե-
րում ստեղծելու ինտերնացիոնալ անկյուններ ու
ցուցահանդեսներ: Պիոներական ինտերնացիոնալ
բարեկամության 300 ակումբներ ակտիվ նամա-
կագրություն են հաստատել արտասահմանյան
առաջադեմ մանկական կազմակերպությունների
հետ: Պիոներիայի գործերի, նրանց մեծ ու փոքր
նախաձեռնությունների մասին կարելի է շատ
խոսել, սակայն այսօր կարևոր է նշել, որ պիո-
ներական կազմակերպությունը երեխաների ու
դեռահասների դաստիարակության մեծ դպրոց է:

Ներկայումս պիոներական կազմակերպությունն
ընդգրկում է 10—15 տարեկան համարյա բոլոր
երեխաներին ու դեռահասներին, այսինքն՝ հան-
դիսանում է սոցիալական միջավայրի այն մասը,
որի ներգործությամբ ընթանում է երեխայի
զարգացման պրոցեսը, ձևավորվում նրա անհա-
տականությունը: Նշելով պիոներիայի կեսդարյա
հոբելյանը, այսօր մենք կարող ենք խոսել անող
սերնդի կյանքում պիոներական կազմակերպու-
թյան դերի ու տեղի մասին: Պիոներական կազ-
մակերպությունն ունի վիթխարի հնարավորու-
թյուններ ու դաստիարակչական յուրահատուկ
միջոցներ՝ մատաղ սերնդին կոմունիզմ կառու-
ցողի բարոյական կոդեքսի ոգով դաստիարակե-
լու: Պատանի պիոներների օրենքներն են դրանք,
պիոներական կազմակերպության ավանդույթնե-
րը, նրա արարողություններն ու սիմվոլիկան,
հանուն հայրենիքի կատարվող գործերի ռոման-
տիկան ու պաթոսը, աշխատանքի ձևերի բացա-
ռիկ բազմազանությունն ու հետաքրքրականու-
թյունը:

Պիոներական կազմակերպության գործունեու-
թյան վրա բարերար ազդեցություն ունի սերտ
կապը ժողովրդի, կուսակցական ու կոմերիտա-
կան կյանքի հետ: Կոմունիզմի կառուցման մեծ
գործում պիոներների մասնակցությունը նպաս-
տում է նրանց հոգում բարոյական վեհ հատկա-
նիշների արմատավորմանը, սովորեցնում գի-
տակցաբար ապրել, կոմունիստական գաղափար-
ները զուգորդել հասարակայնորեն անհրաժեշտ
աշխատանքի հետ:

«Պիոներական շարժումը վիթխարի նշանակու-
թյուն ունի,— գրել է Ն. Կ. Կրուպսկայան:—
Այդ շարժումը երեխաներին ընդգրկում է այն
հասակում, երբ մարդը դեռ նոր է կազմավոր-
վում, զարգացնում է երեխաների հասարակա-
կան բնազդները, օգնում նրանց մեջ հասարակա-
կան հմտությունների, հասարակական գիտակ-
ցության մշակմանը: Այդ շարժումը երեխաների
առջև դնում է մեր ապրած դարաշրջանի առա-
ջադրած այն մեծ նպատակը, որի համար պայ-
քարում է ամբողջ աշխարհի բանվոր դասակար-
գը: Այդ նպատակը աշխատավորների ազատա-
գրումն է՝ նոր կարգերի կազմակերպումը... Այդ
նպատակն այնպիսին է, որ կարող է պայծառ
լույսով լուսավորել անող սերնդի կյանքը, հա-
գեցնել այն խոր բովանդակությամբ, արտակարգ
հարուստ զգացմունքներով» (Педогогические
сочинения, т. 5, стр. 113):

Ինչպես ցույց տվին Հայաստանի ԼԿԵՄ Կենտ-
կոմի սոցիոլոգիական խմբի անցկացրած «Պիո-
ներական կազմակերպությունը և հասարակայ-
նությունը» հետազոտությունների արդյունքները,
հարցման ենթարկված ծնողները, գնահատելով
պիոներական կազմակերպության դերը, երեխա-
յի հոգում նրա արմատավորած հատկություննե-
րից նշում են կոլեկտիվիզմը, ընկերասիրությու-
նը, աշխատասիրությունը, մարդասիրությունը,
հայրենասիրությունը, ինտերնացիոնալիզմը, ազ-
նըվությունը, պատասխանատվությունը հանձնա-
րարված գործի համար, սկզբունքայնությունը,
կարգապահությունը:

Հարցման ենթարկված ծնողների 83 տոկոսը
նշում է այն փաստը, որ պիոներական կազմա-
կերպությունն իր գործունեությամբ հրապուրում
է երեխաներին ու դեռահասներին, բարենպաստ
պայմաններ ստեղծում նրանց զարգացման ու
դաստիարակման համար: Գործունեության լայն
ընդգրկումը ինչպես ժամանակի, այնպես և գոր-
ծողության տեղի առումով, աշխատանքի ձևերի



բազմազանությունը մեծ հնարավորություններ են
բացում պիոներների ակտիվ «գործարարության»
համար, խթանում նրանց գործունեությունը, ըս-
տեղծում երեխաների բազմակողմանի հետաքըրք-
րասիրությունների խորացման հնարավորություն-
ներ:

Հասարակական-քաղաքական ակտիվ կյանքի
ոլորտը ներգրավելով մատաղ սերնդին՝ պիոնե-
րական կազմակերպությունը բարենպաստ պայ-
մաններ է ստեղծում հասարակության մեջ երե-
խայի անհատականության ինքնահաստատման
համար, առավել հաջողությամբ է կենսագործում
երեխա-անհատի սոցիալացման պրոցեսը, հանդես
գալով որպես այդ պրոցեսի կարևորագույն օղակ:
Մասնակցելով հանրօգուտ գործերին՝ պիոներնե-
րը որոշակի հարաբերությունների մեջ են մըտ-
նում հասարակության հետ, յուրացնում կոմու-
նիստական բարոյականության նորմերը:

Ընդհանուր նպատակով միավորվելով գործու-
նեության ոլորտում, լուծելով համընդհանուր
խնդիրներ, պիոներները դաստիարակվում են որ-
պես պատանի համախոհներ՝ անկախ նրանց ազ-
գային տարբերությունից: Տարբեր ազգի երեխա-
ներին ու դեռահասներին մեկ միասնական պիո-
ներական կոլեկտիվում համախմբելու պրոցե-
սում ամրապնդվում են երեխաների ինտերնա-
ցիոնալ դաստիարակության հիմքերը:

Հիսնամյա ուղի է անցել մեծ Լենինի անունը
կրող պիոներական կազմակերպությունը: Իր գո-
յության առաջին իսկ օրերից այն շրջապատվեց
իր ստեղծիչ կոմունիստական կուսակցության ու-
շադրությամբ ու հոգատարությամբ, այն կու-
սակցության, որը սահմանել է նրա զարգացման
ուղին, գործունեության բնույթն ու հիմնական
սկզբունքները, նրա քաղաքական ու մանկավար-
ժական ղեկավարման ձևերը: ՍՄԿԿ-ն պիոներա-
կան կազմակերպության նկատմամբ իր ղեկավա-
րությունն իրականացնում է ՀամԼԿԵՄ-ի միջոցով,
որնահա հինգ տասնամյակ շարունակ կատա-
րում է պիոներական կազմակերպության ղեկա-
վարի պատասխանատու դերը: Կոմերիտմիությու-
նը պիոներական կազմակերպությանը ղեկավա-
րում է մանկավարժական կոլեկտիվների և լայն
հասարակայնության սերտ համագործակցու-
թյամբ:

Պիոներական կազմակերպության նկատմամբ
ՍՄԿԿ անսահման հոգատարության դրսևորում-
ներից մեկն էլ նրա Կենտրոնական կոմիտեի ո-
րոշումն է «Վ. Ի. Լենինի անվան համամիութե-
նական պիոներական կազմակերպության 50-ամ-
յակի առթիվ»: «Պիոներական կազմակերպու-
թյան դերի ու հեղինակության աճը,— գրված է
որոշման մեջ,— կուսակցության ու կոմերիտ-
միության մշտական ուշադրության, հազարավոր
խանդավառ հասարակական գործիչների՝ պիո-
ներների ու ավագ բարեկամների ամենօրյա աշ-
խատանքի արդյունքն է. պիոներական շարժման
մեջ մեծ ավանդ են մուծում սովետական ուսուց-
չությունը, մանկավարժական գիտությունը: Կու-
սակցությունը բարձր է գնահատում ուսուցիչ-
ների անձնվեր աշխատանքը պատանի լենինյան-
ների դաստիարակության, պիոներական կազմա-
կերպության աշխատանքի կատարելագործման
բնագավառում»:

Նշելով պիոներիայի կեսդարյա հոբելյանը և
մանկական կոմունիստական կազմակերպության
վիթխարի դերը անող սերնդի ձևավորման գոր-
ծում՝ կուսակցությունը նոր, ավելի պատաս-
խանատու խնդիրներ է դնում կուսակցական կազ-
մակերպությունների և լենինյան կոմերիտմիու-
թյան առաջ՝ պատանի փոխարինողների դաս-
տիարակության առումով: «Անող սերնդի կոմու-
նիստական դաստիարակությունը կուսակցության
և ամբողջ սովետական ժողովրդի կենսական
գործն է,— գրված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման
մեջ,— կոմունիստներն ու կոմերիտականները,
սովետական յուրաքանչյուր մարդ պարտավոր է
ակտիվ մասնակցել պիոներների ու դպրոցա-
կանների դաստիարակությանը, այդ աշխատան-
քը համարել իր քաղաքացիական պարտքն ու
պատվավոր պարտականությունը»:

Պիոներիան մեր պատանեկության դաստիա-
րակության սիստեմի էական օղակներից մեկն է.
կուսակցական կազմակերպությունները պետք է
հիմնորեն ուղղություն տան մանկական կոմու-
նիստական շարժման զարգացմանը, ստեղծա-
գործաբար զարգացնեն կոմերիտական կոմիտե-
ների գործունեությունը պիոներական շարժման
ղեկավարման ասպարեզում, հասնեն այն բա-
նին, որ պիոներական աշխատանքն ընդգրկի
սովետական երեխաների ու դեռահասների կյան-
քի բոլոր կողմերը, լինի հետաքրքրական, բովան-
դակալից:

ՋԵՄՄԱ ՀԱՍՐԱԹՅԱՆ
*Մանկավարժական գիտությունների թեկնածու*



# ՈՒ՞Ր Է ԸՆԹԱՆՈՒՄ ՊԵԿԻՆԸ

ՄԱՈԻԶՄԻ ՀԱԿԱՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ: ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՌԵԱԿՑԻԱՅԻ ՀԵՏ ՄԵԿՏԵՂ: ՊԵԿԻՆԻ ՊԱՌԱԿՏԻՉ ԿՈՒՐՍԸ: ՀԱԿԱՍՈՎԵՏԻԶՄԸ ԵՎ ԴԱՎԵՐԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԴԵՄ: ԵՐԿՐԻ ՌԱԶՄԱԿԱՆԱՑՈՒՄՆ ՈՒ ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ՊԱՏՐԱՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ: ՎԱՇԻՆԳՏՈՆ—ՊԵԿԻՆ «ԿԱՄՈՒՐՋԸ»: ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԸ ԾԱՓԱՀԱՐՈՒՄ Է:

Արդի մաոիզմը սոցիալ-շովինիստական կարգի մանր-բուրժուական նացիոնալիստական պլատֆորմ է, որն սկզբունքորեն հակասում է մարքսիզմ-լենինիզմին: Ձևավորվեց այն ոչ միանգամից և ոչ էլ հանկարծակի կամ պատահաբար: Դրա առաջացումն ու զարգացումը պայմանավորված են համապատասխան պատմական իրադրությամբ, որի ընթացքում ստեղծվում և պայքար է մղում Չինաստանի կոմունիստական կուսակցությունը: Այդ գաղափարախոսության արմատները տանում են խոր անցյալ: Դեռևս միջնադարում ձևավորված կայսերական դոկտրինան Չինաստանը դիտում էր որպես աշխարհի կենտրոն, «երկնքի տակ գտնվող» երկիր, իսկ չինացիներին՝ բարբարոսներով շրջապատված բարձր քաղաքակրթության ընտրյալ ռասա: Լինելով ֆեոդալների գաղափարախոսություն, շովինիստական այդ տեսությունն ամբողջովին ընկալեցին բուրժուական նացիոնալիստները: Դրա ազդեցությունից խույս չտվեցին մինչև իսկ չինական հեղափոխական դեմոկրատիայի ներկայացուցիչները:

Վ. Ի. Լենինը գրել է. «...որքան ավելի հետամնաց է երկիրը, այնքան այնտեղ ավելի ուժեղ է մանր հողագործական արտադրությունը, նահապետականությունը և հետընկածությունը, որոնք անխուսափելիորեն տանում են դեպի մանրբուրժուական ամենախոր նախապաշարումների, այն է՝ ազգային էգոիզմի, ազգային սահմանափակության նախապաշարումների հույժ ուժեղացում և կայունացում» (Երկեր, հ. 31, էջ 172): Այս բնութագրումը լիովին վերաբերում է ինչպես նախահեղափոխական, այնպես և հետհեղափոխական Չինաստանին:

Մաոիստական նացիոնալիզմի սևեռուն և գերիշխող գաղափարը չինական պետության մեծության մարմաջն է: Ընդ որում, այդ մեծությունը, Պեկինի կառավարողների պատկերացմամբ, պետք է տիրապետություն ապահովի մյուս ժողովուրդների և պետությունների վրա, որոնք պետք է «ազատագրվեն» (այդպես ուղղակի գրված է ՉԿԿ IX համագումարի ընդունած կանոնադրության մեջ) և վերադաստիարակվեն մաոիստական ոգով: Այն մասին, թե ինչպիսի ճակատագիր է կանխորոշում Պեկինը մյուս ժողովուրդներին, այսօր իսկ կարելի է իմանալ, ծանոթանալով ՉԺՀ-ում բնակվող այլազգի ժողովուրդների



վիճակին: Քաջ հայտնի է, որ այդ ժողովուրդները չունեն ինքնորոշման իրավունք և անխնա ասիմիլյացիայի են ենթարկվում Պեկինի շովինիստների կողմից:

Հատկանշական է, որ ներկայումս, երբ երկրագնդի վրա տեղի է ունենում լարվածության մեղմացման պրոցես, ոչ մի պետություն, Չինաստանից բացի, այդպիսի մեծ և անհիմն հավակնություններ չունի ուրիշ երկրների նկատմամբ և պարբերաբար չի ստեղծում լարված իրադրություն հարևան երկրների հետ ունեցած սահմաններում: Դա ակնբախորեն ապացուցում է այն հետևությունը, որ մաոիզմի բուն էությունը մեծապետական շովինիզմը, համաշխարհային տիրապետության միտումն է: Պեկինի պարագլուխներն ամենևին չեն թաքցնում, որ իրենց մեծապետական նպատակների իրականացմանը կարող են հասնել պատերազմով որին և նախապատրաստում են չին ժողովրդին («Պատրաստվել պատերազմի և տարերային աղետների»— սա է արդի Չինաստանի հիմնական կոչը):

Շանհայի Շաոսինյան օպերայի թատրոնում վերջերս բեմադրվել է մի ներկայացում, որտեղ ատոմային պատերազմը համարվում է «մարդկության երջանկություն», «հեղափոխական առաջընթացի արագացուցիչ»: Հնդկական «Բլիտց» թերթի վկայությամբ, մաոիստներն «անդադրում կրկնում են, որ երրորդ համաշխարհային պատերազմն անխուսափելի է, և որ դա կավարտվի Չինաստանի լիակատար հաղթանակով»:

Զնայած զարմանալի է, բայց փաստ է՝ ներկայումս չկա միջազգային այնպիսի մի կոնֆլիկտ, որ ուրախություն չպատճառի Պեկինին, չկա խաղաղության ամրապնդման ու միջազգային լարվածության մեղմացման մի ակցիա, որ այնտեղ սվիններով չընդունվի:

Մաոիստները ծավալեցին երկրի լիակատար ռազմականացումը, հույսը դնելով համաշխարհային պատերազմի վրա: «Կուլտուրական հեղափոխությունը Չինաստանում հիմնեց ռազմա-բյուրոկրատական դիկտատուրա, երկրի ողջ կյանքը դրվեց բանակի վերահսկողության տակ, էկոնոմիկան հիմնականում ծառայեցվեց պատերազմական նպատակներին: Երկիրը հսկայական զորանոցի է վերածվել, ուր նույնիսկ նախադպրոցական հասակի երեխաներին վարժեցնում են քայլել փայտյա հրացաններով և նռնակներ նետել: Մանուկները մանկապարտեզներում, դեռահասները դպրոցներում, ուսանողները համալսարաններում, բանվորները գործարաններում, գյուղացիները գյուղերում որպես զինվորներ ընդգրկված են ջոկերում, վաշտերում ու բրիգադներում: «Աշխարհը վերափոխել հնարավոր է միայն հրացանով»— հայտարարում է Մաո Ցզեդունը, որի համար բռնությունը պատմության շարժիչ ուժն է: Այսպիսով, շովինիզմն ու միլիտարիզմը ներկայումս մաոիզմի, այսպես կոչված՝ տեսության և քաղաքական պրակտիկայի բնորոշ առանձնահատկություններն են:

Իրենց առջև նպատակ դնելով մաոիզմը մյուս ժողովուրդներին և պետություններին պարտադրելը, միաժամանակ կողմնորոշվելով դեպի համաշխարհային պատերազմը, Պեկինի պարագլուխները զինվել են տրոցկիստական հին թեզով, ուր ասվում է՝ քանի դեռ համաշխարհային մասշտաբով հեղափոխությունը հաղթանակ չի տարել, սոցիալիզմի հաջող կառուցումն «անհնար է»: Այսպիսով, սոցիալիստական շինարարության կոչով մաոիստները պատերազմի են պատրաստվում, քանի որ համաշխարհային հեղափոխության հաղթանակը կապում են համաշխարհային պատերազմի հետ:

Սակայն մաոիստական նացիոնալիզմը մի այլ հատկանիշ էլ ունի՝ կուսակցական, պետական քաղաքականության մակարդակի հասցրած կատաղի, ռազմատենչ հակասովետիզմն է այդ: Չինական մամուլն ավելի ու ավելի է բորբոքում հակասովետական զրպարտությունը, հարմարեցնելով այն որևէ պատմական տարեթվի կամ միջազգային իրադարձության: Նմանօրինակ աղմկոտ, թշնամական ելույթներ տեղի ունեցան Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի տոնակատարությանը, Փարիզյան կոմունայի հարյուրամյակի օրերին: 1970 թվականին չինական պրոպագանդան հակասովետական համազարկերով արձագանքեց Մերձավոր Արևելքում կրակի դադարեցմանը, Լեհաստանում

տեղի ունեցած իրադարձություններին։ 1971 թվականի վերջերին և 1972-ի սկզբներին Հինդուստանի թերակղզում ստեղծված լարվածության, Հնդկաստանի և Պակիստանի միջև ռազմական կոնֆլիկտի կապակցությամբ Պեկինն սկսեց հակասովետական պրոպագանդիստական նոր հարձակում։

Պեկինի պարագլուխների արտաքին քաղաքական կուրսը բնութագրվում է Չինաստանի միջազգային կապերի ակտիվացմամբ, մյուս պետությունների հետ նրա ունեցած հարաբերությունների վերականգնմամբ։ Չինաստանում և միջազգային ասպարեզում վերջին տարիներին տեղի ունեցած լուրջ փոփոխությունների ճնշման տակ, Մաոն ու նրա կողմնակիցները ստիպված եղան հրաժարվել «կուլտուրական հեղափոխության» ժամանակաշրջանի որոշ մեթոդներից ու ձևերից։ Ներքին և արտաքին բազմաթիվ դժվարություններն ստիպեցին զգալի ուղղումներ մտցնել ՉԺՀ արտաքին քաղաքականության, նրա տակտիկայի ու մեթոդների մեջ։

Իրեն բոլորովին չարդարացրեց, փաստորեն ձախողվեց, մաոիստների ծայրահեղ արկածախնդրական քաղաքականությունն արտաքին ասպարեզում։ Այն վնասեց ՉԺՀ միջազգային հեղինակությանը, նրան հասցնելով խոր մեկուսացման։ Համաշխարհային սոցիալիզմի դիրքերի ամրապնդումը, արդի աշխարհում նրա դերի հետագա բարձրացումը լիովին մերկացրին մաոիստների ստրատեգիայի և տակտիկայի հակասոցիալիստական էությունը։ ՍՄԿԿ և եղբայրական մարքսիստական-լենինյան մյուս կուսակցությունների, սոցիալիստական համագործակցության երկրների կողմից իրականացվող ինտերնացիոնալիստական քաղաքականությունը վճռականորեն նպաստեց մաոիզմի մերկացմանը, հնարավորություն տվեց զգալի չափով կանխելու Պեկինի կուրսի բացասական ակներև հետևանքները՝ համաշխարհային հեղափոխական ուժերի համար։

Վերջին երկու տարում, մեր կողմից ցուցաբերված նախաձեռնության շնորհիվ, երևացին ՍՍՀՄ և ՉԺՀ հարաբերությունների նորմալացման որոշ նշաններ։ Դեռևս 1969 թվականի հոկտեմբերի 20-ին Պեկինում բանակցություններ սկսվեցին (ընդմիջումներով) սահմանային հարցերի կարգավորման շուրջ (արտաքին գործերի մինիստրների տեղակալների մակարդակով) և մինչև օրս շարունակվում են։ Չինական կողմը փաստորեն խափանում է համաձայնության հասնելու սովետական պատվիրակության բոլոր փորձերը։ Այնուամենայնիվ, անհրաժեշտ է նշել, որ բանակցությունների շնորհիվ 1970 թվականի վերջերին ՍՍՀՄ և ՉԺՀ միջև տեղի ունեցավ դեսպանների փոխանակում։ Զգալի ընդմիջումից հետո ստորագրվեցին առևտրական համաձայնագրեր, սակայն դրանք չեն կարող համեմատվել երկու երկրների միջև ամենաակտիվ առևտրի՝ 1959 թվականի մակարդակի հետ։ Դրանք, իհարկե, օգտակար քայլեր են։ «Մենք պատրաստ ենք,— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— այսուհետև ևս գործելու նույն ուղղությամբ»։

Այդ ամենի հետ միասին չի կարելի չնշել, որ թե՛ վերջին տարիներին, թե՛ այժմ Չինաստանի պաշտոնական պրոպագանդայում և քաղաքականության մեջ շարունակվում է հակասովետական, հակասոցիալիստական կուրսը, ընդ որում, 1969 թվականին կայացած ՉԿԿ իններորդ համագումարն իր որոշումներում վավերացրեց թշնամական քաղաքականությունը Սովետական Միության և ՍՄԿԿ նկատմամբ։

Ղեկավարվելով սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, հակաիմպերիալիստական բոլոր ուժերի բարձրագույն շահերով, ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը, ինչպես ընդգծվեց կուսակցության Կենտկոմի 1971 թվականի նոյեմբերյան պլենումի որոշման մեջ, հանդես են գալիս ՍՍՀՄ և ՉԺՀ հարաբերությունները նորմալացնելու օգտին։ Սակայն հնարավոր է լուրջ արդյունքի հասնել միայն երկուստեք ձգտման դեպքում։ Վճռականորեն դեն նետելով ՍՄԿԿ և սովետական պետության քաղաքականության վերաբերյալ Պեկինից տարածվող և չին ժողովրդին ներշնչվող զրպարտչական հերյուրանքները՝ մենք եղել ենք և ելնում ենք այն բանից, որ երկու երկրների արմատական, տևական շահերը համընկնում են։ Մեր կուսակցությունն իրենից կախ-



ված ամեն ինչ անում է սովետա-չինական միջպետական հարաբերությունների նորմալացման համար։

«Ինչ վերաբերում է ՉԺՀ-ի հետ մեր հարաբերություններին,— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ արհմիությունների XV համագումարում ունեցած իր ելույթում,— ապա մեր կուսակցության և սովետական պետության սկզբունքային դիրքորոշումը պարզորոշ արտահայտված է ՍՄԿԿ XXIV համագումարի փաստաթղթերում։ Համագումարի բանաձևում նշված է, որ մեր կուսակցությունը կանգնած է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքները հետևողականորեն պաշտպանելու, համաշխարհային կոմունիստական շարժման իրադրությունն ըստ ամենայնի ամրապնդելու, սոցիալիստական հայրենիքի շահերը պաշտպանելու դիրքերում։ Միևնույն ժամանակ, մեր կուսակցությունը հանդես է գալիս ՍՍՀՄ և ՉԺՀ հարաբերությունները նորմալացնելու, սովետական և չին ժողովուրդների բարի-դրացիությունն ու բարեկամությունը վերականգնելու օգտին»։

Անհեթեթ ու վնասակար է երկպառակություն սերմանել Չինաստանի և ՍՍՀՄ միջև։ Չէ՞ որ դա տեղի է ունենում այնպիսի իրադրության պայմաններում, երբ համաշխարհային ռեակցիան ակտիվացնում է իր ագրեսիվ գործողություններն ազատասեր ժողովուրդների դեմ։ Արդի իրադրությունը, ավելի քան երբևէ, բոլոր հեղափոխական, հակաիմպերիալիստական ուժերից պահանջում է միասնություն և համատեղ գործողություններ։ Սակայն Պեկինի պարագլուխների հայտարարությունները և պրակտիկ գործողությունները վկայում են, որ նրանք փաստորեն չեն հրաժարվում մարքսիզմ-լենինիզմի հետ անհամատեղ, հակասովետական իրենց հին դրույթներից, որոնք հավանություն էին գտել և վավերացվել ՉԿԿ IX համագումարում, ՉԿԿ Կենտկոմի երկրորդ պլենումում։ Կոչ անելով «վճռականորեն իրագործել կուսակցության IX համագումարի, Կենտկոմի I և II պլենումների առաջադրած մարտական խնդիրները», Պեկինի պարագլուխները հռչակում են. «Մեր կուսակցության և կառավարության քաղաքականությունը մնում է անփոփոխ» («Ժեն-մին Ժիբաո», 1-ը օգոստոսի, 1971 թվական)։

Այսպիսով, պարզ է դառնում, որ խոսքը վերաբերում է միայն տակտիկական նոր ձևերի ու մեթոդների, կոչերի և ձևակերպումների հռչակմանը, որ բոլորովին չի նշանակում հրաժարվել չինական ղեկավարության ստրատեգիական հին նպատակներից. ըստ դրանց Չինաստանը, վարելով մեծապետական, շովինիստական կուրս, ձգտում է համաշխարհային տիրապետության։

Այդ նպատակին հասնելու համար Չինաստանի ղեկավարությունն օգտագործում է մի շարք հանգամանքներ։ Մաոյին և նրա շրջապատին հաջողվեց ռազմա-վարչական միջոցներով ինչ-որ չափով կայունացնել երկրի քաղաքական ու տնտեսական դրությունը, մասամբ վերականգնել ժողովրդական տնտեսությունը։ Դա չինական ղեկավարությանը հնարավորություն է ընձեռել ավելի ճկուն գիծ վարելու և մանևրելու միջազգային գործերում։ Այնուհետև բռնի կերպով չին ժողովրդի վզին փաթաթելով, այսպես կոչված՝ «Մաոյի գաղափարները», այդ ռեակցիոն-ուտոպիստական, մանր-բուրժուական նացիոնալիստական կոնցեպցիան, Պեկինի պարագլուխներն աղմկում են այն մասին, որ այդ «ուսմունքը» տարբերվում է և՛ իմպերիալիստական, և՛ «ռեվիզիոնիստական» գաղափարախոսություններից ու «սեփական» ուղի ապահովում երկրի զարգացման ասպարեզում։ Այդ հանգամանքը մանրբուրժուական որոշ խավերում կարող է համակրանք առաջացնել «ամենազոր» Մաոյի նկատմամբ։

Վերջին ժամանակներս աֆրիկյան հասարակայնության ուշադրությունը գրավում է Պեկինի ակտիվացումն աֆրիկյան աշխարհամասի տարբեր երկրներում։ Չնայած սեփական ռեսուրսների սահմանափակությանը, պեկինյան ղեկավարությունը վարկեր է խոստանում աֆրիկյան մայրցամաքի պետություններին։ Մի երկրում նա պայքարում է արդյունաբերական նախագծերի իրականացման համար, մի ուրիշի փոխառություն է տալիս, երրորդի համար մասնագետներ է ուղարկում։ Կարճ ասած, պեկինյան ղեկավարությունն անում է ամեն ինչ, որպեսզի երաշխավորի իրեն որպես զարգացող երկրների բարե-

կամ, իսկ Միավորված ազգերի կազմակերպությունում շտապեց հայտարարել,
թե ինքը, այսպես կոչված՝ «երրորդ աշխարհի» շահերի արտահայտիչն է։
Շաղակրատելով աֆրիկյան ժողովուրդների ազգային-ազատագրական
պայքարին աջակցելու առթիվ, պեկինյան ղեկավարներն ամեն հնարավոր
քան անում են, որպեսզի թաքցնեն իրենց տնտեսական համագործակցությու-
նըն աֆրիկյան մայրցամաքի ռեակցիոն ռեժիմների հետ։ Անհասկանալի է, թե
ինչու է ՉԺՀ հաշտվում իր տերիտորիայի վրա Հոնկոնգի և Մակաոյի օտար-
երկրյա գաղութային տիրությունների գոյության հետ։ Այդ տերիտորիաներով
Պեկինը աշխույժ և խոշոր առևտուր է անում Պորտուգալիայի, Ռոդեզիայի և
Հարավ-Աֆրիկյան Հանրապետության անհանդուրժելի ռեժիմների հետ, ըստ
որում՝ ո՛չ միայն սպառողական ապրանքներով, այլև զենքով։
Այդ բոլորն արվում է ՄԱԿ-ի հայտնի որոշումներին հակառակ, որոշում-
ներ, ուր բոլոր պետություններին խորհուրդ է տրվում դադարեցնելու առևտու-
րը ռասիստների հետ։ Այդպիսով, չինական ղեկավարությունն աջակցություն
է ցույց տալիս Աֆրիկայի ռասիստական ռեժիմներին, աշխույժ առևտուր անե-
լով Հարավ-Աֆրիկյան Հանրապետության և Ռոդեզիայի հետ։ Ինչպես այս
տարվա հունվարի 24-ին նշել է նիգերիական «Սանդի պոստ» թերթը, Պեկինն
այնտեղից ձեռք է բերում, մասնավորապես, քրոմ և նիկել, որոնք անհրա-
ժեշտ են սպառազինության արտադրության համար, ինչպես նաև ոսկի, որն
այնուհետև սպեկուլյատիվ գներով վերավաճառում է Տաիլանդի, Պակիստա-
նի և ասիական այլ երկրների սև շուկաներում։ Խոսքով հավաստիացնելով
աֆրիկյան երկրների նկատմամբ իր բարեկամության մասին, Պեկինը գործ-
նականում հանդես է գալիս նրանց կատաղի թշնամիներին՝ հարավ-աֆրիկյան
և ռոդեզիական ռասիստներին օժանդակողի դերում։ Իսկ սենեգալյան «Աֆրիկ
նուվել» շաբաթաթերթը գրում է. իրենց քայքայիչ գործունեությամբ, որը
ծավալվել էր դեռևս մինչև «կուլտուրական հեղափոխությունը», մաոիստները
Նիգերիայում, Թունիսում, Քենիայում, Եթովպիայում և աֆրիկյան մյուս եր-
կրներում աննախանձելի համբավ են նվաճել։
Հնդկա-պակիստանյան կոնֆլիկտի ժամանակ Պեկինի և Վաշինգտոնի
համերաշխությունը հատկապես սթափեցնող ազդեցություն թողեց նրանց վրա,
համերաշխությունը հատկապես սթափեցնող ազդեցություն թողեց նրանց վրա,
ովքեր արդար յուղի տեղ ընդունեցին մաոիստների լոզունգները՝ ճնշված ժո-
ղովուրդների Չինաստանի կարծեցյալ աջակցության մասին, կոնֆլիկտ, որի
ժամանակ մաոիստները ըստ էության դավաճանեցին Բանգլադեշի միլիոնա-
վոր բնակիչների։
Պեկինի տեսաբաններն ու պրակտիկները ձգտում են սեպ խրել ազգային
ազատագրական շարժման և սոցիալիստական համագործակցության երկրնե-
րի միջև, մեկուսացնել Աֆրիկայի ազգային-դեմոկրատական հեղափոխու-
թյունները սոցիալիստական համագործակցության երկրներից։
Պեկինի ինտրիգները «խանգարում են իմպերիալիզմի դեմ մեր պայքարին.
նրանք ո՛չ միայն չեն աջակցում մեր պայքարին, այլ, ընդհակառակը, դժվա-
րացնում են այն, փաստորեն օգնում են թշնամուն ու խրախուսում նրան...»,
— հայտարարեց Հարավ-Աֆրիկյան կոմունիստական կուսակցության նախա-
գահ Ջ. Բ. Մարքսը։
Չինական ղեկավարությունը ՉԿԿ IX համագումարում 1969 թվականի
ապրիլին ձևակերպեց այն դրույթները, որոնց հիման վրա կառուցվում է
Պեկինի արտաքին քաղաքականությունը։ Այդ դրույթների ուսումնասիրությունն
ամբողջովին մատնում է չինական ղեկավարների ներքին և արտաքին քաղա-
քականության հակալենինյան էությունը։ Մաոիստները հնարել են «երկու գեր-
տերությունների» կոնցեպցիան, որով ճգնում են «հիմնավորել» ժողովուրդ-
ների պայքարը ո՛չ միայն ամերիկյան իմպերիալիզմի, այլ նաև Սովետական
Միության դեմ։ Ուստի, Պեկինի պարագլուխները ձգտում են գաղափարապես
հիմնավորել Չինաստանի առանձնահատուկ դերն ու նշանակությունը «աշ-
խարհի ժողովուրդների» հակաիմպերիալիստական և «հակառևիզիոնիստա-
կան» պայքարում։
Կիրառելով ոչ-դասակարգային մոտեցում միջազգային քաղաքականու-



թյան մեջ, միատեսակ գնահատելով ամերիկյան իմպերիալիզմին և ժողո-
վուրդների ամենաանկեղծ բարեկամ Սովետական Միությանը (ինչպես հայտ-
նի է, Պեկինի պարագլուխները «ռևիզիոնիստներ» անվան տակ նկատի ունեն
ՍՄԿԿ և եղբայրական մյուս կուսակցությունները), Մաոն և նրա համախոհ-
ները խեղաթյուրում են փաստերը, ամեն ինչ հարմարեցնելով Չինաստանի
մեծապետական շահերին։
Կարճ ասած, Պեկինը ձգտում է իր գերիշխանությամբ ստեղծել հակա-
սովետական խմբավորում, որն ուղղված է նաև սոցիալիստական մյուս պե-
տությունների, կոմունիստական կուսակցությունների դեմ։
Մարքսիստական-լենինյան կուսակցությունները գտնում են, որ չի կա-
րելի հանդուրժել Պեկինի ղեկավարների պառակտիչ քաղաքականությունը, որ
նրա նկատմամբ «չեզոքություն», զիջումների դիրքավորումը չի համապա-
տասխանում պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին և բար-
դացնում է իմպերիալիզմի դեմ մղվող պայքարը։ Սոցիալիզմի, խաղաղու-
թյան և ազգային անկախության շահերը պահանջում են սկզբունքային անզի-
ջում պայքար մղել չինական ղեկավարների պառակտիչ, հակասոցիալիստա-
կան քաղաքականության դեմ։
Ինչպես հաղորդվում է արտասահմանյան մամուլի էջերում, չինական
ղեկավարության կազմում այժմ տեղի է ունենում լուրջ ճգնաժամ։ Մինչդեռ,
մաոական քաղաքական կուրսի հետ կապված ճգնաժամի արմատական պատ-
ճառները վերացված չեն։ Այդ հանգամանքը չի կարելի ուշադրության չառնել
Պեկինի ներկայիս իրադարձություններն ու Չինաստանի ողջ իրադրության
զարգացումը գնահատելիս։
Պեկինի վերնախավում վերջերս կատարված վերադասավորումը, որը
ցույց տվեց մաոական ղեկավարության ներքին թուլությունը, նրա անկայու-
նությունը, երկրում լարված իրադրության պահպանումը, չինական մամուլը
հրամցնում է որպես «Մաո Ցզե-դունի գծի հերթական հաղթանակ»։ Ընդսմին,
առանձնահատուկ շեշտը դրվում է կուսակցության մեջ մաոիզմի գաղափար-
ների հետագա արմատավորման անհրաժեշտության վրա։
Երկպառակտչական պայքարի հետևանքով ՉԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի
21 անդամներից, որ ՉԿԿ IX համագումարում կազմվել էր ընդամենը երեք տարի
առաջ, քաղաքական ասպարեզում մնացել են ընդամենը 7—8 հոգի։ Արտա-
սահմանյան մամուլը, վկայակոչելով Պեկինի աղբյուրները, վերջերս գրում էր,
որ ՉԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի առնվազն 6 անդամ մեղադրվել են դավա-
դրություններ նախապատրաստելու մեջ։ Քաղբյուրոյի մշտական կոմիտեում,
որը 1966 թվականին կազմված էր 11 անդամից, իսկ ՉԿԿ IX համագումարից
հետո՝ 5, ներկայումս, փաստորեն, գործում են ընդամենը երկուսը՝ Մաո Ցզե-
դունը և Չժոու Էն-լայը։
Ըստ մամուլի հաղորդագրությունների, Մաո Ցզե-դունի խումբը, որը
հաղթանակ է տարել երկպառակտչական պայքարի հերթական տուրում, փոր-
ձում է վերստին ղեկավար օղակը «վերակառուցել» իր համախոհների հաշվին։
Բացի այդ, Պեկինի ղեկավարությանը կից կազմվել է «Լին Բյաոյի գործով
զբաղվող հատուկ խումբ», որին հանձնարարվել է կազմել «սև ցուցակներ» և
անցկացնել մասսայական նոր զտումներ, տարածվում է այդ խմբի նախա-
պատրաստած փաստաթուղթը «Լին Բյաոյի տասը ծանր հանցագործություն-
ների» մասին։ Մաո Ցզե-դունի երեկվա «ժառանգորդը» մեղադրվում է «զին-
վորական հեղաշրջում կազմակերպելու փորձի, կլիկների ստեղծման, դավա-
ճանների հետ կապերի» և այլ հանցագործությունների մեջ։
«Անպետքին հեռացնելու» լոզունգի ներքո անցկացվող մասսայական
զտումների ալիքը Պեկինից տարածվեց մյուս քաղաքներն ու նահանգները։
Չինական մամուլը հաղորդում է այդ զտումների տարբեր ձևերի մասին։ Շան-
հայում, օրինակ, դրանք անց են կացվում որպես «իշխանության մարմիննե-
րին աջակցելու» կամպանիա, Տյանցզինում՝ «բուրժուական դավադիրների
դեմ պայքարի» լոզունգի ներքո, Նանկինում՝ «թշնամական հայացքների թույ-
նի ազդեցությունը վճռականորեն վերացնելու» անհրաժեշտության պատրվա-

կով և այլն: Այդ զտումներն արդարացնելու համար «Խունցի» հանդեսը
հայտարարեց, որ ՉԿԿ անաղարտությունը «հարաբերական հասկացողություն
է, իսկ անմաքրությունը՝ բացարձակ» և երկրում «կուլտուրական նոր հեղա-
փոխություն» անցկացնելու կոչ արեց:
Պեկինի ղեկավարությանը մոտ կանգնած իրազեկ շրջաններում պնդում
են, որ «զտումներից» վախեցող շատ անձնավորություններ փորձում են անլե-
գալ կերպով հեռանալ երկրից: Այսպես, սեպտեմբերի վերջին ՉԺՀ իշխանու-
թյունները, համաձայն արտասահմանյան գործակալությունների հաղորդագրու-
թյունների, ձերբակալել են մոտ 20 «բարձրաստիճան սպաների», որոնք մտա-
դիր էին գաղտնի անցնել Հոնկոնգ: Մի փոքր ավելի ուշ, հոկտեմբերին,
արտասահման փախչելու փորձի մեջ մեղադրվեցին ևս մի խումբ աչքի ընկ-
նող զինվորականներ: Ձերբակալվածներն անհապաղ կանգնում են տրիբու-
նալների առջև և սովորաբար դատապարտվում մահապատժի: Այդպիսի մա-
հապատիժներ, ինչպես հաղորդվում է, արդեն կատարվել են երկրի մի շարք
քաղաքներում:
Մասսայական զտումներն ու ձերբակալությունները երկրում ուղեկցվում
են հակասովետիզմի ուժեղացմամբ: Այն պրիզմը, որը կիրառում է Մաոյի
խումբը, դժվար չէ ճանաչել. հենց որ երկրում առաջ են գալիս ներքին դժվա-
րություններ, տարաձայնություններ ղեկավարությունում, անմիջապես, նոր
ուժով է բարձրանում հակասովետիզմի ալիքը: Բնակչությանն անդուլ կերպով
ներշնչում են այն միտքը, թե վտանգը հյուսիսից է, վտանգ, որն իբր կախ-
ված է Չինաստանի վրա. թերթերի էջերում երևում են «պատերազմին պատ-
րաստվելու» կոչեր և այլն:
Պեկինի ներկայիս ղեկավարությունը, ուր գլխավոր դեր է խաղում կուլ-
տուրական հեղափոխության ընթացքում ստեղծված հակասովետական խըմ-
բավորումը, փորձում է երկրում վերստին ստեղծել ռազմական պսիխոզի
մթնոլորտ և այդ ճանապարհով ժողովրդի ուշադրությունը շեղել սոցիալական
ու տնտեսական սուր պրոբլեմներից:
Պեկինի ղեկավարները երես առ երես մնալով մառական քաղաքական
կուրսի խոր ու սուր ճգնաժամի առջև, ավելի ու ավելի խոր են ընկղմվում
հակասովետիզմի ու հակակոմունիզմի ճահիճը:
Այս օրերին ամբողջ աշխարհում շարունակում են մեկնաբանել ԱՄՆ-ի
պրեզիդենտ Ռ. Նիքսոնի Չինաստան կատարած այցի արդյունքները: Ասոշիեյ-
տեդ պրես հեռագրական գործակալության թղթակիցը մարտի 1-ին Վաշինգ-
տոնից հաղորդում էր «կառավարության իրազեկ ներկայացուցչի» կարծիքն
այն մասին, որ «ԱՄՆ-ը այսուհետև հաջողությամբ կարող է միմյանց դեմ
հրահրել Մոսկվային և Պեկինին»: ԱՄՆ-ում և Չինաստանում խոսում են
այն մասին, որ Նիքսոնը և Չժոու Էն-լայը բանակցությունների միջոցով «փո-
խեցին աշխարհը»: Եթե այդպես է, ապա այսուհետև ինչպե՞ս հասկանանք
Պեկինի պարագլուխների «տեսությունը» «գերհզոր տերությունների» մասին:
Արդարությունը պահանջում է ասել, որ Նիքսոնն ավելի մեղմ ու զսպված
է գնահատում իր այցի արդյունքները: Էնդրյուս օդանավակայանում արտա-
սանած ճառում նա ասաց. «Մենք սկսեցինք կամրջի կառուցման երկարատև
պրոցեսը, կամուրջ, որը դրվում է 12 հազար մղոն լայնությամբ ծովածոցի
և 22 տարվա թշնամության վրայով»: Իսկ ԱՄՆ պետական քարտուղարի նախ-
կին տեղակալ, արտաքին քաղաքական պրոբլեմների հմուտ գիտակ Ջորջ Բոլը
սրամտորեն նշեց, որ «դեռևս երբեք պատմության մեջ այդքան շատ մարդիկ,
այդպիսի մեծ ջանքեր չեն գործադրել այսպիսի չնչին արդյունքի հասնելու
համար»:
Չնայած որ չին-ամերիկյան կոմյունիկեի հրապարակված տեքստը նման-
վում է սառցասարի, որի մեծ մասը ջրի մեջ է ու չի երևում, այնուամենայնիվ,
պարզ է, որ Պեկինն ու Վաշինգտոնն իրենց քաղաքականությունն ուղղում են
սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, ազգային-ազատագրական շարժում-
ների դեմ:
Ամերիկյան շատ թերթեր հրապարակել են Վաշինգտոնից տրված միև-



նույն հաղորդագրությունը, ուր, վկայակոչելով «կառավարության միանգամայն
իրազեկ ներկայացուցչի» հայտարարությունը, բերվում են որոշ տվյալներ,
որոնք բացահայտում են չինական ղեկավարության հետ Ռ. Նիքսոնի բանակ-
ցությունների՝ ամերիկյան տեսակետից ձեռնտու մանրամասնությունները:
Այն փաստը, որ տարբեր թերթեր հրապարակել են պաշտոնական աղբյուրից
բխող հենց նույն հաղորդագրությունը, տեղական դիտորդները գնահատել են
այդ այցի լուսաբանման նկատմամբ գրաքննություն կիրառելու կառավարու-
թյան ձգտում և մամուլին տրամադրել են լոկ այն, ինչն ինքն օգտակար է
համարում:
«Վաշինգտոն-պոստ» թերթը հայտարարել է. «Ամերիկացիներին քաջա-
լերեց այն փաստը, որ Չժոու Էն-լայը կոմյունիկեն ստորագրեց այն պահին,
երբ Միացյալ Նահանգները պատերազմի մեջ էին Հյուսիսային Վիետնամի հետ
և շարունակ ռմբակոծում էին այդ երկիրը»:
«Կառավարության պաշտոնական անձը» ամերիկյան մամուլի ուշադրու-
թյունը հրավիրել է նաև այն բանի վրա, որ «Տայվանի, Վիետնամի և մյուս
նուրբ պրոբլեմների վերաբերյալ հայտարարությունները չին-ամերիկյան կո-
մյունիկեում թեպետև ներկայացված են որպես յուրաքանչյուր կողմի առան-
ձին դեկլարացիաներ, փաստորեն ենթարկվել են ամենախնամքով քննարկ-
ման»: Այս պարագան, գրում է «Նյու-Յորք թայմս» թերթը, հիմք է տալիս են-
թադրելու, որ չինական առաջնորդները բավական հեռու են գնացել, համե-
նայն դեպս, ավելի հեռու, քան երբևէ, պրեզիդենտ Նիքսոնին հավաստիացնե-
լով, որ իրենք մտադրություն չունեն ուժ գործադրելու Տայվանի «ազատա-
գրման» համար: Հենց այդ հեռանկարը «նկատի ունենալով, հայտարարել է
հիշյալ «կառավարական ներկայացուցիչը», Նիքսոնն այնուհետև խոստացավ
որպես իր «վերջնական նպատակ» ամերիկյան զորքերը դուրս բերել Տայվա-
նից և այնտեղ լուծարքի ենթարկել ամերիկյան ռազմական կառույցները»:
Ռ. Նիքսոնի այցի արդյունքների պաշտպանությամբ հանդես է եկել նաև
ամերիկյան ծայրահեղական ուժերի հայտնի ներկայացուցիչ, սենատոր Գոլ-
դուոտերը:
Փաստերը ցույց են տալիս, որ չինական ղեկավարության քաղաքական,
գաղափարական ու դիվանագիտական պայքարի նոր ժամանակաշրջանն իր
նպատակներով ու էությամբ չի տարբերվում «կուլտուրական հեղափոխու-
թյան» հետ կապված Պեկինի պարագլուխների նախկին քաղաքականությունից:
Փոխվեցին, որոշ դեպքերում՝ զգալիորեն, միայն պայքարի ձևերը, մեթոդներն
ու տակտիկան: Դրանք այժմ ավելի ճկուն են, խորամանկ ու քողարկված,
ավելի նենգ ու վտանգավոր հեղափոխական շարժման համար:
Մերկացնել Պեկինի պարագլուխների այդ կուրսը՝ նշանակում է նպաստել
հակաիմպերիալիստական պայքարի հաջողությանը, խաղաղության, դեմո-
կրատիայի, սոցիալիզմի շահերին:

Ս. Կ. ՊԱՊՅԱՆ

## ՔՈՒՐԴ ԺՈՂՈՎՐԴԻ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀՌՉԱԿՈՒՄԸ ԻՐԱՔՈՒՄ

1970 թվականի մարտի 11-ին Իրաքում տեղի ունեցավ, հիրավի, պատմական նշանակություն ունեցող մի իրադարձություն: Այդ օրը հրապարակվեց Իրաքի կառավարության հայտարարությունը Իրաքի սահմաններում քուրդ ժողովրդի ազգային ինքնավարության հռչակման վերաբերյալ:

Քրդական ազգային պրոբլեմն Իրաքում նոր չէ: Այն գոյություն ունի իրաքյան պետության ստեղծման պահից: Օսմանյան դժնդակ լուծը թոթափելուց հետո ո՛չ արաբները, և ոչ էլ, մանավանդ, քրդերը չկարողացան օգտվել իրենց երկարամյա պայքարի պտուղներից: 1921 թ. Իրաքում հաստատված հաշիմյան միապետական ռեժիմը, ընդհուպ մինչև 1958 թ. հեղափոխությունը, հլու-հնազանդ ծառայում էր անգլիական իմպերիալիզմին: Տնտեսական անըսպառ ռեսուրսներ ունեցող Իրաքում բնակչության կենսամակարդակը ծայրաստիճան ցածր էր: Երկրի տնտեսական վիճակի բարելավման, քաղաքական տարրական ազատությունների նվաճման համար հայրենասիրական ուժերի մղած պայքարը ճնշվում էր անողոք դաժանությամբ: Արյան մեջ խեղդվեցին ազգային իրավունքների համար պայքարող քրդերի բազմաթիվ ելույթները:

Մարտի 11-ի համաձայնագրի գլխավոր էությունն այն է, որ իրաքյան պետության սահմաններում ճանաչվում է երկու միլիոնանոց քուրդ ժողովրդի ազգային ավտոնոմիան: Հարկ է նշել, որ քուրդ ժողովուրդն այդ իրավունքը ձեռք բերեց մեծ զոհողությունների գնով ու համառ պայքարից հետո:

Իրաքի պրեզիդենտ Ահմեդ Հասան Բաքրի հրապարակած փաստաթուղթը նախատեսում է քրդերի ազգային ավտոնոմիան իրականացնել քրդական բնակչությանը վերապահելով մի շարք իրավա-կուլտուրական ու վարչատնտեսական քաղաքացիական իրավասություններ: Իրաքյան հանրապետությունում պաշտոնապես հռչակված է քրդերի ազգային իրավահավասարությունը արաբների հետ: Քրդստանում քրդերենը հայտարարված է պաշտոնական լեզու: Ըստ մարտի 11-ի դեկլարացիայի՝ երկրի պետական կառավարման օրգաններում քրդերը պետք է ներկայացված լինեն ըստ իրենց թվի: Մի շարք կարևորագույն միջոցառումներ են նախատեսված Քրդստանի տնտեսական և մշակութային զարգացման համար. ավելացվելու է դպրոցների և բուժհիմնարկների թիվը: Կառավարությունը պարտավորվել է վերականգնել պատերազմի ընթացքում ավերված քրդական բնակավայրերը, ինչպես նաև փոխհա-



տուցում վճարել տուժած բնակչությանը, պետական նպաստ՝ պատերազմում զոհված քրդերի ընտանիքներին:

Մարտի 11-ի համաձայնագիրը ջերմ ընդունելություն գտավ Իրաքի ժողովրդական լայն խավերի կողմից: Բնորոշ է, որ Իրաքի ժողովուրդը երբեք որ շարունակ տոնում էր ներքին խաղաղության հաստատման բաղձալի իրադարձությունը: Ո՛չ միայն Քրդստանում, այլև Իրաքի միջին և հարավային շըրջաններում տեղի էին ունենում ժողովրդական տոնախմբություններ:

Համաձայնագիրը, բնականաբար, չէր կարող ընդգրկել քրդերի ազգային ավտոնոմիայի վերաբերյալ բոլոր հարցերը: Նրանում տեղ են գտել առավել խոշոր, սկզբունքային նշանակություն ունեցող խնդիրներ: Քրդերի ազգային ինքնավարության իրականացման համար ստեղծված է հատուկ կոմիտե: Նրա նախագահն է ԲԱԱՍ կուսակցության ղեկավարության անդամ, երիտասարդ, ազդեցիկ քաղաքական գործիչ Մուրթադա ալ Հադիսին: Վերջինիս ղեկավարած «Հյուսիսի խաղաղության կոմիտեն» մշտական կապի մեջ է քրդական դեմոկրատական կուսակցության լիդերների հետ և պրակտիկորեն լուծում է ինքնավարության իրականացման խնդիրը: Առաջին քայլերն արդեն արված են, ՔԴԿ-ն պաշտոնապես քաղաքական ուժ է ճանաչվել. Իրաքի կառավարության կազմում հինգ քուրդ մինիստր կա:

1970 թ. ապրիլի սկզբներին Գալալա[illegible] քաղաքում տեղի ունեցավ ՔԴԿ Կենտկոմի պլենումը: Այն հավանություն տվեց կուսակցության պրակտիկ քայլերին՝ ԲԱԱՍ-ի հետ համագործակցելու քաղաքականությանը: Նույն թվականի հունիսին հրավիրվեց ՔԴԿ հերթական ութերորդ համագումարը, որը, ի թիվս այլ հարցերի, քննարկեց քրդական ինքնավարության հարցը և որոշեց ջանք չխնայել մարտի 11-ի համաձայնագրի իրականացման համար:

Քրդական դեմոկրատական կուսակցությունն իր ողջ գործունեությունն ուղղում է մարտի 11-ի համաձայնագրի հետևողական կենսագործմանը, դա համարելով երկրի տնտեսական ու քաղաքական զարգացման կարևորագույն նախապայման: Քրդերի ազգային ինքնավարությունը տնտեսական ու քաղաքական բազում հարցեր է պարունակում: Հայտնի է, որ ազգային ինքնավարության համար մղվող պայքարի հիմնական շարժիչ ուժը քուրդ գյուղացիությունն է: Այս հանգամանքը չէր կարող իր կնիքը չդնել նախատեսված մի շարք միջոցառումների բնույթի վրա: Ուշագրավ է, այս տեսակետից, ագրարային արմատական վերափոխումների հարցի առաջքաշումը:

Դրանց նպատակն է ֆեոդալական հարաբերությունների մնացուկների վերացումը, գյուղացիության պահանջների բավարարումը: Հայտնի է, որ դեռևս Քասեմի կառավարման ժամանակաշրջանում, կոմկուսի հետ մեկտեղ, ՔԴԿ հանդես էր գալիս ագրարային վերափոխումների օրենքին առավել ռադիկալ բնույթ տալու օգտին: Բացի այդ ՔԴԿ ագրարային հիմնական պահանջներից մեկը Քրդստանի առանձնահատկությունները հաշվի առնելն էր: Հողատերերին թողնվելիք հողերի առավել բարձր չափի պատճառով օրենքը շատ հողատերերի վրա չէր տարածվում, և գյուղացիները հող չէին ստանում:

Հաշվի առնելով ագրարային հարցի հրատապությունը և քրդական ազգային դեմոկրատական պայքարի հիմնական շարժիչ ուժի՝ գյուղացիության պահանջների բարելավման խնդրի լուծումը, որոշվեց, որ համաիրաքյան ագրարային ռեֆորմի մինիստրության հետ մեկտեղ Քրդստանում ստեղծվի նաև ագրարային վերափոխումներն իրագործող հանձնաժողով: Ագրարային վերա-

փոխումների հարցին անդրադառնալիս Մ. Բարզանին հայտարարեց. «Մենք
լիովին պաշտպանում ենք ագրարային ռեֆորմի օրենքը, որն ուղղված է ֆեո-
դալական շահագործումը վերացնելու նպատակին»: Քրդստանում մարտյան
համաձայնագրին համապատասխան, ստեղծվել է գիտությունների ակադեմիա,
որի պրեզիդենտն է քուրդ հայտնի ճարտարապետ, պրոֆեսոր Իհսան Շերզադը:
Արդեն չորս տարի է ինչ Սուլեյմանիում գործում է քրդական համալսարան:
Քրդստանում և Բաղդադում հրատարակվում են մեկ տասնյակի հասնող
քրդական թերթեր և ամսագրեր: Բաղդադում լույս է տեսնում քրդական «Աթ
թաախի» («Եղբայրություն») թերթը՝ շուրջ 26 հազար տպաքանակով: Թերթը
հանդես է գալիս հանուն քրդերի և արաբների բարեկամության ամրապնդ-
ման: Հիշարժան է այն փաստը, որ այժմ, բացի այն, որ Քրդստանի դպրոց-
ներում դասավանդումը տարվում է քրդերեն, Իրաքի արաբական շրջանների
դպրոցներում քրդերենն անցնում են որպես երկրորդ պաշտոնական լեզու:

Քրդական պրոբլեմը խաղաղ ճանապարհով կարգավորելու գործում մեծ
երախտիք ունի Իրաքի կոմունիստական կուսակցությունը, որը միշտ պայքա-
րել է քրդերի ազգային ինքնավարության, նրանց բոլոր իրավունքները իրաք-
յան պետության սահմաններում ճանաչելու համար: Ազգային ներքին ինքնա-
վարության սկզբունքը կոմկուսը մշտապես առաջ է քաշել որպես քրդական
պրոբլեմի լուծման միակ ճիշտ ճանապարհ: Նրա կողմից քրդերի ազգային
իրավունքների ճանաչումը դիտվել է իբրև առաջնահերթ քաղաքական խնդիր,
երկրի ներքաղաքական իրադրության կարգավորման կարևորագույն նախա-
պայման: Իրաքի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ազիզ Մուհամեդը
մարտյան համաձայնագրի առթիվ հայտարարեց. «Քրդական պրոբլեմի խա-
ղաղ և դեմոկրատական կարգավորման մասին համաձայնագիրը Իրաքի բոլոր
առաջադեմ ուժերի հաղթանակն է: Միաժամանակ դա միջազգային դեմոկրա-
տական և առաջադիմական շարժման մեծ հաջողությունն է»: Եվ իրոք, ո՛չ
միայն Իրաքի, այլև արաբական մյուս երկրների առաջադեմ հասարակայնու-
թյունն իր գոհունակությունը հայտնեց հիշյալ համաձայնագրի առթիվ:

Անտարակույս, մարտի 11-ի համաձայնագրի կնքումը և Իրաքի կառավա-
րության հայտարարությունը դրական լուրջ քայլ են և արժանի պատշան
դրվատանքի: Սակայն հապճեպություն կլիներ կարծել, թե դա նշանակում է
պրոբլեմի վերջնական լուծում: Այնպիսի բարդ և կնճռոտ հարցի կարգավո-
րումը, ինչպիսին ազգայինն է, կապված է որոշակի դժվարությունների
հետ: Չպետք է մոռանալ, որ Իրաքում, ինչպես նաև նրա սահմաններից
դուրս, դեռևս կան և գործում են այն ուժերը, որոնք ամեն կերպ աշխատում
են խափանել վերը նշված համաձայնագրի սկզբունքների իրագործումը:

Այս տեսակետից ուշագրավ են հաղորդումներն այն մասին, որ Իրաքի
սահմաններից դուրս կազմակերպվում և իրաքյան Քրդստան են ուղարկվում
առանձին տեռորիստական անարեկիչ խմբեր, որոնց առջև խնդիր է դրված՝
ամեն կերպ խափանել փոխադարձ վստահության մթնոլորտի ստեղծումն
արաբների և քրդերի միջև, արգելակել երկրի ներքաղաքական իրավիճակի
կայունացումը: Դժվար չէ նկատել, որ այս կարգի քայքայիչ գործունեության
ծավալմամբ շահագրգռված են, առաջին հերթին, այն երկրների կառավարող
շրջանները, որոնք իրենց «անմասն չեն համարում քրդական ինքնավարու-
թյան հետևանքներից»: Իրաքի ներքին հետադիմական ուժերի հետ միասին
սրանք բավական մեծ դժվարություններ են հարուցում պրոբլեմի խաղաղ



կարգավորման համար: Այդ ուժերը մահափորձ կազմակերպեցին քրդական
ազգային դեմոկրատական շարժման լիդեր Մուստաֆա Բարզանու դեմ: 1971
թվականի սեպտեմբերի 29-ին Բարզանու դեմ կազմակերպված մահափորձը
լարվածություն ստեղծեց Իրաքում և մասնավորապես իրաքյան Քրդստանում:
Իրաքի կառավարությունը և անձամբ պրեզիդենտ Ահմեդ Հասան Բաքրը պաշ-
տոնապես դատապարտեցին Բարզանու դեմ կազմակերպված մահափորձը:

Այս դեպքերի առթիվ ՔԴԿ հրապարակած հայտարարության մեջ նշվում
էր, որ նման քայլերը անվստահության մթնոլորտ են ստեղծում և արգելք են
հարուցում մարտյան դեկլարացիայի իրագործման ճանապարհին: Քրդական
շարժման ղեկավարները լուրջ մտահոգություն են արտահայտում այն բանի
կապակցությամբ, որ մինչև այժմ դեռևս չի լուծված իրենց հարազատ վայրե-
րից արտաքսված քրդերի վերադարձման պրոբլեմը, ուր բնակեցված են արա-
բական քոչվոր ցեղերը: Փոխադարձ համաձայնության հիման վրա, 1970 թ.
հոկտեմբերին պետք է մարդահամար անցկացվեր պարզելու համար, թե ո՛ր
շրջաններում են քրդերը մեծամասնություն կազմում, որպեսզի դրա հիման
վրա ձեռնարկվեր ինքնավարության մի շարք պահանջների կատարումը:
Սակայն այս գործը ևս առայժմ տեղից չի շարժվում: Վիճաբանության գլխա-
վոր առարկան Կիրկուկի նավթաբեր հարուստ շրջանն է, որը Հարավային
կամ իրաքյան Քրդստանի անբաժան մասն է կազմում:

Մարտի 11-ի դեկլարացիայի դեռևս չիրագործված կարևոր կետերից
մեկը վերաբերում է Իրաքի փոխպրեզիդենտի պոստի համար քրդական ներ-
կայացուցչի առաջադրմանը: Կառավարությունն այն առաջարկում է քրդական
շարժման ներկայացուցիչներին, պայմանով, որ լինելու են միաժամանակ մի
քանի փոխպրեզիդենտներ, որոնցից մեկը պետք է քուրդ լինի: Քրդական
շարժման ներկայացուցիչները գտնում են, որ նման իրադրության մեջ քուրդ
փոխպրեզիդենտը, ըստ էության, չի հանդիսանալու երկրորդ անձնավորու-
թյունը պրեզիդենտից հետո, ինչպես պահանջում է մարտի 11-ի համաձայ-
նագիրը: Քուրդ փոխպրեզիդենտն այս դեպքում իր իրավունքներով նմանվելու
է անպորտֆել մինիստրի: Հարկ է նշել, որ կառավարության կազմի մեջ հինգ
քուրդ մինիստրների գտնվելը ևս լիովին չի բավարարում քրդական շարժման
ղեկավարներին, քանի որ նրանց իրավունքները բավական սահմանափակ են:
Ներկայումս փաստական իշխանությունը գտնվում է, այսպես կոչված՝ «հե-
ղափոխական հրամանատարության խորհրդի» ձեռքում, որը կազմված է
բաասականներից և այնտեղ ոչ մի քուրդ չի ներկայացված:

1971 թ. նոյեմբերի կեսերին Իրաքի պրեզիդենտ Ահմեդ Հասան Բաքրը
հրապարակեց, այսպես կոչված՝ «Իրաքի ազգային խարտիայի» նախագիծը,
որտեղ խոսվում է ազգային առաջադիմական ուժերի համագործակցության
անհրաժեշտության, իմպերիալիզմի և սիոնիզմի դեմ պայքարը շարունակելու,
քրդական ինքնավարության վերաբերյալ համաձայնագրի իրականացման և
սոցիալ-տնտեսական առաջադիմական միջոցառումների իրագործման մասին:
Հարկ է նշել, որ առաջադիմական բնույթի նման ծրագրի առաջքաշումը ին-
քին դրվատանքի արժանի քայլ է: Սակայն նրա վերջնական գնահատականը
կարելի կլինի տալ այն ժամանակ, երբ կսկսվի դրա կոնկրետ իրականացումը:

Որպես արաբ և քուրդ ժողովուրդների իսկական բարեկամներ, սովետա-
կան կառավարությունը և ժողովուրդը մեծ գոհունակությամբ ընդունեցին
Իրաքում եղբայրասպան պատերազմին վերջ տալու և քրդական ազգային

ինքնավարության հռչակման լուրը: Այդ կապակցությամբ Ն. Վ. Պոդգոռնին և Ա. Ն. Կոսիգինը Իրաքի պրեզիդենտին հղած շնորհավորական ուղերձում նշել են. «Մենք համոզված ենք, որ այս կարևոր համաձայնագրի կենսագործումը կնպաստի ազգային միասնության և բարեկամության ամրապնդմանը Իրաքի ժողովուրդների՝ արաբների և քրդերի միջև...

Իրաքում քրդական պրոբլեմի խաղաղ կարգավորումը բարձրացնում է իրաքյան հանրապետության և նրա կառավարության միջազգային հեղինակությունը...»:

Քուրդ ժողովրդի ազգային ինքնավարության խնդրի լուծումը Իրաքի ներքաղաքական դրության կարգավորման ու կայունացման կարևորագույն նախապայմանն է: Դրանում շահագրգռված են երկրի բոլոր առաջադեմ, հայրենասիրական ուժերը: Այդ հարցի լուծման ճանապարհին արված յուրաքանչյուր ողջախոհ քայլ արժանանում է ո՛չ միայն Իրաքի ներքին դեմոկրատական ուժերի, այլև միջազգային առաջադեմ հասարակայնության հավանությանը: Ինչպես միշտ, քուրդ ժողովրդի ազգային իրավունքները պաշտպանելու, Իրաքում ներքին խաղաղություն հաստատելու և դրանով իսկ տնտեսական ու քաղաքական զարգացումն ապահովելու դիրքերում է կանգնած Սովետական Միությունը: Վերջինս հանդես է գալիս որպես քրդական պրոբլեմի խաղաղ և արդարացի կարգավորման պաշտպան ու հավանություն է տալիս այդ ուղղությամբ Իրաքի կառավարության կատարած դրական քայլերին:

ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության հրավերով 1972 թ. փետրվարի 10—17-ը պաշտոնական այցով Սովետական Միությունում էր գտնվում Իրաքի կուսակցական-կառավարական պատվիրակությունը՝ Իրաքի արաբական սոցիալիստական վերածնության (ԲԱԱՍ) ռեգիոնալ ղեկավարության գլխավոր քարտուղարի տեղակալ Սադդամ Հուսեյնի ղեկավարությամբ: Իրաքյան պատվիրակության և սովետական ղեկավարների միջև օգտավետ, բարեկամական բանակցություններ տեղի ունեցան, որոնք նոր ներդրում են սովետա-իրաքյան քաղաքական ու տնտեսական հարաբերությունների զարգացման բնագավառում: Սովետա-իրաքյան համատեղ կոմյունիկեում, ի թիվս այլ հարցերի, շոշափվում են նաև Իրաքում քրդերի ինքնավարության խնդիրները: Նրանում նշվում է, որ իրաքյան կողմը իր պատրաստակամությունն է հայտնում՝ ամրապնդելու Իրաքի ազգային միասնությունը, 1970 թ. մարտի 11-ի դեկլարացիայի սկզբունքների համաձայն քրդական պրոբլեմը խաղաղ, դեմոկրատական ճանապարհով լուծելու միջոցով: Վերջերս ընկ. Ա. Ն. Կոսիգինի ղեկավարած կուսակցական-կառավարական պատվիրակության՝ Իրաք կատարած այցելությունն ավարտվեց սովետա-իրաքյան բարեկամության և փոխօգնության պայմանագրի կնքմամբ: Ընկեր Կոսիգինը Բաղդադում հանդիպումներ ունեցավ նաև ՔԴԿ-ի և կոմկուսի ղեկավարների հետ, որոնք դրական արձագանք գտան Իրաքում:

Իրաքյան հանրապետությունում քրդերի ինքնավարության հռչակումը քրդական ազգային դեմոկրատական ուժերի հաղթանակն է: Այն վկայությունն է նաև Իրաքի ժողովրդի քաղաքական հասունության, նրա դեմոկրատական ուժերի ազդեցության առկայության և, վերջապես, իրաքյան կառավարության ռեալիստական ողջախոհ քաղաքականության: Քրդական ինքնավարության վերաբերյալ համաձայնագրի անշեղ իրագործումը Իրաքի տնտեսական և քաղաքական առաջընթացի կայուն գրավականն է:

Շ. Խ. ՄՀՈՅԻ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՄԲ ԶՈԴՎԱԾ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ*

*Բոլորում է հայ ժողովրդի ազատագրական պայքարի առավել նշանավոր դրվագներից մեկի՝ XVIII դարի 20-ական թվականներին ծավալված տասնամյա հերոսամարտերի 250-ամյակը: 1722 թ. Անդրկովկասի եղբայրական ժողովուրդները, զինված, ոտքի ելան՝ կռվելու իրենց ազատության ու անկախության համար, ընդառաջ գնալով հյուսիսից դեպի Կովկաս արշավող ռուսական զորքերին՝ միավորելու ուժերը և թոթափելու շահական Իրանի դարավոր լուծը:*

*Վ. Մ. Մարտիրոսյանի մենագրությունը նվիրված է այդ ժամանակաշրջանում հայ և վրաց ժողովուրդների համագործակցության ուսումնասիրությանը, նրանց և Ռուսաստանի ռազմաքաղաքական դաշինքի ստեղծման պատմությանը:*

*Գրքի առաջաբանում հեղինակն ընդգծում է, որ «Հայ և վրաց ժողովուրդների բարեկամությունը ծայր է առել հնագույն ժամանակներից: Հայոսի և Քարթլոսի դարերի խորքից եկող եղբայրության ավանդությունը խորհրդանշում է երկու հարևան ժողովուրդների բարեկամական փոխհարաբերությունները, որոնք ծլարձակել են նրանց պատմության արշալույսին» (էջ 5):*

*Չուզենալով դուրս գալ աշխատության ժամանակագրական շրջանակից, գրքի I գլխում հեղինակը հայ-վրացական համագործակցության պատմությունն սկսում է XVIII դարից՝ միայն հակիրճ բնութագրելով Արևելյան Անդրկովկասի, ավելի ճիշտ՝ Արևելյան Հայաստանի ու Վրաստանի սոցիալ-տնտեսական ու քաղաքական ծանըր վիճակը XVI—XVII դարերում և դրա հետագա վատթարացումը Հուսեին շահի օրոք (1698—1722 թթ.): Երկրում ծավալվող ազատագրական շարժումները ճնշելու համար պարսկական արքունիքը ձգտում էր մշտապես բորբոքել միջֆեոդալական ու ազգամիջյան հակամարտություններ, «Թույլ չտալ այդ երկրների մերձեցումը Ռուսաստանի հետ» (էջ 15), միաժամանակ, դաժան հաշվեհարդար տեսնելով ըմբոստացողների հետ, տեղահանելով բնակչությունը և վերաբնակեցնելով Իրանի կենտրոնական ռայոններում, ուժեղացնում էր առանց այն էլ դաժան հարկահանությունը, կրոնական ու ազգային ճնշումները:*

*Այս դրությունից ելք էին փնտրում Անդրկովկասի ժողովուրդների առաջավոր ներկայացուցիչները, դիմելով Ռուսաստանին և խնդրելով ռազմական օգնություն (էջ 26): Հեղինակը մեջ է բերում Իմերեթի գահազուրկ թագավոր Արչիլի՝ 1703 թ. նամակը, որտեղ նկարագրվում է Վրաստանի ծանր վիճակը և ընդգծվում վրաց ժողովրդի պատրաստակամությունը՝ ռուսների օգնությամբ կռվելու թշնամիների դեմ «մինչև արյան վերջին կաթիլը...»: Նույն ոգով էր գործում նաև հայ ազատագրական շարժման ռահվիրա Իսրայել Օրին. բանակցելով ռուսական կառավարության հետ, Հայաստանի ազատագրումը նա կապում էր ռուսական զինված օգնության հետ, միաժամանակ մեծ տեղ հատկացնելով հայ և վրաց ժողովուրդների համատեղ պայքարին (տե՛ս էջ 27):*

*Համառոտակի բնութագրելով Մինաս վարդապետի, Եսայի Հասան-Ջալալյանի և Վախթանգ VI-ի գործունեության առաջին շրջանը, հեղինակը ճիշտ եզրակացության է հանգում. «Արչիլի*

* *Վ. Մ. Մարտիրոսյան*— Հայ և վրաց ժողովուրդների համագործակցությունը ազատագրական պայքարում (XVIII դ., 20-ական թվականներ) *Հայկ. ՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի հրատ., Ե., 1971 թ.:*

նշում է նաև, որ 1724—1730 թթ. սղնախներին մեծապես օգնում էին վրացիներն ու ադրբեջանցիները։ «Անշուշտ,— գրում է նա,— եթե չլիներ Անդրկովկասի մյուս ժողովուրդների պայքարը և օգնությունը, հայկական սղնախները ի վիճակի չէին լինի այդքան տևական դիմադրություն ցույց տալ թուրք նվաճողներին» (էջ 161)։

Երրորդ գլխի վերջում շարադրված է Սյունիքի ազատագրական շարժման պատմությունը, վեր է հանված համընդհանուր ճանաչում գտած Դավիթ-Բեկի դերը զինված պայքարում։ Ի միջի այլոց, մեջբերում է մի հայ վաճառականի վկայություն (1725 թ. արխիվային նյութերից), որտեղ գրված է. «Թուրքական փաշան Նախիջևանից Դավիթ-Բեկի մոտ մարդ է ուղարկել և պահանջել նրանից հպատակվել սուլթանին։ Սակայն Դավիթ-Բեկը վճռականորեն մերժել է այդ առաջարկը և հայտարարել, որ ինքը նրանց հպատակվել չի կամենում և մինչև իր կյանքի վերջը կպայքարի նրանց դեմ» (էջ 173)։ Այս վկայությունը համարելով մեր պատմագրության մեջ Դավիթ-Բեկի մասին միակ նոր փաստը՝ «հաղվագյուտ մի վավերագիր» և անտեսելով այլ հետազոտողների հայտնաբերած տասնյակ և շատ ավելի կարևոր փաստաթղթեր, նա որոշ հարցերում կասկածելի է համարում Ստեփանոս Շահումյանի «Ընտիր պատմութիւն...» գրքի մի քանի տվյալներ, համամիտ լինելով Պ. Տ. Հարությունի այն ենթադրությանը, թե Սյունիքի ազատագրական պայքարը կարճատև է եղել և շարունակվել է Դավիթ-Բեկի ղեկավարությամբ մինչև 1725 թ. վերջը, կամ 1726 թ. սկիզբը և իբրև թե նրա մահից հետո Մխիթար Սպարապետն է դարձել ղեկավարը (էջ 173)։ Մենագրությունը հոդված չէ, ուստի հեղինակն ի վիճակի էր հըստակ ու հիմնավոր փաստարկներով արտահայտել իր համոզմունքը Դավիթ Նաղարովի՝ պատմագրության մեջ ծագած վարկածի մասին։ Ցավոք, այդ չի արված։

Վ. Մարտիրոսյանն իր գրքում կատարում է մի շարք տեղին ճշգրտումներ, քննում Օ. Պ. Մարկովայի սխալները (էջ 133 և 137) և գլուխն ավարտում, նշելով, որ Ղարաբաղի և Սյունիքի հերոսամարտերը հեշտացրին ռուսական զորքերի առաջխաղացումը և հաստատումը Կասպիականի ափերին, կասեցրին Թուրքիայի առաջխաղացումը և օգնեցին Պարսկաստանին՝ խուսափելու լիակատար պարտությունից, հավաքելու ուժերն ու դուրս քշելու թուրք նվաճողներին ինչպես Պարսկաստանից, նույնպես և արևելյան Անդրկովկասից։

Վերջին՝ IV գլխում, հեղինակը կրկին անդրադառնում է իր կողմից արդեն քննարկված հարցերին, դրանք կապելով Ռուսաստանի քաղաքականության հետ (բայց հայ-ռուս-վրաց համագործակցությունը հենց ինքը՝ հեղինակը, դիտել է Ռուսաստանի արևելյան քաղաքականության հետ կապված, նշել արևմտաեվրոպական պետությունների թշնամական դիրքը և դիվանագիտական ինտրիգները)։ Այս առիթով հեղինակը նորից խոսում է ռուս-թուրքական և ռուս-պարսկական հարաբերությունների, Թուրքիայի ու Պարսկաստանի հետ պայմանագրեր կնքելու և նման հարցերի մասին, ի միջի այլոց նաև Վախթանգ VI-ի և Դավիթ Նաղարովի մասին։ Վ. Մարտիրոսյանը փորձում է բացատրել այն «իրողությունը», թե հայկական ու ռուսական արխիվներն ու ձեռագրերը վկայություններ չեն պահպանել Դավիթ-Բեկի մասին, և գրում է. «Լինելով Վախթանգ VI-ի կողմից ուղարկված անձնավորություն՝ Դավիթ-Բեկը, հավանաբար այդ պատճառով էլ ինքն անձամբ գրագրություն չի վարել ռուսական կողմի հետ, ուստի փաստաթղթեր չի ստորագրել» (էջ 173)։

Թվում է, թե նպատակահարմար էր III և IV գլուխները տալ համատեղ, քանի որ արհեստականորեն է բաժանված հայ-վրաց համագործակցությունը 20-ական թվականներին ներկայացնող բաժինը Արևելյան Անդրկովկասը Ռուսաստանի արտաքին քաղաքական պլաններում 1722—1730 թթ. բաժնից (էջ 180—209), որի հետևանքով, ցավոք, կրկնություններն անխուսափելի են դարձել, և խախտվել են սինխրոն կապը, դեպքերի հետևողականությունն ու ամբողջականությունը։

Հեղինակին քաջ հայտնի են 1720-ական թվականների շարժումների ակտիվ մասնակից Դավիթ Նաղարովի՝ մեր կարծիքով նույն Դավիթ-Բեկի կյանքին ու գործին վերաբերող փաստաթղթերը, որ մենք հրատարակել ենք Վ. Դիլոյանի հետ, դեռևս 1964 թվականին։ Թվում է, թե այդ շրջանին մենագրություն նվիրող հեղինակը պետք է հանգամանորեն անդրադառնար Դավիթ Նաղարովի գործունեությանը՝ անկախ այն բանից, թե նա նույն ինքը Դավիթ-Բե՞կն էր, թե՞ վրաստանցի մի այլ հայ իշխան, որը Վախթանգի ու նրա որդի Բակարի մտերիմն էր «սենյակի բոյարինը (կամ սենեկապետը), նրանց հետ կռվել էր, նրանց հետ անցել Ռուսաստան։ Դավիթ Նաղարովը մեծ դեր է կատարել նաև Ռուսաստանի ու Պարսկաստանի միջև վարվող բանակցություններում և ստացել պատասխանատու շատ հանձնարարություններ ռուս արքունիքի ու Վախթանգ VI-ի կողմից։ Հարկ էր խոսել հայ-վրաց համագործակցության այդ նշանավոր դեմքի մասին, նրան տեղ տալով շատ ավելի, քան Ստեփանոս Շահումյանի «Ընտիր պատմության» մի քանի փաստերի՝ բոլորի կողմից բազմիցս վերապատմված պատմություններին, որ արված են և արվում են առանց ճշգրտումների և աղբյուրների սինխրոնիկ համեմատության։ Հեղինակը սահմանափակվել է գրելով, որ «Դ (!?) Նաղարովը, հայազգի իշխանը, նույնպես գործուն մասնակցություն է ունենում շահ Թահմազի հետ վարվող բանակցություններին» (էջ 199)։ Նկատենք, որ հեղինակը «գովելի» զգուշավորություն է ցուցաբերել՝ չհայտնելով ընթերցողին ո՛չ միայն Նաղարովի անունը (Դավիթ անունը..., որպեսզի այն հանկարծ չհիշեցնի Դավիթ-Բեկին, չզուգորդվի նրա ու նրա գործի հետ), այնպես և նրանց, ովքեր հրապարակել են Դավիթ Նաղարովի վերաբերյալ նորահայտ առաջին փաստաթղթերը։ Դրանց մեջ կա նաև շահի մի կարևոր հրամանը, որտեղ Դավիթ Նաղարովն անվանված է «բարձրարժան և յուրյան հավասարների մեջ նշանավոր Դավիթ-Բեկ», որը «հանգամանքների բերումով ծանր դրության մեջ էր ընկել» և որին պետք էր օգնության հասնել, քանի որ Դավիթ-Բեկը մեծամեծ ծառայություններ էր մատուցել պարսկական «պետությանն ու օրենքին»։ Ուշադրավ է նաև այն, որ շահի հրովարտակում հիշատակվում է. «Դավիթ-Բեկը Վրաստանի և Քարթլիի իշխան ու ժառանգորդ Հուսեին Կուլի խանի, այսինքն՝ Վախթանգ VI-ի, մերձավորն է», հանգամանք, որ պետք է աչքի զարներ։ Այս և նման վիճելի հարցերին պատասխան չի տըրվում։

Գիրքը գրված է կենդանի, մատչելի հայերենով։ Երբեմն նկատվում են ոճական որոշ անհարթություններ։ Այսպես՝ «...սպատակությունները հաճախակի բնույթ էին ընդունել...» (25), «Թուրքական բանակը... գերեվարություններ էր գործում» (144), «Ըստ Պետրոս 1-ինի նախօրոք եկած համաձայնության...» (88), «Հետագա դիմադրության անհուսալի հեռանկարն ու նրա հետևանքների վտանգավորությունը առաջ են բերում երկպառակություն...» (175)։ «Որպես ի գիտություն Վախթանգին հայտնել» (200), (տե՛ս նաև էջ, էջ 35, 44, 81, 96, 119, 135, 147, 196, 201, 203)։ Մի շարք թարգմանություններ կատարված են անհաջող (26—27, 35, 44, 119, 160, 190), որոշ մտքեր մերթ կրկնվում են (էջ 21—23, 57—77 և այլն)։



Կուզեինք նշել նաև Քուռ գետի գրության մասին. այն ամենուրեք Կուր է (տե՛ս էջ 40, 86, 104, 171, 206)։ Ի՞նչ խոսք ռուսական վավերագրերում Քուռ գրվել չէր կարող, նրանք չունեն այդ խուլ հնչյունները, ուստի և մեքենայաբար Кур-ը չպետք է դառնա Կուր։

Ի դեպ, առհասարակ ճիշտ չէ, երբ պատմական աշխատություններում պատմական տերմինները, այն էլ հեռավոր ժամանակներին վերաբերող, արդիականացվում են (աղվաններ-աֆղաններ)։

Որոշ անփութություն է նկատվում գրքի գիտական ապարատում— աղբյուրների և գրականության ցանկում։ Այնուհետև, ցանկերում բերված աղբյուրներն ու գրականությունն օգտագործված են, բայց մեծ մասամբ տողատակ նշված չեն։ Ստացվել է այնպիսի տպավորություն, թե օգտագործված ողջ նյութն արխիվներից հանել է միայն ինքը՝ Մարտիրոսյանը. թեպետ մենք ուզում ենք շեշտել, որ նա իրոք զգալի նյութ է հայտաբերել հատկապես սղնախների տասնամյա պայքարի մասին և բավական լավ ներկայացրել հայ ժողովրդի հերոսամարտերը։ Նշված թերությունները մենք ընդգծում ենք՝ նպատակ ունենալով օգնել Վ. Մարտիրոսյանին՝ այս արժեքավոր աշխատությունը մշակելու և շարունակելու գործում, ինչպես և պաշտպանելու գիտական աշխատանքի էթիկան։

Անկասկած, ակտուալ հարցին նվիրված այս մենագրությունն ստեղծված է բազմաթիվ փաստաթղթերի, արխիվային նորահայտ նյութերի և գրականության բավական ուշադիր ու բազմակողմանի քննությամբ, պատմագիտական-մեթոդոլոգիական պատշաճ մակարդակով, մատչելի լեզվով և ստեղծում է պարզ ու որոշակի ըմբռնում հայ և վրաց ժողովուրդների բարեկամության, համագործակցության և տասնամյա համատեղ պայքարի մասին, ցույց տալով նրանց հերոսությունը, ազատաբաղձությունը, նրանց համատեղ պայքարի ռուսական կողմնորոշումը։

Լավ կլիներ այս գիրքը հրատարակել նաև ռուսերեն, նախապես վերացնելով թերությունները։

Վ. Կ. ՈՍԿԱՆՅԱՆ

# ԳՐՔՈՒՅԿ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՅԻ ՄԱՍԻՆ

*Վ. Ի. Լենինի տեսական ժառանգության ստեղծագործական ուսումնասիրությունը միշտ էլ արժանացել ու արժանանում է հատուկ ուշադրության։ Այս առումով հասարակական հետաքրքրություն է ներկայացնում Մ. Անտոնյանի* Վ. Ի. Լենինը և հեղափոխության դիալեկտիկան *աշխատությունը (ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1969 թ.)։*

*Հասարակական զարգացման նոր պայմաններում, իմպերիալիզմի դարաշրջանում, Վ. Ի. Լենինը պաշտպանեց մարքսիզմի անաղարտությունը ռևիզիոնիստական և դոգմատիկական աղավաղումներից, ստեղծագործաբար զարգացրեց սոցիալիստական հեղափոխության մարքսիստական տեսությունը։ Գրքում ցույց է տրվում, որ մատերիալիստական դիալեկտիկան, մասնավորապես հասարակական երևույթներում, պրոցեսներում օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի հարաբերակցության ճիշտ ըմբռնումը, հնարավորություն է տալիս բացահայտելու աշխարհը կոմունիստական հիմունքներով վերափոխելու նորանոր ուղիներ ու միջոցներ (տե՛ս էջ 13)։ Օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոններն օրգանական կապի, փոխազդեցության, դիալեկտիկական միասնության մեջ են։ Ընդ որում օբյեկտիվ պայմանները միշտ և հասարակական բոլոր երևույթներում որոշիչ դեր են խաղում սուբյեկտիվ գործոնի նկատմամբ։ Սակայն մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ սուբյեկտիվ գործոնը օբյեկտիվ պայմանների պասսիվ արտացոլումը չէ լոկ, այլ հետադարձ վիթխարի ազդեցություն է գործում իրեն ծնող օբյեկտիվ պայմանների վրա։*

*«Տվյալ կոնկրետ պատմական-հասարակական պրոցեսի օբյեկտիվ պայմանների առկայության դեպքում այդ պրոցեսի սուբյեկտիվ, տվյալ դեպքում սոցիալիստական հեղափոխության սուբյեկտիվ գործոնը, ընդունում է վճռական նշանակություն հասարակական հակասությունները լուծելու, հնից նորին հեղափոխական անցում կատարելու համար։ Հետևապես, սուբյեկտիվ գործոնը հսկայական ակտիվ ուժ է, ուժ, որը մարդկանց, դասակարգերի, կուսակցությունների գործունեության միջոցով հասարակության զարգացմանը տալիս է որոշակի ուղղություն, արագացնելով կամ դանդաղեցնելով հասարակության զարգացման ընթացքը» (էջ 24)։*

*Հեղինակը իրավամբ նշում է, որ առանց օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների փոխադարձ կապի, միաժամանակ առանց սուբյեկտիվ գործոնի հարաբերական ինքնուրույնության, սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ պայմանները չեն կարող տարերայնորեն հասունանալ այն աստիճան, որ անցում կատարվի հենց դեպի նոր հասարակարգ։ Այստեղ տեղի է ունենում թռիչքային անցում։*

*Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները բազմիցս նշել են սոցիալիստական հեղափոխության խաղաղ ճանապարհի առավելությունը զինված ապստամբության համեմատ, քանի որ խաղաղ ճանապարհը չի կապված արյունահեղությունների, բռնությունների հետ։ Սակայն, հեղափոխության խաղաղ զարգացումն ընդհանրապես չափազանց հազվադեպ է, դժվարին, քանի որ ոչ մի շահագործող դասակարգ իր իշխանությունը կամավոր չի զիջի մի այլ դասակարգի։ Ահա թե ինչու հեղափոխության առավել տարածված ձևը զինված ապստամբությունն է։ Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու այս կամ այն ձևը որոշում է տվյալ երկրի մարքս-լենինյան կուսակցությունը։*

*Գրախոսվող գլխում լուսաբանվում են հեղափոխության նյութական նախադրյալներն ու դրանց հասունացման օրինաչափությունները, սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ պայմանների մի քանի առավել կարևոր տարրեր։*

*Հեղինակը բազմակողմանի վերլուծում է իմպերիալիզմի օրոք կապիտալիստական երկրների տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափության օրենքը, որը Լենինն առաջին անգամ ձևակերպեց 1915 թ. պատմական նոր պայմաններում, զարգացնելով սոցիալիստական հեղափոխության տեսությունը և մշակելով իր հայտնի ուսմունքը՝ սկզբում առանձին վերցրած մեկ կապիտալիստական երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին։*

*Սոցիալիստական հեղափոխության սուբյեկտիվ գործոնը խիստ բարդ է և պարունակում է հետևյալ հիմնական տարրերը. բանվոր դասակարգի գիտակցականությունն ու կազմակերպվածությունը, նրա կամքի վճռականությունն ու անձնազոհությունը, նրա պատրաստակամությունը՝ խորտակիչ հարված հասցնելու կապիտալիզմին, մարքսիստական կուսակցության կողմից հեղափոխական մասսաների գործունեության ղեկավարումը, բանվոր դասակարգի դաշնակիցների կամքն ու բարոյական վիճակը՝ ազատագրական պայքարին ակտիվ մասնակցելու համար (տե՛ս էջ 78)։*

*Սոցիալիստական հեղափոխության սուբյեկտիվ գործոնների ձևավորման հիմնական օրինաչափություններից մեկն այն է, որ սուբյեկտիվ գործոնի դրսևորումը չի համընկնում օբյեկտիվ պայմաններին։ Հեղափոխության օբյեկտիվ պայմանները կարող են հասունացած լինել, իսկ սուբյեկտիվ գործոնը՝ ոչ։ Ահա թե ինչու հեղափոխությունն ապահովելու համար պահանջվում է առաջ ընթանալ քայլ առ քայլ— ստեղծել հեղափոխական կուսակցություն, ձևավորել, կոփել սուբյեկտիվ գործոնը, նրա բոլոր տարրերը։*

*Սոցիալիստական հեղափոխության սուբյեկտիվ գործոնի ձևավորման մյուս օրինաչափությունն այն է, որ նրա զանազան կողմերը կամ բաղկացուցիչ մասերը հասունանում են ոչ միաժամանակ։ «Հայտնի է, որ աշխատավոր մասսաների զանազան խավերի համար գիտակցականության, կազմակերպվածության, հեղափոխական վճռականության մակարդակը միատեսակ չէ։ Կապիտալիզմի պայմաններում ոչ բոլոր բանվորները կարող են բարձրանալ մինչև ավանգարդի մակարդակը» (էջ 93)։*

*Սոցիալիստական հեղափոխության սուբյեկտիվ գործոնի ձևավորման օրինաչափություններից մեկն էլ այն է, որ դա կատարվում է աշխատավոր դասակարգի պայքարի պրոցեսում. այդ ընթացքում է մշակվում մասսաների սեփական քաղաքական փորձը, որն անչափ կարևոր է հեղափոխական անցում կատարելու համար։*

*Գրախոսվող աշխատության մեջ հեղինակը հանգամանորեն ցույց է տալիս, որ հեղափոխական ժամանակաշրջաններում պատմական գործունեության մեջ են ընդգրկվում ժողովրդական նորանոր զանգվածներ, քանի որ հասարակական կյանքում տեղի ունեցող փոփոխությունների վճռական ուժը աշխատավորական մասսաների հեղափոխական ստեղծագործությունն է։ Ժողովրդական մասսաների՝ պատմության մեջ չտեսնված սոցիալական գիտակցական ակտիվությունը հեղափոխության օրերին պատահական չէ, այն օրինաչափորեն պայմանավորված է սոցիալիստական հեղափոխության արմատական առանձնահատկություններով։ Հեղափոխության ընթացքում ժողովրդական զանգվածների դերի աճը, նրանց վճռական ուժ դառնալը հեղափոխության դիալեկտիկայի լենինյան տեսության կարևոր հարցերից է։ Բացահայտելով այդ օրինաչափության վերաբերյալ լենինյան տեսակետը, հեղինակը նշում է, որ մարդկային ողջ պատմության ընթացքում առաջին անգամ միայն սոցիալիստական հեղափոխության շնորհիվ պատմական ասպարեզ են ելնում նոր կյանքը կերտող ժողովրդական լայն զանգվածները և դրանով իսկ սկսվում է ժողովրդական մասսաների ինքնուրույն գիտակցական ստեղծագործության դարաշրջանը։ Հենց այդ էլ նկատի ունենալով, մարքսիզմի կլասիկները սոցիալիստական հեղափոխությունն իրավամբ բնութագրել են որպես մարդկային հասարակության նախապատմության ավարտ և նրա իսկական պատմության սկիզբ։*

Արդի հեղափոխական պրոցեսի դիալեկտիկայի մի քանի հարցեր *գլխում քննարկվում են ժամանակակից աշխարհի սոցիալ-քաղաքական երևույթների կարևորագույն առանձնահատկությունները։*

*Համաշխարհային սոցիալիստական սիստեմի ծագման, զարգացման ու ամրապնդման շնորհիվ համաշխարհային ասպարեզում սոցիալական ուժերի հարաբերակցությունն արմատապես փոխվեց սոցիալիզմի օգտին։ Այդ առաջընթաց պրոցեսը խորանում ու զարգանում է, շարունակ դժվարացնելով հակահեղափոխության արտահանումը իմպերիալիզմի կողմից։*

*Գրախոսվող մենագրության մեջ հանգամանորեն լուսաբանվում են սոցիալիզմի համաշխարհային սիստեմում, ինչպես և միջազգային կոմունիստական շարժման մեջ առկա մի քանի հակասություններ։ Ճիշտ է, սոցիալիստական երկրներն ունեն միատիպ տնտեսական հիմք, արտադրամիջոցների հանրային սեփականություն, միատիպ քաղաքական կարգ— ժողովրդի իշխանություն բանվոր դասակարգի գլխավորությամբ, միասնական գաղափարախոսություն— մարքսիզմ-լենինիզմը, ընդհանուր շահեր, միասնական նպատակ։ Սակայն այստեղից չի հետևում, որ սոցիալիստական համաշխարհային սիստեմի, ինչպես և ընդհանրապես միջազգային կոմունիստական շարժման ներսում հակասություններ, տարաձայնություններ չկան։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հակասությունները կարելի է դասակարգել երկու տիպի՝ ներքին և արտաքին՝ ոչ-իմանենտ։ Այդ հակասություններն*

ունեն իրենց առանձնահատկությունը։ Դրանք հակամարտ չեն։

Դեկավարվելով լենինյան տեսական դրույթներով, հեղինակը քննադատում է արդի աջ և «ձախ» օպորտունիստների քայքայիչ գործունեությունը, ցույց տալիս նրանց առաջացման սոցիալ-դասակարգային արմատները։

Լենինը և հեղափոխության դիալեկտիկան մենագրության հեղինակին հաջողվել է տեսական պատ... մակարդակով ներկայացնել Վ. Ի. Լենինի գիտական մեծ սխրանքը՝ սոցիալիստական հեղափոխության տեսության մշակումը և դրա առավել հզորացումը ու զարգացումը։

Վ. Դ. ՍԵՎՅԱՆ



## ՈՒՂՂՈՒՄ

«Լենինյան ուղիով» ամսագրի երրորդ համարի 9-րդ էջի ներքևից 12-րդ տողում՝ «Դրանք 200 հազար խորանարդ մետր ծավալ ունեցող...» կարդալ՝ երկու հազար, իսկ № 4-ի 110-րդ էջի վերևից 23-րդ տողի սկզբից կարդալ՝ չճանաչելով,... և այնուհետև ինչպես տեքստում։ Խմբ.։




ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ե. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции,— Ереван-33, Барекамутян 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 27—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64։

ՎՖ 01664 Պատվեր 475 Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$։ Տիրաժ 13.830 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության՝ 10/V 1972 թ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Իսահակյան փող. № 28։







## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԷՆԳԵԼՍ ՖՐ.— *18-ից մինչև 25։* Ֆ. Էնգելսի պատանեկան տարիների նամակները։ «Молодая гвардия» *հրատ., 1971։*

Վ. Ի. Լենինը և արտասահմանյան արևելքի գրականությունը։ *Հոդվածների ժողովածու։ Մ.,* «Наука» *հրատ., 1971։*

*Ժողովածուում զետեղված հոդվածներում արտացոլված է լենինյան գաղափարների ազդեցությունը արաբական երկրների, Վիետնամի, Հնդկաստանի, Իրանի, Չինաստանի, Կորեայի, Մոնղոլիայի, Նեպալի, Թուրքիայի, Ճապոնիայի և այլ երկրների գրականության և արվեստի վրա։*

ԿԼԻՄՈՒՇԵՎ Վ. ՅԱ.— Վ. Ի. Լենինի «Ձախության մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» աշխատության մասին *(Ուսումնական ձեռնարկ ՍՄԿԿ պատմության դասընթացի վերաբերյալ)։ Մ.,* «Высшая школа» *հրատ., 1971։*

ՊԱՆՁԵՆԿՈ Տ. Վ. և ՍՎԵՉՆԻԿՈՎ Պ. Վ.— Վլադիմիր Իլյիչ Լենին։ *Մ.,* «Политиздат», *1971։ Ցուցադրական ձեռնարկ Վ. Ի. Լենինի կենսագրությունն ուսումնասիրողների համար։ Գրքում զետեղված են Վ. Ի. Լենինի հետ կապված լուսանկարները։*

Կարլ Մարքսի աշխատությունները հայերեն *(1904—1970 թթ.)։ Բ. մատենաշար № 1։ ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1971։*

Ֆ. Էնգելսի աշխատությունները հայերեն *(1894--1970 թթ.)։ Բ. մատենաշար № 2։ ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1971։*

Վ. Ի. Լենինի աշխատությունները հայերեն *(1904—1970 թթ.)։ Բ. մատենաշար № 3։ ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1971։*

ԿԱՍԵՆՈՎ Բ. Կ.— Համընդհանրության, եզակիության և առանձնահատկության դիալեկտիկան Կ. Մարքսի և Վ. Ի. Լենինի տնտեսագիտական երկերում։ *Ալմա-Աթա,* «Наука» *հրատ., 1971։*

ԵՐԻՑՅԱՆ Մ. Ս.— Հոգեբանության փիլիսոփայական հարցերը Վ. Ի. Լենինի աշխատություններում։ *Եր., «Լույս» հրատ., 1971։*

Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմություն։ *«Հայաստան» հրատ., 1971, 1030 էջ։*

ՄՈԼՉԱՆՈՎ ՅՈՒ. Լ.— ՍՄԿԿ XXIV համագումարը Սովետական Միության միջազգային դրության և արտաքին քաղաքականության մասին։ *Մ.,* «Знание» *հրատ., 1971։*

ՄԻՐՈՆՈՎ Ն. Վ.— ՍՍՀՄ արտաքին հարաբերությունների իրավական կարգավորումը։ *1917— 1970 թթ.։ Մ.,* «Межд. отношения» *հրատ., 1971։*

ՎԵՐՍԻՆ Ա. Վ.— «Խաղաղության առաքյալները» երեք մայր ցամաքներում։ *Ամերիկյան խաղաղության կորպուսի նոր գաղութակալական էությունը։* «Межд. отношения» *հրատ., 1971։*

ՄՈՐՈԶՈՎ Վ. Պ. և ԲԱՍՈՎ Ա. Վ.— Հայրենական մեծ պատերազմի հիմնական էտապները։ *Ներածական հոդվածը Սովետական Միության մարշալ Ա. Մ. Վասիլևսկու։ Ձեռնարկ ուսուցիչների համար։ Մ.,* «Просвещение» *հրատ., 1971։*

ՍՄԵԼՅԱԿՈՎ Ն. Ն.— Գործարար Ամերիկա *(Ինժեների գրառումներ)։ «Հայաստան» հրատ., 1971։*

Միջազգային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժումը։ *Ուսումնական ձեռնարկ ՍՄԿԿ կկ առընթեր Հեռ. ԲԿԴ և քառամյա բարձրագույն կուս. դպրոցների ունկնդիրների համար։ Մաս II (1939—1970 թթ.)։ Մ.,* «Мысль» *հրատ., 1971։*

Հայկական ՍՍՀ ֆիզիկական աշխարհագրություն *(Քարտեզներով)։ Ե., ԳԱ հրատ., 1971։*

ՀԱԿՈԲՅԱՆ Թ. Խ.— Երևանի պատմությունը *(1500—1800 թթ.)։ Եր. համալսարանի հրատ., 1971։*

ԱԲԵՂՅԱՆ ՄԱՆՈՒԿ.— Երկեր։ *Հատոր Ե., Եր., ԳԱ հրատ., 1971։*

*Հատորում զետեղված են Հայոց լեզվի տաղաչափություն կապիտալ աշխատությունը և հարակից հոդվածներ։*

ԳԻՆԸ 25 Կ.: 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՊԻՏԱԿԱՎՈՐՄԱՆ ՆՈՐ ՍԱՐՔ

*ԴՕՍԱԱՖ-ի Բրյանսկի մարզային ռադիոակումբի անդամ Գ. Օնուֆրիևը նախագծել է մի սարքավորում՝ խողովակների հատման և երկկողմանի պիտակավորման համար: Նման ավտոմատի կիրառումը այդ պրոցեսի արտադրողականությունը կբարձրացնի 20 անգամ: Ավտոմատը կարող է պիտակավորել 2—10 միլիմետր տրամաչափի խողովակները:*

*Դրա գործարկումը պարզ է և հուսալի, մեկ նիշը մյուսով փոխարինելը տևում է երեք րոպեից ոչ ավելի:*

### ԲՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԳՏՆՎԱԾ ՊԼՈՒՏՈՆԻՈՒՄ—244

*ԱՄՆ-ի ատոմային էներգիայի հանձնաժողովի նախագահ պրոֆեսոր Գլեն Սիբորգը ցուցադրեց պլատինե մի սկավառակ, որը պարունակում է մեկ-երկու միլիոներորդական գրամ բնական պլուտոնիում—244: Առաջին անգամ պլուտոնիում ստացվել է 1940 թ. միջուկային ռեակցիայի շնորհիվ, իզոտոպների տեսքով, 239 ատոմական կշռով: Հետագա 12 տարիների ընթացքում գիտնականներին հաջողվեց այդ տարրի ևս նույն եղանակով ստանալ 15 իզոտոպ, որոնք Մենդելեևի աղյուսակում գրավում են 94-րդ տեղը: Իսկ պլուտոնիում—244-ը հայտնաբերվեց 1952 թ.:*

*Մինչև վերջերս գիտնականները գտնում էին, որ իրականում այդ տարրը մեր մոլորակի վրա չկա: Լոս-Ալամոսի լաբորատորիայում հաջողվեց 100 կգ բաստնեզիտի հանքից զատել պլուտոնիում—244-ի միկրոքանակություն— 20 միլիոն ատոմ:*

*Այս հայտնագործությունը հետաքրքրում է ո՛չ միայն ֆիզիկոսներին: Եթե հաստատվի, որ դա երկրային մարմին է, ապա հարկ կլինի մեր մոլորակի տարիքը հաշվել ոչ թե 4,5 միլիարդ, այլ՝ 5 միլիարդ տարի:*

### ԼԱԶԵՐԸ ԴԵՐԱՍԱՆԻ ԴԵՐՈՒՄ

*1970 թվականի հուլիսին լազերն առաջին անգամ հայտնվեց թատրոնի բեմահարթակներում, իբրև լիիրավ դերասան: Մյունխենի ժողովրդական թատրոնի բեմադրություններից մեկի՝ «Կախարդական սրնգի» ժամանակ լազերի օգնությամբ բեմում ստացվեցին արստրակտ-գունավոր կերպարանքներ, որոնք շարժվում, թռչում էին: Գունափոխվելով, դրանք հանդիսատեսի մոտ ստեղծում էին իրական կախարդական թագավորության պատրանք (ԳՖՀ):*

### ԸՆԴԴԵՄ ՀՈՂԱՏԱՐՈՒԹՅԱՆ (ԷՐՈԶԻԱՅԻ)

*Ծովափնյա, բարձրադիր ու թեք հողատարածությունների հողատարության դեմ անգլիական գիտնականներն առաջարկում են պայքարի ուշագրավ միջոց: Նախ՝ բլրի գագաթից ցած է իջեցվում երկու տրոս (պողպատալար). դրանց ծայրերն ամրացնելուց հետո վրայից շարում են պողպատյա աստիճանները: Այդ սարքավորման մեջ հող են լցնում: Ապա հնարավորին չափ արագ ցանում են հացահատիկային կուլտուրաներ և տնկում թփեր:*

### ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՍՐԲԻՉ

*ԱՄՆ-ի ֆիրմաներից մեկը ձեռնամուխ է եղել պատուհանի ապակիները երկու կողմից մաքրող մի սարքի արտադրության: Դրա համար օգտագործվում է երկու սպունգ (մեկը դրսի, մյուսը ներսի համար), որոնք մագնիսների միջոցով ամուր հպվում են ապակուն: Բավական է, ասենք, շարժել ներսի ապակուն հպված սպունգը, որպեսզի շարժվի նաև դրսինը:*



Օգնություն

## ԿՈՒՍՈՒՍՈՒՑՄԱՆ ՑԱՆՑԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱՐԱՐ ՍԿԶԲՈՒՆՔԸ*)

Ա. ՍՈՎԵՏՈՎ

*ՄԻՋԱԶԳԱՅԻՆ հարաբերությունների պատմության մեջ վերջին տասնամյակները նախորդ բոլոր դարերից բաժանված են այնպիսի մի սահմանագծով, որը հիմք է տալիս խոսելու դրանց որակական տարբերության մասին: Այդ սահմանագիծը դրել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Բաց անելով նոր դարագլուխ համաշխարհային պատմության մեջ, Ռուսաստանի պրոլետարիատի հեղափոխական սխրագործությունը, դրանով դրեց նաև համաշխարհային քաղաքականության նոր դարաշրջանի սկիզբը: Հոկտեմբերից հետո սկսեց կենսագործվել գիտական այն մարգարեությունը, որ դրանից մոտ կես դար առաջ, 1870 թվականի ամռանը, ձևակերպել էր Կարլ Մարքսը «Ֆրանս-պրուսական պատերազմի մասին Բանվորների միջազգային ընկերության գլխավոր խորհրդի առաջին կոչ»-ում:*

*«...Ի հակադրություն հին հասարակության՝ նրա տնտեսական աղքատությամբ ու քաղաքական խելահեղությամբ,— գրում էր Կ. Մարքսը,— ծնունդ է առնում մի նոր հասարակարգ, որի միջազգային սկզբունքն է լինելու* խաղաղությունը, *քանի որ ամեն մի ժողովուրդ ունենալու է մեկ տիրակալ՝* աշխատանքը»[1]:

**Խաղաղությունը,** *որպես աշխատավորների պետության միջազգային սկզբունք՝ հռչակվեց նրա առաջին իսկ արտաքին քաղաքական հայտարարության մեջ՝ խաղաղության մասին լենինյան Դեկրետում: Երկրագնդի բնակչության վիթխարի մեծամասնությունը, նշում էր Վ. Ի. Լենինը սովետական իշխանության արշալույսին, անմիջապես հավանություն տվեց այդ սկզբունքին, Սովետների կառավարության խաղաղ քաղաքականությանը*[2]:

*Բայց 1917 թվականին աշխատանքը տիրակալ դարձավ միայն մեկ, թեև աշխարհի ամենամեծ երկրի ժողովրդի համար: Մի շարք երկրներում աշխատանքի տիրապետությունը հաստատվեց այն բանից հետո, երբ հաղթանակած*

1 К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 17, стр. 5.

2 *Տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 497:*

*) *Տպագրվում է որոշ համառոտումներով—* Խմբ.:

սոցիալիզմի առաջին պետությունը գլխովին ջախջախեց համաշխարհային ռեակցիայի հարվածային ջոկատը՝ ֆաշիզմը։ Սոցիալիստական տերության հաղթանակը, հասարակական նոր կարգի, սոցիալիզմի, դեմոկրատիայի ու խաղաղության ուժերի հաղթանակը համաշխարհային երկրորդ պատերազմում պրոլետարիատի, ինչպես նաև գաղութների ու կիսագաղութների ճնշված ժողովուրդների հեղափոխական շարժմանը այնպիսի մի հուժկու խթան հաղորդեց, որ սոցիալիզմը դուրս եկավ մեկ երկրի շրջանակներից և դարձավ համաշխարհային սիստեմ։ Այդ սիստեմի առաջացումն ու զարգացումը իր նշանակությամբ երկրորդ իրադարձությունն է մարդկության պատմության մեջ՝ Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունից հետո։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմը՝ միջազգային բանվոր դասակարգի գլխավոր նվաճումը, ամրապնդվում էր և շարունակում է ամրապնդվել։ Այսօր նա վճռական ուժ է հակաիմպերիալիստական պայքարում, մի նախատիպ՝ ազատ ժողովուրդների ապագա համագործակցության համար։

Սոցիալիստական երկրների համագործակցության սահմաններում խաղաղությունը, այդ տերմինի մարքս-լենինյան ըմբռնմամբ, ոչ թե պատերազմների միջև ընկած մի միջակա խաղաղ շրջան է, այլ մի բնական վիճակ այն ժողովուրդների համար, որոնք անշահախնդրորեն օգնում են միմյանց՝ աշխատելու սեփական և ընդհանուր բարօրության համար, պաշտպանում են միմյանց, օգնում դժբախտության պահին, համատեղ հոգում սոցիալիստական համագործակցության բոլոր անդամների տնտեսության ու մշակույթի զարգացման, նրանց բարեկեցության մասին, համաձայնեցնում իրենց գործողությունները քաղաքականության մեջ, կյանքի մյուս բնագավառներում։ Այդպիսի խաղաղությունը, որի վերահաս սկիզբը կանխատեսել էին Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը և որի սկիզբը գործնականում դրել էին Վ. Ի. Լենինը, լենինյան կուսակցությունը, միջազգային սկզբունք է դարձել ոչ թե խոսքով, այլ գործով։

Պատահական չէ, որ սոցիալիստական համագործակցության երկրները մենք անվանում ենք եղբայրական երկրներ։ Դրանց ժողովուրդները, և դարձյալ Կ. Մարքսի կանխատեսմամբ, ո՛չ միայն զգում, այլև գործում են որպես եղբայրներ ու ընկերներ[1]։

Այդ է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի՝ սոցիալիստական արտաքին քաղաքականության հիմնարար սկզբունքի ամենախոր էությունը։ Այն պայմանավորված է ո՛չ թե ինչ-որ մեկի բարի կամքով և բարի ցանկություններով, այլ դասակարգային պայքարի անողոք օրենքներով, որը հանդես է եկել և հանդես է գալիս որպես պատմության շարժիչ ուժ։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը ծագել, զարգացել ու զարգանում է բուն պատմական պրոցեսի վերընթաց շարժման մեջ, դարձել է սոցիալիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի պետությունների կատարելագործվող հարաբերությունների հիմքը։

●

ՃՆՇՎԱԾ դասակարգերի ներկայացուցիչների համար շահերի ընդհանրության զգացումը, անկախ նրանց էթնիկական պատկանելության, հատուկ է եղել դեռ շատ վաղ ժամանակներում։ Բայց երբեմն միայն, որպես եզակի երևույթ, ճնշվածների ուժերի ամենաբարձր լարման պահերին, այդ զգացումը վերածվել է համերաշխ գործողությունների, ինչպես, օրինակ, Հին Հռոմի ստրուկների՝ Սպարտակի գլխավորությամբ բարձրացրած ապստամբության ժամանակ (մեր թվականությունից առաջ 74—71 թթ.), որն այնքան վառ նկարագրված է գարիբալդիական Ջովաննի Ջովանիոլիի վեպում. այն բարձր են գնահատել գիտական կոմունիզմի հիմնադիրները։ Թրակիացու, գալլի, նումիդիացու համերաշխությունը, որոնք դատապարտվածների հուսահատությամբ անհավասար պայքարի էին դուրս եկել ամենահզոր Հռոմի դեմ, չգի-

[1] Տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 16, стр. 195.





տակցված, տարերային, անկայուն համերաշխություն էր։ Նույնը կարելի է ասել միջնադարի և ճորտատիրական ռեժիմների ժամանակ գյուղացիների ու քաղաքային չքավորության ապստամբությունների մասին։

Բուրժուազիան, որն իր իշխանությունը հաստատեց ֆեոդալիզմի դեմ մղած հեղափոխական պայքարում, երբեք ճնշված դասակարգ չի եղել այն իմաստով, ինչպես ստրուկները ստրկատիրական ֆորմացիայում և գյուղացիները ֆեոդալական հասարակարգում, և ինչպիսին, հետագայում, բուրժուական կարգերի օրոք, դարձավ պրոլետարիատը։ Բուրժուաները երբեք չեն աշխատել ուրիշների հարստացման համար, նրանք «աշխատել են» բացառապես սեփական շահույթի ու գերշահույթի համար։

Եվ, այնուամենայնիվ, բուրժուազիային հատուկ է որոշ փոխըմբռնում։ Դեռ 1847 թվականին Կ. Մարքսը նշում էր. «...գոյություն ունի բոլոր ազգերի բուրժուական դասակարգերի մի յուրատեսակ եղբայրական դաշինք։ Դա ճնշողների եղբայրական դաշինքն է ընդդեմ ճնշվածների, շահագործողների դաշինքն ընդդեմ շահագործվողների». այդ դաշինքը, մատնանշում էր Կ. Մարքսը, գոյություն ունի, «չնայած համաշխարհային շուկայում եղած փոխադարձ պայքարին ու մրցակցությանը»[1]։ Բուրժուազիայի նման «համերաշխությունը» առաջացել է ինքնապահպանման դասակարգային բնազդից, որը ժառանգաբար մնացել է նախկին շահագործողական դասակարգերից ու գնալով ավելի է զարգացել։ Այդ «համերաշխությունը» երևան է գալիս այն ժամանակ, երբ այս կամ այն երկրում սպառնալիք է ստեղծվում շահագործման բուն կարգի համար։

Այդպիսին է համերաշխության միակ ձևը, որը մատչելի է բուրժուազիայի համար։ Այդ համերաշխությունն ստեղծվում է ժողովուրդներին միմյանցից բաժանելու և նրանց առանձին-առանձին ճնշելու նպատակով։ Միանգամայն տրամաբանական է, որ բուրժուազիան, որը հետևում է շահագործողների՝ «բաժանիր, որ տիրես» մշտնջենական նշանաբանին, օրգանապես անընդունակ է իրականացնելու ազգերի միասնությունը։ «Ժողովուրդներին գրգռել իրար դեմ, մեկ ժողովրդին օգտագործել մեկ ուրիշին ճնշելու համար, որպեսզի այդ կերպ կարողանան երկարաձգել բացարձակ իշխանության գոյությունը՝ ահա թե ինչի էին հանգեցնում մինչև այժմ գոյություն ունեցած բոլոր կառավարողների ու նրանց դիվանագետների արվեստն ու գործունեությունը»[2],— այսպես էր բնութագրում Ֆ. Էնգելսը շահագործող դասակարգերի միջազգային քաղաքականությունը։ Այդ քաղաքականությունը «միջազգային» է ամենից առաջ այն իմաստով, որ ուղղված է ո՛չ միայն որևէ մեկ ժողովրդի, այլ բոլոր ժողովուրդների դեմ, բաժանելով նրանց, հակադրելով մեկը մյուսին, որպեսզի պահպանվեն շահագործողական կարգերը։

Առանձին ինտենսիվությամբ այդպիսի հակաժողովրդական քաղաքականություն վարում է իմպերիալիզմը։ Պատմությունն արդեն քանիցս հաստատել է լենինյան հետևությունն այն մասին, որ իմպերիալիստները ձգտում են «հիմարացնել, բաժանել և ջարդել բոլոր երկրների պրոլետարներին, մի ազգի վարձու ստրուկներին գրգռելով մյուս ազգի վարձու ստրուկների դեմ՝ հօգուտ բուրժուազիայի»[3]։

Իսկական ինտերնացիոնալիզմ իրականացնելու ընդունակ է միայն պրոլետարիատը, որը կատարում է շահագործման ու ճնշման բոլոր ձևերը ոչնչացնելու պատմական մեծ միսիան։ Մերկացնելով «ազգերի միավորման ու եղբայրության» բուրժուական կեղծ ֆրազը, Կ. Մարքսը մատնանշում էր. «Որպեսզի ժողովուրդները կարողանան իրոք միավորվել, նրանք պետք է ունենան ընդհանուր շահեր։ Որպեսզի նրանց շահերը կարողանան ընդհանուր լինել, պետք է ոչնչացվեն սեփականության գոյություն ունեցող հարաբերությունները, քանի որ սեփականության գոյություն ունեցող հարաբերություն-

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4, стр. 371.
[2] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 5, стр. 160.
[3] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 4։

ները պայմանավորում են մի շարք ժողովուրդների շահագործումը մյուսների կողմից. սեփականության գոյություն ունեցող հարաբերությունների ոչնչացման մեջ շահագրգռված է միայն բանվոր դասակարգը: Միայն նա է ընդունակ այդ բանն անելու: Պրոլետարիատի հաղթանակը բուրժուազիայի նկատմամբ դրա հետ մեկտեղ նշանակում է բոլոր ազգային և արդյունաբերական կոնֆլիկտների հաղթահարում, որոնք ներկայումս թշնամանք են ծնում ժողովուրդների միջև»[1]:

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսն առաջին անգամ տվեցին տարբեր երկրների բանվորների եղբայրական միավորման անհրաժեշտության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի տեսական հիմնավորումը: Կոմունիստական կուսակցության մանիֆեստում նրանք արեցին այն հետևությունը, որ ջանքերի միացումը «պրոլետարիատի ազատագրման առաջին պայմաններից մեկն է»[2]:

Այդ անմահ ստեղծագործության մեջ ասված է.

«Ինչ չափով որ ոչնչացվելու է մի անհատի շահագործումը մյուսի կողմից, այն չափով էլ ոչնչացվելու է մի ազգի շահագործումը մյուսի կողմից:

Ազգերի ներսում եղած դասակարգերի անտագոնիզմի հետ միասին կվերանան նաև թշնամական հարաբերություններն ազգերի միջև»[3]:

Մեր մեծ ուսուցիչները չեն սահմանափակվել «Մանիֆեստ»-ում հռչակված «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» լոզունգը առաջ քաշելով ու գիտականորեն հիմնավորելով: Նկատի ունենալով, որ, Ֆ. Էնգելսի հստակ բնորոշմամբ, «բանվոր դասակարգն իր բնությամբ ինտերնացիոնալ է»[4], նրանք իրենց գործունեությամբ պայմաններ ստեղծեցին նրա այդ բնության դրսևորման համար, բանվորների ու բոլոր աշխատավորների միջազգային համերաշխության սկզբունքների պրակտիկ մարմնավորման հիմքը դրեցին: Այդպիսին էր Բանվորների միջազգային ընկերությունը՝ Առաջին Ինտերնացիոնալը, որ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը հիմնեցին 1864 թվականին: Ինտերնացիոնալի ստեղծման կարևոր դրդապատճառներից մեկը Կ. Մարքսը համարում էր «...արհամարհական վերաբերմունքը դեպի եղբայրական այն դաշինքը, որ պիտի գոյություն ունենա տարբեր երկրների բանվորների միջև և նրանց դրդի իրենց ազատագրական պայքարում ամուր պաշտպանել միմյանց, պատժվում է նրանց ցաքուցրիվ ճիգերի ընդհանուր պարտությամբ»[5]:

Քանի դեռ կապիտալիզմն անբաժան իշխում էր ամբողջ աշխարհում, տարբեր երկրների բանվորների միջև եղած եղբայրական դաշինքի հարաբերությունները, իհարկե, չէին կարող դուրս գալ շահագործվողների դասակարգային համերաշխության շրջանակներից: Դրությունն արմատապես փոխվեց Ռուսաստանում պրոլետարական հեղափոխության հաղթանակից հետո: Ի դեմս պատմության մեջ առաջին սոցիալիստական պետության, բոլոր երկրների աշխատավոր ու շահագործվող զանգվածները ձեռք բերեցին մի ռեալ հենարան. այդ պետությունն անմիջապես դարձավ, Մաքսիմ Գորկու արտահայտությամբ, «բոլոր երկրների հեղափոխական պրոլետարիատի հոգևոր հայրենիքը»:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմն իր զարգացման մեջ բարձրացավ նոր աստիճանի: Նրա բնորոշ գիծն է համաշխարհային պրոլետարիատի համախմբումը պրոլետարիատի դիկտատուրայի՝ այն ժամանակ միակ պետության շուրջը: Եթե մյուս երկրները, ասում էր Վ. Ի. Լենինը 1918 թվականի սկզբին, դեռ նոր են հղի հեղափոխությամբ, ապա «մեզ մոտ արդեն ծնվել է միանգամայն առողջ մի զավակ՝ սոցիալիստական հանրապետությունը»[6], և գլխավոր խնդիրը, որը պահանջվում է լուծել համաշխարհային հեղափոխու-

---

1 К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4, стр. 371.

2 Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր երկու հատորում, հատ. I, էջ 34:

3 Նույն տեղը:

4 К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 22, стр. 420.

5 Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր երկու հատորում, հատ. I, էջ 456:

6 В. И. Ленин, ПСС, т. 35, стр. 256.



թյան շահերի, ամբողջ աշխարհի աշխատավորների շահերի համար, այն է, որ պահպանենք, սնուցենք ու աճեցնենք նրան:

Պատմական նոր պայմաններում զարգացնելով բանվոր դասակարգի ինտերնացիոնալ բնույթի մասին թեզիսը, Վ. Ի. Լենինն ընդգծում էր. «...աշխատանքի շահերը պահանջում են տարբեր երկրների, տարբեր ազգերի աշխատավորների միջև ամենալրիվ վստահություն, ամենասերտ դաշինք....

Կապիտալը միջազգային ուժ է: Նրան հաղթելու համար հարկավոր է բանվորների միջազգային միություն, նրանց միջազգային եղբայրություն»[1]:

Միայն պրոլետարիատի ինտերնացիոնալ պայքարը «կարող է պաշտպանել նրա նվաճումները և ճնշված մասսաների համար դուռ բանալ դեպի լավագույն ապագան»[2]:

Պատմական իրադարձությունների ընթացքը վկայեց այդ դրույթի լիակատար հիմնավորվածությունը: Բանվորների միջազգային եղբայրությունն օգնեց պաշտպանելու սոցիալիստական հեղափոխության նվաճումները մեր երկրում և լավագույն ապագայի ուղիներ բացեց մյուս երկրների աշխատավորների համար: Միջազգային պրոլետարական համերաշխությունը մեծ դեր կատարեց իր գոյության, իմպերիալիստական ինտերվենտների ներխուժման դեմ երիտասարդ սովետական պետության մղած պայքարի համար: Բուրժուական երկրների աշխատավորներն իրենց բարձրագույն պարտականությունն էին համարում համախմբվել՝ պաշտպանելու ռեալ գոյություն ունեցող սոցիալիստական պետությունը: «Ձեռքներդ հեռու Սովետական Ռուսաստանից» լոզունգը դարձավ բոլոր երկրների միլիոնավոր զանգվածների մարտական նշանաբանը:

Սովետական երկրի աշխատավորները, իրենց հերթին, միշտ, և քաղաքացիական պատերազմի ու իմպերիալիստական ինտերվենցիայի ամենադժվարին պայմաններում, և մեր պետության պատմության հետագա բոլոր էտապներում, և արդի իրադրության մեջ, պահպանել ու պահպանում են անխախտ հավատարմությունը լենինյան պատգամին. անել «մի երկրում իրագործելի առավելագույնը բոլոր երկրներում հեղափոխությունը զարգացնելու, նրան աջակցելու, այն արթնացնելու հ ա մ ա ր»[3] «...Սովետական իշխանությունը,— ասում էր Վ. Ի. Լենինը կուսակցության VIII համագումարում,— պրոլետարիատի համաշխարհային դիկտատուրան և համաշխարհային հեղափոխությունը ամեն տեսակի ազգային զոհերից բարձր դասեց, որքան էլ այդ զոհերը ծանր լինեին»[4]:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի զարգացման այդ նոր աստիճանը նշանավորվեց Երրորդ՝ Կոմունիստական Ինտերնացիոնալի հիմնադրմամբ (1919 թվականին) և գործունեությամբ: Այնպիսի պայմաններում, երբ գոյություն ուներ հաղթանակած պրոլետարիատի պետությունը, միջազգային պրոլետարական հեղափոխական կազմակերպության ստեղծումն ու աշխատանքը հիրավի պատմական կարևորություն ունեցող գործ էր: Չափազանց մեծ է Կոմինտերնի դերը մեր ժամանակի ամենից ավելի ազդեցիկ քաղաքական ուժը դարձած միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ձևավորման գործում: Կոմինտերնի առաջին կոնգրեսներում Վ. Ի. Լենինի ունեցած ելույթները խորությամբ բացահայտում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի էությունն ու նշանակությունը, առաջադրում և հիմնավորում են միջազգային բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի խնդիրները, նրա ստրատեգիան ու տակտիկան:

Միջպատերազմական ժամանակաշրջանի պայմաններում Կոմունիստական Ինտերնացիոնալը, մարքս-լենինյան ուսմունքի ոգուն համապատասխան, համաշխարհային կոմունիստական շարժման ազգային ջոկատները նախա-

---

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 367:

2 Նույն տեղը, հատ. 21, էջ 191:

3 Նույն տեղը, հատ. 28, էջ 371:

4 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 29, էջ 167:

պատրաստեց ո՛չ միայն շարունակելու հեղափոխական պայքարը այլ միջոց-
ներով, որ պարտադրել էր երկրորդ համաշխարհային պատերազմի յուրահա-
տուկ իրադրությունը, այլև հետագա գործունեության, որ նրանք ծավալեցին
պատերազմը վերջանալուց հետո, նպատակ ունենալով աշխարհը վերափոխել
ի շահ աշխատավորների։ Խորտակելով ֆաշիզմը, սովետական ժողովուրդը
ո՛չ միայն պաշտպանեց իր ազատությունն ու անկախությունը, նա կատարեց
նաև համապատմական մի վեհ միսիա, իր ինտերնացիոնալ պարտքը։ Մի
շարք երկրներում, որտեղ հիտլերյան Գերմանիայի ջախջախումից և Սովետա-
կան Միության հաղթանակից հետո ստեղծվել էր հեղափոխական իրադրու-
թյուն, կոմունիստական կուսակցությունները օգտագործեցին այդ իրադրու-
թյունը՝ բուրժուական կարգը տապալելու և ժողովրդական դեմոկրատիայի
ձևով, պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու համար, որը համապա-
տասխանում է այդ երկրների օբյեկտիվ պայմաններին, նրանց պատմակա-
նորեն ստեղծված առանձնահատկություններին։

Սոցիալիզմի վերածումը համաշխարհային սիստեմի նշանակում էր մի
աստիճան ևս պրոլետարական ինտերնացիոնալիզմի զարգացման գործում։

●

ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ինտերնացիոնալիզմի զարգացման արդի աստիճանն
ունի, առնվազն, երկու էական գիծ։ Դրանցից գլխավորն այն է, որ պրոլետա-
րական ինտերնացիոնալիզմի սկզբունքը դարձել է միջպետական հարաբերու-
թյունների հիմքը։

Նման վերածումը պայմանավորված է դասակարգային պայքարի օրինա-
չափություններով։ Այն երկրներում, որտեղ իշխանության գլուխ է կանգնած
բանվոր դասակարգը, նրա քաղաքականությունը որոշվում է միևնույն գլխա-
վոր շահերով ու խնդիրներով, նա ղեկավարվում է մարքսիզմ-լենինիզմի
սկզբունքներով ու գաղափարախոսությամբ։

Սոցիալական ու տնտեսական կարգի ընդհանրությունը, արմատական
շահերի ու նպատակների համընկնումը, զարգացման ընդհանուր օրինաչա-
փությունները՝ այս ամենն էլ կանխորոշեց նոր տիպի միջազգային հարաբե-
րությունների, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հարաբերությունների
ծագումն ու զարգացումը։ «Մենք,— ընդգծում էր Վ. Ի. Լենինը,— իշխում ենք
ոչ թե բաժանելով, ըստ հին Հռոմի դաժան օրենքի, այլ միացնելով բոլոր աշ-
խատավորներին կենդանի շահերի, դասակարգային գիտակցության անխզելի
կապերով»[1]։

Արժե հիշեցնել, որ Հոկտեմբերյան հեղափոխությունից անմիջապես հետո
սկսեցին երևան գալ նախազուշակներ այն բանի, որ ապագայում սոցիալիզմը
դուրս է գալու մեկ երկրի շրջանակներից և պրոլետարական ինտերնացիոնա-
լիզմի սկզբունքը դառնալու է միջպետական հարաբերությունների հիմք։ Հոկ-
տեմբերի հարուցած հեղափոխական աննախընթաց վերելքի շնորհիվ մի քանի
երկրներում ծագեցին սովետական հանրապետություններ (Հունգարիա, Բավա-
րիա, Սլովակիա, քիչ ավելի ուշ՝ Չինաստանի առանձին շրջաններ և այլն)։
Չնայած բացառիկ դժվարին իրադրությանը, մի շարք երկրներ ընդգրկած հե-
ղափոխական շարժումն արդեն այն ժամանակ կյանքի էր կոչել միանգամայն
նոր միջազգային հարաբերություններ, որոնք հիմնված էին աշխատավորների
եղբայրական համերաշխության սկզբունքների վրա։ Այդպիսի հարաբերու-
թյուններ էին ստեղծվել ՌՍՖՍՀ-ի (իսկ ապա՝ ՍՍՀՄ-ի) և Մոնղոլիայի միջև,
որտեղ 1921 թվականին հաղթանակել էր ժողովրդական հեղափոխությունը,
ՍՍՀՄ և հանրապետական Իսպանիայի միջև 1936—1939 թվականներին։ Սո-
ցիալիստական տիպի միջազգային հարաբերությունների ձևավորման համար
հսկայական կարևորություն ունի նախկին Ռուսաստանյան կայսրության տե-
րիտորիայում գոյացած սովետական պետությունների հարաբերությունների
փորձը մինչև ՍՍՀ Միության կազմավորումը, որի հիսունամյա տարեդարձը

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 26, էջ 588։



որպես մեծ տոն այժմ նշում է սովետական ժողովուրդը, ամբողջ առաջադեմ
մարդկությունը։

Իհարկե, հարաբերությունները սոցիալիստական երկրների միջև զարգա-
նում են ո՛չ ավտոմատ։ Նոր տիպի միջազգային հարաբերությունների ձևա-
վորման ու զարգացման ընթացքում ծագում են որոշ դժվարություններ, որոնք
հիմնականում կապված են այս կամ այն երկրի պատմական ճակատագրի
տարբերությունների, էկոնոմիկայի մակարդակի, ավանդույթների հետ և այլն։

Սոցիալիզմի կառուցման և սոցիալիստական երկրների համագործակցու-
թյան փորձը հաստատում է, որ կարևոր է պահպանել լենինյան պահանջը՝
ազգայինը զուգակցել ինտերնացիոնալի հետ, կարողանալ «Յուրաքանչյուր
երկրին կոնկրետ մոտեցում ունենալով, հետազոտել, ուսումնասիրել, գտնել,
կռահել, ըմբռնել ազգային-առանձնահատուկը, ազգային-սպեցիֆիկը՝ միաս-
նական ինտերնացիոնալ խնդիրը լուծելու համար...»[1]։

«Սոցիալիզմի կառուցման հաջողությունները,— ՍՄԿԿ XXIV համագումա-
րում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— մեծապես կախված են հասարակական զար-
գացման գործում ընդհանուրի և ազգային առանձնահատուկի ճիշտ զուգոր-
դումից։ Այժմ մենք ոչ միայն տեսականորեն գիտենք, այլև գործնականում
համոզվել ենք, որ սոցիալիզմի ուղին, նրա գլխավոր գծերը որոշվում են այն
ընդհանուր օրինաչափություններով, որոնք հատուկ են սոցիալիստական բոլոր
երկրների զարգացմանը։ Մենք գիտենք նաև այն, որ ընդհանուր օրինաչա-
փությունների գործողությունը դրսևորվում է կոնկրետ պատմական պայման-
ներին, ազգային առանձնահատկություններին համապատասխանող տարբեր
ձևերով։ Չհենվելով ընդհանուր օրինաչափությունների վրա, հաշվի չառնելով
յուրաքանչյուր երկրի կոնկրետ պատմական յուրահատկությունը, անհնար է
սոցիալիզմ կառուցել։ Առանց այդ երկու գործոնները հաշվի առնելու անհնար
է նաև ճիշտ զարգացնել սոցիալիստական պետությունների հարաբերություն-
ները»[2]։

Այդ կապակցությամբ անհրաժեշտ է ընդգծել պրոլետարական ինտերնա-
ցիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության միջև եղած անխզելի
կապը։ Դեռ 1893 թվականին Ֆ. Էնգելսը հավանություն է տվել ֆրանսիական
Բանվորական կուսակցության Ազգային խորհրդի կոչին, որի մեջ հակահարված
էր տալիս այն զրպարտիչներին, որոնք պնդում էին, թե իբր ինտերնացիոնա-
լիստները «հրաժարվում են հայրենիքից»։ «Ո՛չ,— ասված էր կոչում,— ին-
տերնացիոնալիզմը չի նշանակում ո՛չ հայրենիքի ստորացում, ոչ էլ նրա զո-
հաբերում... Ընդհակառակը, ինտերնացիոնալիստները կարող են իրենց ան-
վանել միակ հայրենասերներ, քանի որ նրանք միակն են, որ իրենց հաշիվ
են տալիս, թե որքան պետք է բարելավվեն պայմանները, որոնցում կարող են
և կապահովվեն հայրենիքի, անտագոնիստականից համերաշխ դարձած բոլոր
հայրենիքների ապագան ու վեհությունը»[3]։

Այս խոսքերն ավել են այն ժամանակ, երբ պրոլետարական ինտերնա-
ցիոնալիզմը սահմանափակվում էր ճնշվածների համերաշխության շրջանակ-
ներով։ Առավել ևս այժմ, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի պայման-
ներում, սոցիալիստական հայրենասիրությունն անբաժան է պրոլետարական
ինտերնացիոնալիզմից, լիովին դրսևորվում է նրանց դիալեկտիկական փոխա-
դարձ կապը։

Սոցիալիստական հայրենասիրությունը նացիոնալիզմի ու շովինիզմի
ուղիղ հակադրությունն է, ինչպես ինտերնացիոնալիզմը հակադրությունն է
բուրժուական կոսմոպոլիտիզմի։ Վ. Ի. Լենինը մատնանշում էր. «Հայրենիքը,
այսինքն տվյալ քաղաքական, կուլտուրական և սոցիալական միջավայրն ամե-
նահզոր գործոնն է պրոլետարիատի դասակարգային կռվում... Պրոլետարիա-
տը չի կարող անտարբեր ու սառնասիրտ կերպով վերաբերվել իր պայքարի
քաղաքական, սոցիալական և կուլտուրական պայմաններին, հետևապես, նա

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 31, էջ 98։
2 «ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը», 1971, էջ 6—7։
3 К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 39, стр. 458—459.

չի կարող անտարբեր վերաբերվել նաև դեպի իր երկրի ճակատագիրը։ Բայց երկրի ճակատագիրը նրան այն չափով է հետաքրքրում, որչափ այդ վերաբերում է նրա դասակարգային պայքարին, և ոչ թե ինչ-որ բուրժուական, սոցիալ-դեմոկրատի բերանում միանգամայն անպատշաճ «հայրենասիրության» թելադրանքով»[1]։ Սոցիալիստական հասարակարգի մարդկանց համար, որ երկրում էլ որ նրանք ապրեն, գնալով ավելի բնորոշ է դառնում հայրենասիրության զգացումն ամբողջ սոցիալիստական համագործակցության նկատմամբ։ Ազգային պարտքի ըմբռնումը նրանց գիտակցության մեջ բարձրանում է մինչև ինտերնացիոնալ պարտքի ըմբռնման աստիճանի։ Ինչպես ընդգծվում է Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման առթիվ ՍՄԿԿ XXIV համագումարի ընդունած բանաձևում, կուսակցությունը «կարևոր նշանակություն է տալիս բոլոր աշխատավորներին սովետական հայրենասիրության ոգով, սոցիալիստական հայրենիքի համար, սովետական ժողովրդի վիթխարի մեծագործությունների համար հպարտության ոգով, ինտերնացիոնալիզմի ոգով, նացիոնալիզմի, շովինիզմի և ազգային սահմանափակության դրսևորումների նկատմամբ անհաշտության ոգով, բոլոր ազգերի և ազգությունների նկատմամբ հարգանքի ոգով դաստիարակելուն»[2]։

Արդի պայմաններում հրատապ է Վ. Ի. Լենինի հետևյալ ցուցումը. «...Կանգնելով իմպերիալիստական տերությունների հսկայական ճակատի դեմ,— ասում էր Վ. Ի. Լենինը 1920 թվականին,— մենք, որ պայքարում ենք իմպերիալիզմի դեմ, մեզնից ներկայացնում ենք մի միություն, որ պահանջում է ամենասերտ ռազմական համախմբվածություն, և այդ համախմբվածությունը խախտող ամեն տեսակ փորձերը դիտում ենք որպես միանգամայն անթույլատրելի երևույթ, որպես դավաճանություն միջազգային իմպերիալիզմի դեմ պայքարելու շահերին»[3]։ Սոցիալիստական երկրների տնտեսական, քաղաքական, ռազմական համախմբվածությունը, նրանց գործողությունների կոորդինացումը միջազգային ասպարեզում կարևորագույն գործոն է, որը որոշում է սոցիալիզմի երկրների համագործակցության հարաճուն դերն ամբողջ համաշխարհային զարգացման մեջ։

«Սոցիալիզմի հաջողությունները, համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա նրա ազդեցությունը, իմպերիալիստական ագրեսիայի դեմ նրա պայքարի արդյունավետությունը,— ընդգծվում է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1969 թվականի միջազգային խորհրդակցության հիմնական փաստաթղթում,— նշանակալից չափով կախված են սոցիալիստական երկրների համախմբվածությունից»[4]։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի հետևողական կիրառումը հանգեցրեց այն բանին, որ սոցիալիստական համագործակցության երկրներն այժմ կայուն դիրքեր են գրավում աշխարհում։ Մասնավորապես, կոմպլեքսային ծրագրի հիման վրա Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների տնտեսական ինտեգրացիայի խորացման կապակցությամբ, առավել լրիվ չափով են օգտագործվում արտադրության սոցիալիստական եղանակի առավելությունները։ Սոցիալիստական պետություններն ունեն տնտեսական, քաղաքական ու ռազմական այնպիսի միջոցներ, որոնք հուսալիորեն ապահովում են նրանց ժողովուրդների անվտանգությունը և խոչընդոտում են իմպերիալիզմի ագրեսիվ պլանների իրականացմանը։ Հենվելով իր հարաճուն տնտեսական ու պաշտպանական հզորության վրա, սոցիալիզմի համաշխարհային սիստեմը կաշկանդում է իմպերիալիզմին, սահմանափակում հակահեղափոխությունն արտահանելու նրա հնարավորությունները։ Ժողովուրդները

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 15, էջ 232—233։

2 «ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը», էջ 268։

3 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 413։

4 «Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրները արդի էտապում և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնությունը», 1969, էջ 29։



լիակատար հիմքով սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մեջ տեսնում են կայուն խաղաղության, ազատության, անկախության և սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի գլխավոր ուժը։ Իմպերիալիստական ագրեսորների շատ պլաններ ձախողվեցին, քանի որ գոյություն ունի և ակտիվ գործում է համաշխարհային սոցիալիստական սիստեմը։

ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ինտերնացիոնալիզմի զարգացման արդի աստիճանի էական գիծն էլ նրա գործունեության աննախընթաց ուժեղացումն է։ Սոցիալիստական երկրների արտաքին քաղաքականությունը, որը հիմնված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի վրա, նպաստում է միջազգային հեղափոխական պրոցեսին, մեր ժամանակի ազատագրական բոլոր շարժումների հաջողությանը։

Պայքարելով խաղաղության, միջազգային անվտանգության ամրապնդման համար, Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները գործում են մեր մոլորակի ամենալայն ժողովրդական զանգվածների շահերի օգտին։ Համաշխարհային պատերազմը՝ միջուկային զենքի կիրառմամբ կոչընչացներ միլիոնավոր մարդկանց, մեծագույն աղետ կլիներ բոլոր ժողովուրդների համար։ Սոցիալիստական քաղաքականությունը, որը վարվում է հանուն աշխատավորների, այսինքն՝ երկրագնդի բնակչության վիթխարի մեծամասնության շահերի, ակտիվ պայքարում է նման հեռանկարը մարդկության կյանքից բացառելու համար։

Իմպերիալիստական պրոպագանդան, խեղաթյուրելով սոցիալիզմի երկրների արտաքին քաղաքականությունը, պնդում է, թե իբր խաղաղ գոյակցության քաղաքականությունն անհամատեղելի է սոցիալիստական պետությունների կողմից ազգային և սոցիալական ազատագրության համար ժողովուրդների մղած պայքարի պաշտպանության հետ։ Այդ պնդումները սերտորեն կապված են բուրժուական գաղափարախոսների փորձերի հետ՝ կապիտալիստական աշխարհի աշխատավորների հեղափոխական պայքարը և ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը ներկայացնելու որպես դրսի միջամտության հետևանք, որպես արտաքին ուժերի «քայքայիչ գործունեության» արգասիք։ Թեև այսօր գնալով ավելի է պակասում այն մարդկանց թիվը, որոնք հավատում են «Մոսկվայի մեքենայությունների» մասին առասպելներին։ Արևմուտքում հիմա էլ պակաս չեն նման զրպարտչական պնդումները։

Իմպերիալիստական քաղաքագետներն ու պրոպագանդիստները ձևացնում են, թե իբր չեն հասկանում, որ կապիտալիստական իրականությունն է ծնում ժողովրդական զանգվածների շարժումն ընդդեմ շահագործողական կարգերի, ընդդեմ սոցիալական ու ազգային ճնշման։ Սոցիալիստական երկրների ինտերնացիոնալ համերաշխությունը միջազգային հեղափոխական շարժման հետ ոչ թե նշանակում է դրսից «առաջ մղել» հեղափոխական պրոցեսը, այլ այն, որ սոցիալիստական արտաքին քաղաքականությունը համապատասխանում է ամբողջ աշխարհի ժողովուրդների արմատական շահերին, նպաստավոր պայմաններ է ստեղծում առաջադիմական ուժերի գործողությունների համար։ Դրանում է դրսևորվում, մասնավորապես, նրա ինտերնացիոնալիզմը, նրա հավատարմությունը լենինյան պատգամին. «Առաջավոր երկրների հեղափոխականների և բոլոր կեղեքված ժողովուրդների հետ դաշինք կնքած ընդդեմ ամեն տեսակ և բոլոր իմպերիալիստների՝ այս է պրոլետարիատի արտաքին քաղաքականությունը»[1]։

Սոցիալիստական երկրների արտաքին քաղաքականությունը, որն ուղղված է ժողովուրդների միջև խաղաղ բարի դրացիական հարաբերություններ հաստատելու նպատակին, կապիտալիստական շրջաններին զրկում է նրանց հիմնական հենարանից, հեշտացնում սոցիալիստական առաջադիմության, խաղաղության և դեմոկրատիայի համար կապիտալիստական երկրների առա-

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 25, էջ 93։

ջադիմական ուժերի մղած պայքարը։ Սոցիալիստական արտաքին քաղաքականության բուն բովանդակությունը, որը տոգորված է մարդասիրական գաղափարներով, նպաստում է սոցիալիզմի միջազգային հեղինակության աճին, սոցիալիստական գաղափարների տարածմանն ու հաստատմանը։ Կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թվականի միջազգային խորհրդակցության մասնակիցները նշեցին խաղաղ գոյակցության քաղաքականության հսկայական դրական նշանակությունը հակաիմպերիալիստական պայքարի համար։ «Պատերազմի հրձիգների, հետադիմականների, զենքի ֆաբրիկանտ-մոնոպոլիստների դեմ ուղղված այդ քաղաքականությունը,— ասված է խորհրդակցության հիմնական փաստաթղթում,— համապատասխանում է ճնշման ու շահագործման բոլոր ձևերի դեմ մղվող հեղափոխական պայքարի ընդհանուր շահերին, նպաստում է բոլոր ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը, տարբեր հասարակարգ ունեցող երկրների տնտեսական, գիտատեխնիկական և այլ կարգի արդյունավետ համագործակցության զարգացմանը՝ հանուն սոցիալական առաջադիմության»[1]։

Սոցիալիստական պետությունները վճռականորեն հանդես են գալիս հակահեղափոխության իմպերիալիստական արտահանման, ուրիշ երկրների ներքին գործերին միջամտելու դեմ, որն ուղղված է հետադիմական ռեժիմներն ու հակահեղափոխական ուժերը պաշտպանելու նպատակին։ Հետպատերազմյան պատմությունը քիչ օրինակներ չի տվել այն բանի, որ Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության հաստատակամ պաշտպանության շնորհիվ իմպերիալիստները չկարողացան ճնշել անկախ զարգացման ուղին թևակոխած ժողովուրդների շարժումները։ Շատ երկրներ, որոնք թոթափել են գաղութային և իմպերիալիստական ճնշման լուծը, Սովետական Միության և սոցիալիստական մյուս պետությունների օգնության շնորհիվ պաշտպանեցին իրենց քաղաքական անկախությունն ու ազատությունը։

Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների նյութական, քաղաքական ու ռազմական օգնությունը, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման և ամբողջ առաջադեմ մարդկության համերաշխության հետ միասին հերոսական վիետնամական ժողովրդին հնարավորություն տվեց ձախողելու ամերիկյան ագրեսորների դիտավորությունները, ետ մղելու ամենահզոր իմպերիալիստական տերության ռազմական հարձակումը։ Միացյալ Նահանգները չկարողացան ռազմական հաղթանակի հասնել Հնդկաչինում։

Սոցիալիզմի երկրների հետևողական ինտերնացիոնալիստական կուրսը վառ արտահայտություն է գտնում նաև այն բանում, որ նրանք պաշտպանեցին արաբ ժողովուրդներին 1956 թվականի եռյակ ագրեսիայի, 1967 թվականի իրադարձությունների ժամանակ, իսրայելական ագրեսիայի դեմ մղվող պայքարում։ Այսօր այդ աջակցությունն արաբ ժողովուրդների հաջողության կարևորագույն պայմանն է սոցիալ-տնտեսական առաջադիմության, իսրայելական ագրեսիայի հետևանքների վերացման համար մղվող պայքարում։

Ինտերնացիոնալիզմի սկզբունքները որոշում են նաև սոցիալիստական երկրների տնտեսական օգնությունը զարգացող պետությունների ժողովուրդներին։ Սոցիալիզմի երկրների և երիտասարդ ազգային պետությունների ժողովուրդների կենսական շահերի օբյեկտիվ ընդհանրությունը պայմանավորում է առավել ընդլայնվող համագործակցությունը նրանց միջև։ Դրա մասշտաբները վկայում են թեկուզ այն փաստը, որ վերջին մեկ և կես տասնամյակում կնքված համաձայնագրերը նախատեսում են սոցիալիստական պետությունների օգնությամբ զարգացող երկրներում կառուցել մոտ 2800 օբյեկտներ։ Դրանց կեսից ավելին արդեն հանձնվել է շահագործման։ Ավելի քան 700 օբյեկտ ստեղծվում է Սովետական Միության օգնությամբ։

Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդները բարձր են գնահատում Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների ին-

[1] «Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրները արդի էտապում և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնությունը», էջ 46—47։



տերնացիոնալիստական քաղաքականությունը։ Վերջերս եղույթ ունենալով ռադիոյով ու հեռուստատեսությամբ, Չիլիի պրեզիդենտ Սալվադոր Ալյենդեն նշեց սոցիալիստական երկրների աջակցության մեծ նշանակությունը չիլիական ժողովրդի համար՝ միջազգային ռեակցիայի, ամերիկյան մոնոպոլիաների թշնամական գործողությունների պայմաններում։ «Չիլիի ծանր ու դժվարին պահին,— ընդգծեց Սալվադոր Ալյենդեն,— օգնության հասան սոցիալիստական երկրները, որոնք, ելնելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքից, վարկեր տրամադրեցին Չիլիի համար արտոնյալ պայմաններով»։ Բանգլադեշի Ժողովրդական Հանրապետության պրեմիեր-մինիստր Մուջիբուր Ռախմանը Սովետական Միությունն անվանեց «ազատության, սոցիալական արդարության և լավագույն ապագայի համար մարդկության մղած պայքարի պիոներ»։ Երախտագիտություն հայտնելով սովետական ժողովրդին՝ Բանգլադեշի ժողովրդին նրա ցույց տված աջակցության համար, Մուջիբուր Ռախմանն ընդգծեց, որ «Սովետական Միությունը միշտ էլ եղել է ամբողջ աշխարհի ճնշված ժողովուրդների կողմը»։

ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ինտերնացիոնալիզմի գաղափարներով է տոգորված սովետական պետության ամբողջ արտաքին քաղաքական գործունեությունը։ Դրանք են որոշում նրա էությունն ու բնույթը, սովետական դիվանագիտության կոնկրետ միջոցառումները միջազգային ասպարեզում։

«Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը,— ասում էր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— իր ինտերնացիոնալ պարտքն է համարել ու համարում է ըստ ամենայնի նպաստել սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորության հետագա աճին... Մենք ուզում ենք, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը լինի նոր հասարակարգը համատեղ կառուցող ու պաշտպանող, փորձով ու գիտելիքներով միմյանց հարստացնող ժողովուրդների համերաշխ ընտանիք, որի մեջ երկրագնդի մարդիկ տեսնեն ազատ ժողովուրդների ապագա համաշխարհային միության նախատիպը»։

Սոցիալիստական երկրները ստիպված են այդ խնդիրը կատարել համառ պայքարի պայմաններում ընդդեմ իմպերիալիզմի, որը ձգտում է խանգարել նոր աշխարհի առաջընթաց զարգացումը, թուլացնել այն գաղափարների ձգողական ուժը, որոնք մարմնավորվում են իրականորեն գոյություն ունեցող սոցիալիզմի կողմից։

Իմպերիալիստական ստրատեգներն ամենից առաջ իրենց հույսերը դնում են սոցիալիզմի ուժերը միմյանցից անջատելու, նրանց համախմբվածությունն ու միասնությունը խարխլելու վրա։ Գործի է դրվում ամենախորամանկ տակտիկա, որի նպատակն է կենտրոնախույս տենդենցներ առաջացնել սոցիալիստական համագործակցության ներսում, գալվանացնել նացիոնալիստական տրամադրությունները։

Բուրժուական կարգի կողմնակիցները լավ գիտեն, որ կա միայն մեկ սոցիալիզմ. Նրանք հիանալի հասկանում են, որ ինտերնացիոնալ համերաշխության սկզբունքներից հրաժարումը թուլացնում է սոցիալիզմի ուժերը և ձեռնտու է բուրժուազիային։ Թե իմպերիալիստական ստրատեգներն ինչպիսի մեծ հույսեր են դնում նացիոնալիզմի ու շովինիզմի վրա, կարելի է դատել այն գոհունակությունից, որ նրանց մեջ առաջացնում է ՉԺՀ-ի ղեկավարների քաղաքականությունը, որոնք ոտնահարել են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները և վարում են մեծապետական նացիոնալիստական կուրս։

Սակայն պատմական զարգացման իրական ընթացքը խորտակում է իմպերիալիստական գործիչների հաշիվները։ Գնալով ավելի են ամրապնդվում համաշխարհային սոցիալիզմի դիրքերը, և այդ բանում կարևորագույն դեր է կատարում այն փաստը, որ մարքս-լենինյան կուսակցությունների կողմից ղեկավարվող երկրները հետևողականորեն զարգացնում են հարաբերություն-

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 31, էջ 600։

ները սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա, համերաշխ գործում են համաշխարհային ասպարեզում։ Ելույթ ունենալով սովետական արհմիությունների XV համագումարում, Լ. Ի. Բրեժնևն ընդգծում է. «Մենք ունենք սոցիալիստական համագործակցության երկրների ընդհանուր համաձայնեցված գիծ համաշխարհային քաղաքականության բոլոր հիմնական հարցերի վերաբերյալ։ Փորձը ցույց է տալիս, որ դա անգնահատելի նշանակություն ունի մեր արտաքին գործերը հաջող վարելու համար»։

Սոցիալիստական երկրների ինտերնացիոնալիստական արտաքին քաղաքականությունն իր արտահայտությունն է գտնում եղբայրական համագործակցության տարբեր ձևերում՝ ինչպես երկկողմանի, այնպես էլ բազմակողմանի հիմքի վրա, Վարշավայի պայմանագրի կազմակերպության, Տնտեսական փոխօգնության խորհրդի, միջպետական այլ կազմակերպությունների շրջանակներում։

Սոցիալիզմի ուժերի հետագա ամրապնդման, նրա հեղինակության ու ազդեցության աճի նոր հաստատումը հանդիսացան սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավարների 1972 թվականի հուլիսի վերջին Ղրիմում տեղի ունեցած բարեկամական հանդիպման արդյունքները։ Հանդիպման մասնակիցները միահամուռ հաստատեցին սոցիալիստական պետությունների ակտիվ խաղաղասիրական քաղաքականության խոր կենսականությունն ու գործունեությունը, ՍՄԿԿ XXIV համագումարի առաջ քաշած խաղաղության ծրագրի միջազգային մեծ նշանակությունը։ Հանդիպումը մեծ քայլ էր սոցիալիստական երկրների միասնության ու փոխգործողության ամրապնդման ճանապարհին, նոր ուժով ցուցադրեց նրանց համագործակցության արդյունավետությունը քաղաքականության, էկոնոմիկայի, միջազգային հարաբերությունների և պաշտպանության բնագավառում, նրանց կողմից իրենց ազգային և ինտերնացիոնալ խնդիրների կատարման գործում։ Նա նորից ցույց տվեց, որ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հետևողական իրականացումն ապահովում է եղբայրական երկրների յուրահատուկ և ընդհանուր շահերի առավել լրիվ իրագործումը։

Այժմ սովետական ժողովուրդն արժանավայել դիմավորում է ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը։ Դա պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիրավի մեծ տոնն է։ «ՍՍՀՄ-ը համաշխարհային ասպարեզում հանդես է գալիս,— ասված է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— որպես մի ուժ, որը հաստատ և հետևողականորեն վարում է խաղաղության ու բարեկամության քաղաքականություն, պաշտպանում ժողովուրդների իրավահավասարության լենինյան սկզբունքները, վճռականորեն հանդես գալիս գաղութատիրության, նեոգաղութատիրության ու ռասիզմի դեմ, ազգային ճնշման բոլոր ձևերի դեմ։ Այդ քաղաքականությունը եղել և մնում է իմպերիալիզմի ու ռեակցիայի ակտիվ ստրատեգիային հակազդող կարևորագույն գործոնը, զավթողական պատերազմների դեմ, ժողովուրդների անվտանգության ու ազատության համար, սոցիալական առաջադիմության համար մղվող ակտիվ պայքարի զենքը... Ներկայումս Սովետական Միությունը ամբողջ աշխարհի առջև կանգնում է որպես կոմունիզմ կառուցող երկիր, ժողովուրդների բարեկամության միջնաբերդ, միջազգային հեղափոխական-ազատագրական շարժման պատվար»։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա իրականացվող ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունը լիովին համապատասխանում է սովետների երկրի պատմական այդ մեծ առաքելությանը։

«Международная жизнь», № 10, 1972 г.

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ ՑԱՆՑԻ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՄԵԹՈԴՆԵՐԻ ՍԻՍՏԵՄԸ

Ս. ԿԱՄԵՆԻՑԵՐ

Արդի պայմաններում արտադրության կառավարման հիմնական խնդիրն է նրա արդյունավետության մշտական բարձրացումը։ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նշված է, որ «...կառավարման և պլանավորման սիստեմի ու մեթոդների կատարելագործման նպատակը պետք է լինի ամենից առաջ ապահովել հանրային արտադրության բազմակողմանի ինտենսիվացումը և նրա արդյունավետության բարձրացումը, որոնք երկրի տնտեսական զարգացման հիմնական ուղին են ինչպես մոտակա տարիներին, այնպես էլ երկարատև ժամանակաշրջանում, հանդիսանում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման կարևորագույն պայմանը»։

Ժամանակակից արտադրության կառավարումը կարելի է բնութագրել որպես աշխատավորների կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների առավել արդյունավետ կատարումն ապահովող միջոցառումների սիստեմ։

Արտադրական յուրաքանչյուր օղակում կառավարման պրոցեսն իրականացվում է կառավարող այնպիսի սիստեմով, որն ընդգրկում է ղեկավար կադրերը, կառավարման օրգանների կառուցվածքը, աշխատավորների կոլեկտիվի վրա ազդելու մեթոդները, արտադրական ինֆորմացիայի կազմակերպումը և կառավարման տեխնիկան։ Կառավարող և կառավարվող սիստեմների նպատակը որոշվում է տնտեսական հիմնական օրենքի գործողությամբ։ Դրանք պետք է ապահովեն սահմանված որակով ու քանակով անհրաժեշտ արտադրանքի պատրաստումն ու առաքումը սպառողներին՝ ռացիոնալ օգտագործելով արտադրական ռեսուրսները, աշխատավորների համար ապահովելով բարձր արտադրողական աշխատանքի նորմալ պայմաններ, բարձրացնելով աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակը։ Սակայն նպատակին հասնելու գործում տարբեր են այդ սիստեմների մասնակցության եղանակները։

Կառավարող սիստեմում արտադրության պրոցեսը ձևավորվում է ինֆորմացիոն կերպով։ Այն անմիջականորեն որևէ նյութական արժեք չի ստեղծում։ Բայց, ընտրելով լավագույն որոշումներ, կառավարող սիստեմն ապահովում է արտադրության արդյունավետության բարձրացումը. կազմակերպում է նյութերի, էներգիայի մատակարարումը, նպաստում է արտադրության անընդմեջ ու ռիթմիկ ընթացքին. ուսումնասիրելով պատրաստվող արտադրանքի պահանջարկը և որոշելով դրա տեսականին, օգնում է հասարակության պահանջմունքների առավել լրիվ բավարարմանը և այլն։

Կառավարող ու կառավարվող սիստեմների միջև գոյություն ունի բարդ

փոխադարձ կապ։ Կառավարող սիստեմն առաջադրում է նպատակները և
որոշում դրանց հասնելու մեթոդները, պլանավորում, կոորդինացնում, կար-
գավորում, վերլուծում և վերահսկում է կառավարվող սիստեմի գործունեու-
թյունը։ Միաժամանակ անմիջականորեն արտադրության պրոցեսում զբաղ-
ված աշխատավորների կոլեկտիվը ակտիվ մասնակցում է կառավարմանը,
քննարկելով պլանային առաջադրանքները, առաջարկություններ մտցնելով
ներարտադրական ռեզերվների մոբիլիզացման վերաբերյալ, օգնելով կառա-
վարման վարչական օրգաններին՝ վերահսկելու արտադրության ընթացքին։
Կառավարման սիստեմի բոլոր տարրերից ամենաշարժունն ու բարդը աշ-
խատավորների կոլեկտիվի վրա ներգործելու մեթոդներն են, որոնք արտա-
հայտում են կառավարող և կառավարվող սիստեմների փոխադարձ կապի
ձևերը։ Կառավարման կազմակերպման գործում առանձնահատուկ տեղ են
գրավում մեթոդները։ Կարելի է հաստատ ասել, որ կառավարման օրգաննե-
րի, ինֆորմացիայի, տեխնիկայի կառուցվածքը կառավարման առավել ներ-
գործուն մեթոդների ընտրության և դրանց ճիշտ կիրառման անհրաժեշտ
պայմանն են։

Կառավարման մեթոդների սիստեմը հիմնվում է օբյեկտիվորեն գործող
օրենքների կիրառման վրա և նպաստում տնտեսական պրակտիկայում դրանց
առավել լրիվ կենսագործմանը։ Անկախ կառավարվող սիստեմի առանձնա-
հատկություններից (արդյունաբերություն, գիտություն, գյուղատնտեսություն
և այլն), կառավարման մակարդակից (ճյուղ, ձեռնարկություն, արտադրամաս
և այլն) ու նրա ֆունկցիաներից, մեթոդները կառավարչական գործունեու-
թյան էությունն ու հիմնական բովանդակությունն են, քանի որ դրանց միջո-
ցով են իրականացվում կառավարման խնդիրները։ Կառավարվող օբյեկտի
առանձնահատկությունների ու կառավարման ֆունկցիաների համեմատ փոխ-
վում են մեթոդների դրսևորման ձևերը, դրանց հարաբերակցությունը. բայց
մեթոդների բնույթն ամբողջովին պետք է կապված լինի կառավարման ողջ
գործունեության հետ։

Սոցիալիստական հանրային արտադրության կառավարման մեթոդները
բաժանվում են. տ ն տ ե ս ա կ ա ն, որոնք ընդգրկում են պլանավորումը,
տնտեսական հաշվարկը, ձեռնարկությունների կոլեկտիվների տնտեսական
խթանումն այնպիսի լծակների օգտագործմամբ, ինչպիսիք են՝ գինը, շա-
հույթը և դրա բաշխման ձևերը, ֆինանսները, վարկը, նյութական խթանու-
մը (աշխատավարձի, պարգևատրման կազմակերպումը, խրախուսման ֆոն-
դերի բաշխումը) և այլն. կ ա զ մ ա կ ե ր պ ա կ ա ն, որոնք կապված են
կառավարման օրգանների կառուցվածքի ձևավորման, կադրերի ընտրության,
պատրաստման ու տեղաբաշխման, կառավարման տեխնոլոգիայի կազմա-
կերպման հետ, ներառյալ ինֆորմացիոն սիստեմը և կառավարման տեխնի-
կան (դրա մեջ են մտնում նաև վարչական ունակությունը, կատարման
վերահսկումը, արտադրության ընթացքի կարգավորումը). դ ա ս տ ի ա ր ա կ-
չ ա կ ա ն մեթոդներ, որոնց նպատակն է աշխատավորների բարոյական
խրախուսումը, ձեռնարկության առջև ծառացած խնդիրների կատարման հա-
մար նրանց նախաձեռնության ու պատասխանատվության ոգով դաստիա-
րակումը։
Կառավարման պրոցեսում մեթոդներն օգտագործվում են որպես միաս-
նական սիստեմ, ուր օրգանապես կապակցված են բոլոր տարրերը։ Այսպես;
տնտեսական ամեն մի մեթոդի օգտագործում պահանջում է համապատաս-
խան բացատրական աշխատանք կոլեկտիվի հետ, մեթոդի նորմատիվային
ամրապնդում և այլն։ Քննության առնենք մեթոդների յուրաքանչյուր խումբ
առանձին-առանձին, որոշելու համար դրանց էությունն ու օգտագործման
ոլորտը։
Կառավարման տնտեսական մեթոդները հիմնված են սոցիալիզմի տըն-
տեսական օրենքների գործողության մեխանիզմի օգտագործման վրա։ Տըն-
տեսության վարման պլանային մեթոդը սոցիալիստական արտադրության
կարևորագույն առանձնահատկությունն ու առավելությունն է։ Վ. Ի. Լենինը



գրել է, որ «Սոցիալիզմն աներևակայելի է... առանց պետական պլանաչափ
կազմակերպության, որը տասնյակ-միլիոնավոր մարդկանց ենթարկում է
պրոդուկտների արտադրության և բաշխման գործում միասնական նորմայի
ամենախիստ պահպանմանը[1]։ Արտադրության պլանաչափ, համամասնա-
կան զարգացման օրենքի կիրառումը պայմաններ է ստեղծում ո՛չ միայն
պլաններ կազմելու և իրականացնելու, այլև այնպիսի տնտեսական լծակ-
ների պլանաչափ օգտագործման համար, ինչպիսիք են՝ գինը, վարկը, շա-
հույթը, որոնք արժեքի օրենքի կատեգորիաներն են։ Պլանավորումը, որպես
տնտեսական ղեկավարման մեթոդ, ընդգրկել է կառավարման բոլոր մակար-
դակները՝ արտադրության սկզբնական օղակներից մինչև ամբողջ ժողովրդա-
կան տնտեսությունը։
Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի գործունեությունը որոշ-
վում է հեռանկարային, ընթացիկ և օպերատիվ պլաններով։ Հաշվի առնելով
հեռանկարային պլանների վճռական նշանակությունը ժողովրդական տնտե-
սության բոլոր օղակների զարգացման համար՝ ՍՄԿԿ XXIV համագումարը
որոշեց. «Սահմանել, որ ձեռնարկություններն ու կոլտնտեսությունները, ա-
ռաջնորդվելով ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975
թվականների հնգամյա պլանի առաջադրանքներով, մշակում են իրենց հընգ-
ամյա պլանները, որոնք ապահովում են հնգամյակի առաջադրանքների կա-
տարումը աշխատանքային և նյութական ռեսուրսների նվազագույն ծախսում-
ներով»։
Միավորումների ու ամբողջ ճյուղերի գործունեության գնահատման հա-
մար չափանիշ է ծառայում հեռանկարային և տարեկան պլանների կատար-
ման ընթացքը։ Դա նպաստում է այն բանին, որ ձեռնարկությունները լուծեն
զարգացման ստրատեգիական խոշոր խնդիրներ, այն հաշվով, որ ընթացիկ
պլանային առաջադրանքները կատարելու ձգտումը չխափանի ընդհանուր հե-
ռանկարները։ Կոմունիստական շինարարության խնդիրներին համապատաս-
խան, հեռանկարային պլանները որոշում են ժողովրդական տնտեսության
ճյուղերի, տնտեսական շրջանների, միավորումների և ամեն մի առանձին
ձեռնարկության զարգացման ուղղությունը, տեմպերն ու համամասնություն-
ները երկար ժամանակվա համար։ Դրանցում սահմանվում են գիտատեխնի-
կական առաջընթացի ուղիները, նախատեսվում ձեռնարկությունների կա-
ռուցման ու վերակառուցման հարցերի լուծումը, սահմանվում տարեկան
առաջադրանքները։ Ընթացիկ պլանները կազմվում են հեռանկարային պլանի
առաջադրանքներին համապատասխան և հաշվի առնելով դրա կատարման
ընթացքը։ Պլանավորման սիստեմի կարևոր մասն է օպերատիվ պլանավորու-
մը, որն արտադրության գործուն կարգավորման և կոորդինացման ձևերից
մեկն է։ Սոցիալիստական հասարակարգում պլանավորումը կառավարման
պրոցեսում որոշումներ ընդունելու հիմնական ձևն է. սակայն տարբեր մա-
կարդակներում այլ են պլանի կառուցվածքը, ցուցանիշների սիստեմը, պլա-
նավորման տեսակների հարաբերակցությունը։
Պլանավորումը հնարավորություն է ընձեռում արտադրական ամեն մի
օղակի համար սահմանելու ռեալ, հստակ և լարված առաջադրանքներ, որոնց
հաջող կատարմամբ պետք է շահագրգռված լինեն արտադրության բոլոր
օղակները։ Դա հնարավոր է ժողովրդատնտեսական, ճյուղային և ներարտա-
դրական շահերի միասնությամբ միայն, որը կարող է ապահովվել արտադրու-
թյան տնտեսական խթանման ողջ սիստեմով։
Տնտեսական խթանման կարևորագույն լծակ է գինը, որը պետք է զարկ
տա արտադրանքի առավել առաջավոր, բարձրորակ տեսակների արտադրու-
թյանը։ Վերջին տարիներին մշակվում են հատուկ մեթոդական դրույթներ
գների հիմնավորման կարգի, կազմակերպման ու մեթոդների մասին։ Գնագո-
յացման կատարելագործման հիմնական ուղղությունը գների մակարդակի
մոտեցումն է արժեքի մեծությանը, այսինքն՝ հասարակականորեն անհրա-
ժեշտ ծախսումների մակարդակին։ Սակայն, պետք է նկատի ունենալ, որ

1 Տե՛ս Երկեր, հատ. 27, էջ 414։

գները, արժեքի չափման դերից բացի կատարում են նաև ազգային եկամտի վերաբաշխման միջոցի դեր, արտադրանքի առանձին տեսակների արտադրության ու սպառման խրախուսման միջոցի դեր։ Տնտեսական ղեկավարները կարող են ջանալ ավելացնել ավելի շահութաբեր առարկաների թողարկումը և սահմանափակել պակաս շահավետ առարկաների արտադրությունը։ Այս տենդենցի թուլացման համար, մեր կարծիքով, հարկավոր է իրացման պլանի կատարման մեջ հաշվի առնել միայն այն արտադրանքը, որը պատրաստված ու առաքված է սահմանված պլանի, ֆոնդերի ու կարգագրերի համաձայն։ Բայց դա մասնավոր լուծում է։ Հեռանկարում գինը պետք է ապահովի պետության և ձեռնարկության շահերի միասնությունը, այսինքն՝ գների սիստեմը պետք է կառուցել այնպես, որ ձեռնարկության համար առավել շահավետ լինեն այն առարկաները, որոնք ժողովրդական տնտեսությանն ավելի մեծ չափով են անհրաժեշտ։ Ուշադրավ է բարձրորակ արտադրանքի գնի վրա հավելում սահմանելը, որը կիրառվում է մի շարք ճյուղերում (էլեկտրատեխնիկական, սարքաշինական, քիմիական և նավթարդյունաբերության մեքենաշինության մեջ և այլուր)։

Գնագոյացման պրոբլեմի հետ սերտորեն առնչված է նոր արտադրանքի արտադրության յուրացումը։ Որպես կանոն, նոր արտադրանքի գները սահմանվում են նրա ինքնարժեքի չափով, հաշվի առնելով շահույթի մի փոքրիկ մասը, որը սահմանվում է ֆինանսական պլանով։ Այդ յուրացմանը զուգընթաց նոր արտադրանքի արտադրության ծախքերը նվազում են, և աճում է շահութաբերությունը, որը հաշվարկվում է որպես շահույթի հարաբերություն ինքնարժեքի նկատմամբ։ Ստացվում է, որ սկզբնական շրջանում առավել նորագույն արտադրանքը պատրաստողին տալիս է նվազագույն տնտեսական արդյունք։ Այդ դժվարացնում է նոր առարկաների յուրացումը և արգելակում վաղուց յուրացված և հնացող առարկաները արտադրությունից հանելը։ Բնականաբար, նման դրությունը չի կարելի նորմալ համարել։ Այդ թերությունը վերացնելու նպատակով արտադրանքի նոր տեսակների գները սահմանվում են՝ հաշվի առնելով ո՛չ միայն դրանց արտադրության հետ կապված ծախսերը, այլև արտադրանքի սպառողական հատկությունների հարաբերակցությունը՝ այն համադրելով նախկինում արտադրված նրա նմանակների հետ։ Բացի դրանից, աստիճանաբար իջնում են հնացած արտադրանքի գները, որը անարդյունավետ է դարձնում դրա արտադրությունը։

Այս դեպքում, գներն օգտագործելով որպես տնտեսական ներգործության լծակ, կառավարման սիստեմն ապահովում է ժողովրդական տնտեսության համար անհրաժեշտ արտադրանքի նոր տեսակների յուրացման արագացումը։ Քանի որ սոցիալիստական հասարակարգում գները սահմանվում են կենտրոնացված կարգով, այդ մեթոդը համապետական և ճյուղային կառավարման մենաշնորհն է։ Սակայն գնալով այն ավելի լայնորեն է օգտագործվում նաև ներգործարանային նպատակներով՝ պայմանական-հաշվարկային գներ մշակելիս ու արմատավորելիս։

Մեծ նշանակություն ունի նոր տեխնիկայի յուրացումը խթանելու մեթոդների մշակումը, որն ամեն մի ձեռնարկությունում կապված է ավելի բարձր ծախսերի, արտադրողականության որոշ անկման ու արտադրանքի արտադրության և իրացման ծավալի հետ և դանդաղեցնում է շահութաբերության աճման տեմպերը։ Վերջերս սահմանվել է նոր կարգ, որի համաձայն յուրացման հատուկ կենտրոնացված ֆոնդի հաշվին ֆինանսավորում են նոր տեխնիկայի յուրացման հետ կապված լրացուցիչ ծախսերը։ Քանի որ բոլոր ձեռնարկություններն էլ որոշակի գումարներ են մուծում այդ ֆոնդի օգտին՝ անկախ նոր տեխնիկայի յուրացման աշխատանքների ծավալից, շահագրգռված են լինում մեծացնելու այդ աշխատանքների ծավալը, որը նրանց հնարավորություն է տալիս ստանալու կենտրոնացված ֆոնդ մուծված միջոցների հնարավորին չափ ավելի մեծ մասը։ Նոր տեխնիկայի յուրացման ժամանակաշրջանում հանրագումարային տեխնիկատնտեսական ցուցանիշների տատանումները համահարթելու նպատակով սահմանված է, որ ելակետային



բազան, որով գնահատվում է ձեռնարկության և միավորման աշխատանքը, հանդիսանում է հնգամյակն սկսվելուն նախորդող տարին, իսկ աշխատանքի արդյունքները որոշվում են հնգամյակի սկզբից բոլոր տարիներին ստացված ցուցանիշների գումարով։ Ընդհանուր հավանության է արժանացել ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության գիտության ու տեխնիկայի զարգացման միասնական ֆոնդ ստեղծելու փորձը։

Պլանավորման և տնտեսական խթանման նոր պայմաններում ֆինանսական ապահովման կարևոր աղբյուր է դարձել արտադրության զարգացման ֆոնդը։ Այն գոյանում է կոլեկտիվի աշխատանքի արդյունքների հաշվին, որն անմիջականորեն ապահովում է ձեռնարկության շահագրգռվածությունը տեխնիկական առաջադիմության արագացմամբ։ Հիմնական ֆոնդերի օգտագործումը բարելավելու և շրջանառու միջոցների շրջանառությունն արագացնելու նպատակով սահմանված է ֆոնդավճար, որը բյուջեին է հատկացվում յուրաքանչյուր ձեռնարկության շահույթից։ Այս բոլոր մեթոդներն ապահովում են գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումը և դրա հիման վրա՝ արտադրության արդյունավետության բարձրացումը։

Տնտեսական խթանումն օգտագործելու մեխանիզմին վերաբերող մի շարք պրոբլեմներ դեռևս լուծման կարոտ են։ Օրինակ, ինչպես հարկն է մշակված չէ տնտեսական սանկցիաների սիստեմը՝ ձեռնարկությունների և այլ կազմակերպությունների ստանձնած պարտավորությունները չկատարելու համար։ Պատշաճ չափով կայուն չէ ձեռնարկությունների՝ խրախուսման ֆոնդերին հատկացվող միջոցների նորմատիվների սահմանման կարգը։ Տնտեսական խթանման սիստեմի առանձին մասերի գործողության արդյունավետությունն իջնում է արտադրանքի անհիմն բարձր շահութաբերության հետևանքով այնպիսի առանձին ձեռնարկություններում, որոնց ազատ մնացորդը շահույթում կազմում է բարձր տեսակարար կշիռ։ Դրա հետ մեկտեղ, չնայած մի քանի չլուծված հարցերի, հարկավոր է նշել, որ տնտեսական խթանման հիմնական սկզբունքներն ստուգված են փորձով, և դրանց օգտագործումը նպաստում է արտադրության արդյունավետության բարձրացմանը։

Կառավարման տնտեսական մեթոդներին է վերաբերում նյութական խթանման կազմակերպումը, որի օբյեկտիվ հիմքն է առաջին հերթին ըստ աշխատանքի բաշխման օրենքի օգտագործումը։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ սոցիալիզմը հարկավոր է կառուցել «Ո՛չ թե անմիջական խանդավառության վրա հենվելով..., այլ... խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի վրա»[1]։ Նյութական խթանման սկզբունքները կենսագործվում են աշխատավարձի, պարգևատրման սիստեմի կազմակերպման և խրախուսման ֆոնդերի բաշխման միջոցով։

Նյութական խթանման հիմնական մեթոդ է աշխատավարձի կազմակերպումը, թեև աշխատավարձի կազմակերպման շատ տարրեր (տարիֆային ցանցերը, դրույքները, պարգևատրման որոշ ձևեր) որոշվում են համապետական կամ ճյուղային մասշտաբով, առանձին հարցեր (վարձատրության ձևերի ընտրությունը, նորմաների սահմանումը, պարգևատրման կարգը և այլն) լուծվում են անմիջականորեն ձեռնարկություններում, և այդ իրավունքի օգտագործումը կարող է մեծ չափով խթանել արտադրության արդյունավետության բարձրացմանը։

Աշխատավարձի կազմակերպման մեթոդների արդյունավետ կիրառման ասպարեզում հատկապես ուշագրավ են աշխատանքի վարձատրության ձևերի ընտրությունը, աշխատողների տարբեր կատեգորիաների աշխատանքի վարձատրության հարաբերակցությունը և աշխատանքի ծախսումների հիմնավորված նորմաների մշակումը։

Արդյունաբերության աշխատողների մի մասն այն կարծիքին է, թե արտադրության ավտոմատացմանը նոր հաջորդած նվաճումների պատճառով

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 33, էջ 46։





կառավարման ապարատի կոնկրետ կառուցվածքը և որոշվել նրա յուրաքանչյուր ստորաբաժանման աշխատողների թիվը։ Արտադրության կառավարման օրգանների կառուցվածքը նախագծելիս չափազանց կարևոր է ճիշտ լուծել արտադրության առանձին տեղամասերի ենթակայության հարցը։ Ղեկավարելով արտադրությունը՝ կառավարման օրգանները կադրերի ընտրությունն ու տեղաբաշխումը կատարում են այնպես, որ արտադրության ամեն մի տեղամասում աշխատի այնպիսի աշխատող, որն ունենա անհրաժեշտ գիտելիքներ ու աշխատանքը կատարելու, կամ տվյալ տեղամասը ղեկավարելու հմտություններ։ Փորձառու, որակյալ կադրերի օգտագործումն այդ դեպքում զուգորդվում է երիտասարդների ներգրավման հետ։ Հատուկ նշանակություն ունեն արտադրության ղեկավար կադրերի ճիշտ ընտրությունն ու տեղաբաշխումը, որոնք ո՛չ միայն պետք է իրենք լավ աշխատեն, այլև սովորեցնեն, ուղղություն տան, կազմակերպեն, դաստիարակեն։

Առօրյա աշխատանքի ընթացքում վարչական ղեկավարությունն իրականացվում է արտադրության ընթացքի մասին ինֆորմացիա ստանալու, իր ենթականերին ղեկավարի տված կարգադրությունների միջոցով, կարգադրությունների կատարման, ինչպես նաև արտադրության ընթացքի նկատմամբ վերահսկողության միջոցով։ Ընդսմին պետք է հստակ պահպանվի առավել կարևոր հարցերի կոլեկտիվ քննարկման սիստեմը՝ որոշումների անհատական ընդունման դեպքում և անձնական պատասխանատվությունը դրանց կատարման համար։

Ձեռնարկության կառավարումը պետք է լինի օպերատիվ։ Այդ նշանակում է ամենօրյա ներգործություն արտադրության վրա, կառավարման օրգանների սերտ կապ արտադրության հետ, ակտիվ ազդեցություն յուրաքանչյուր ձեռնարկության և արտադրական տեղամասի կոլեկտիվի գործունեության վրա՝ նրանց արդյունավետ աշխատանքի համար պայմաններ ստեղծելու նպատակով։ Կառավարման օրգանները պետք է մոտ կանգնած լինեն արտադրությանը, լավ իմանան դրա կարիքները, արագ իրականացնեն օգնությունը ձեռնարկություններին։

Վերջին տարիներին շատ բան է արվել առանձին աշխատողների իրավունքներն ու պարտականությունները որոշելու ասպարեզում. կազմվել են գործարանային վարչության որոշ բաժինների աշխատանքի տիպային դրույթներ, մշակվել են ֆունկցիոնալ հրահանգներ մի շարք պաշտոնների վերաբերյալ, կառավարման սիստեմների նախագծման սկզբունքներն ու կարգը տարբեր խմբերի ձեռնարկությունների համար և այլն։ Սակայն, կազմակերպական մեթոդները հետագա մշակման կարիք ունեն։

Դաստիարակչական մեթոդները արտադրության ղեկավարման կարևորագույն բաղկացուցիչ մասն են։ Սոցիալիստական արտադրահարաբերությունները բնութագրվում են որպես շահագործումից ազատ աշխատավորների համագործակցության և սոցիալիստական փոխօգնության հարաբերություններ։ Դրանք հիմնվում են արտադրության միջոցների հասարակական սեփականության վրա։ Արտադրության ամեն մի ղեկավար և յուրաքանչյուր աշխատավոր հավասար չափով արտադրության միջոցների սեփականատեր են և հավասարապես շահագրգռված են արտադրության զարգացմամբ և նրա արդյունավետության բարձրացմամբ։ Դրանով է բացատրվում այն, որ սոցիալիզմի օրոք արտադրության կառավարումն իրականացվում է կառավարող և կառավարվող սիստեմների աշխատողների համատեղ ջանքերով։

Մեզ մոտ կուտակված է կառավարմանը աշխատավորների մասնակցության մեծ փորձ։ Արտադրաուժերի զարգացման, արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման մակարդակի բարձրացման, աշխատանքի պայմանների բարելավման հետ աճում է աշխատողների հանրակրթական, կուլտուրական և մասնագիտական-տեխնիկական մակարդակը, իսկ դրա հետ միասին զարգանում է նրանց ակտիվ մասնակցությունը կառավարմանը։ Ներկայումս կառավարմանն աշխատավորների մասնակցության ամենամասսայական, գործնականորեն ամենաընդհանուր ձևն է սոցիալիստական մրցու-



թյունը։ ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» վերջերս ընդունված որոշումը նշեց մրցության ձևերի զարգացման ուղիները։ Իններորդ հնգամյակի տարիներին լայնորեն տարածվեցին անհատական սոցիալիստական պարտավորությունների ստանձնումը, առանձին բրիգադների, բանվորների անհատական հնգամյա պլանի կազմումը, անձնական ներդրումների պլանների մշակումն ու ստանձնումը գիտատեխնիկական առաջընթացի իրականացման, արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով։ Լայնորեն հայտնի է Լիխաչովի անվան ավտոգործարանի կոլեկտիվի նախաձեռնությունը գիտատեխնիկական առաջադիմության տեմպերն արագացնելու և արտադրության ժողովրդատնտեսական արդյունավետությունը բարձրացնելու ասպարեզում։ Շատ հետաքրքրական է Մոսկվայի «Դինամո» գործարանի մրցության կազմակերպման փորձը և այլն։

Մրցության մեջ առավել ակտիվ են ներգրավվում գիտահետազոտական ինստիտուտների, կոնստրուկտորական բյուրոների, լաբորատորիաների աշխատողները։ Այստեղ ևս ստանձնում են անհատական պարտավորություններ, ամրապնդվում է մրցությունը գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացման, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման համար։ Ներկայումս մրցությանը մասնակցում են ավելի քան 74 միլիոն բանվորներ, ինժեներատեխնիկական աշխատողներ ու ծառայողներ։ Սոցիալիստական մրցության ընթացքում ո՛չ միայն լուծվում են արտադրական խնդիրներ, այլև էական փոփոխություններ են կատարվում հոգեբանության և աշխատանքի սոցիալական վիճակում։ Որպես արտադրության իսկական տերեր, աշխատավորների կոլեկտիվները պարտավորվում են հատկացված միջոցների տնտեսմամբ կառուցել արտադրության ամբողջական օբյեկտներ։ Այդպես ծնվեցին տնտհաշվարկային բրիգադները շինարարության մեջ, որպիսիք առաջինը կազմակերպվել էին Գլխմոսշինում։ Այստեղ արդեն լրիվ մոտեցել են կառավարող և կառավարվող սիստեմները, և բանվորները, բրիգադավարի հետ միասին, այդ նախնական օղակում սկսել են կատարել արտադրության կազմակերպման և վերահսկողության ֆունկցիաները։

Վիթխարի աշխատանք են կատարում կուսակցական կազմակերպությունները, դաստիարակելով ստեղծագործական վերաբերմունք աշխատանքի նկատմամբ, նորի զգացում, նախաձեռնություն աշխատանքում, ամեն կերպ զարգացնում են քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Այս բնագավառում հսկայական փորձ են կուտակել երկրի կուսակցական կազմակերպությունները։ Բավական է վկայակոչել Չերեպովեցի մետալուրգիական գործարանի, Մինսկի տրակտորի գործարանի կուսակցական կազմակերպությունների գործունեությունը, որոնց փորձը հավանության արժանացավ և ՍՄԿԿ Կենտկոմի հատուկ որոշմամբ հանձնարարվեց տարածել այն։

Աշխատավորների կոլեկտիվների քաղաքական ղեկավարի դերը կատարում են ո՛չ միայն սկզբնական կուսակցական կազմակերպությունները, այլև շրջանային ու մարզային կազմակերպությունները։ Հայտնի է Սվերդլովսկի կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ ծավալված մրցությունը՝ գործող ձեռնարկությունների վերակառուցման հաշվին, նվազագույն կապիտալ ներդրումներով արտադրանքի թողարկումն ավելացնելու համար։ Արտադրության մասնագիտացումը խորացնելու և կոոպերացումը զարգացնելու հարցում լայն աշխատանք են ծավալել Լենինգրադի, Մոսկվայի և Սվերդլովսկի կուսակցական կազմակերպությունները։ Նրանք ակտիվ օգնում են տնտեսական ղեկավարներին՝ կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում, դաստիարակչական աշխատանք կատարում նաև տնտեսական ղեկավարների շրջանում։

Աշխատավորների դաստիարակության գործում կուսակցության ակտիվ օգնականն է լենինյան կոմերիտմիությունը։ Արդյունաբերության աշխատողների 49,7 տոկոսը կոմերիտական տարիքի երիտասարդներ են։ Կոմերիտմիության շարքերում կան ներկա և ապագա որակյալ բանվորներ, ինժեներ-

ներ, արտադրամասերի պետեր, ձեռնարկությունների դիրեկտորներ և սոցիա-
լիստական հանրային արտադրության ավելի խոշոր ղեկավարներ։ Աշխա-
տանքի առաջին տարիները ձևավորում են մարդուն շատ տարիների համար։
Կոմերիտմիության շարքերում ստացած հասարակական հմտությունները ներ-
գործում են ողջ կյանքում։
Երիտասարդական կազմակերպությունների գործունեությունը տալիս է
կրկնակի արդյունք. նրանց ազդեցությունը արտադրության, դրա արդյունա-
վետության բարձրացման վրա և դաստիարակչական վիթխարի աշխատանքը,
որ լենինյան կոմերիտմիությունը կուսակցական կազմակերպությունների
ղեկավարությամբ կատարում է երիտասարդության շրջանում։
Ամենամասսայական հասարակական կազմակերպությունը արհմիու-
թյունն է։ Այն այժմ ընդգրկում է միլիոնավոր աշխատավորների։ Ինչ վերա-
բերում է արտադրությանը մասնակցելուն, ապա արհմիություններն օժտված
են մեծ իրավունքներով։ Առանց նրանց չի կարող լուծվել աշխատողներին աշ-
խատանքի ընդունելու և աշխատանքից ազատելու, նրանց տույժ տալու, տա-
րիֆային դրույքները և արտադրական նորմաները փոփոխելու հարցը։ Նրանք
վերահսկում են աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնի-
կայի նորմաների պահպանմանը։ Արհմիութենական կազմակերպությունները
ադմինիստրացիայի հետ կնքում են կոլեկտիվ պայմանագրեր, որոնցով կող-
մերը փոխադարձ պարտավորություններ են ստանձնում։ Մշտական գործող
արտադրական խորհրդակցությունները քննարկում են արտադրական հարցերը
և հանձնարարականներ տալիս տնտեսական ղեկավարներին։
Ներկայումս երկրում կան մոտ 160 հազար մշտական գործող արտա-
դրական խորհրդակցություններ, որոնց մասնակցում են ավելի քան 44 մի-
լիոն բանվորներ, ծառայողներ և ինժեներատեխնիկական աշխատողներ։
Նրանց ամենամյա հարյուրավոր ու հազարավոր առաջարկությունները հսկա-
յական արդյունք է տալիս։
Արտադրության կառավարման և աշխատավորների կոլեկտիվ դաստիա-
րակության բնագավառում հսկայական աշխատանք են կատարում գիտա-
տեխնիկական ընկերություններն ու գյուտարարության և ռացիոնալիզացիայի
մարմինները։ Նրանք կազմակերպում են զանազան մրցույթներ, գիտատեխ-
նիկական կոնֆերանսներ ու խորհրդակցություններ, նրանց սիստեմում գոր-
ծում են ժողովրդական համալսարաններ և այլն։ Արտադրության մեջ հասա-
րակական կազմակերպությունների գործունեության նպատակն է բարձրաց-
նել արտադրության արդյունավետությունը և, միաժամանակ, կոլեկտիվնե-
րում հիմնել ստեղծագործական իրադրություն, նախաձեռնություն, համակել
աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով։ Սակայն
աշխատավորների դաստիարակության ոլորտում անհրաժեշտ արդյունք է
տալիս հասարակական կազմակերպությունների և ադմինիստրացիայի համա-
գործակցությունը միայն։ Տնտեսական ղեկավարը ինքը կոլեկտիվի ակտիվ
դաստիարակ է։ Իր օրինակով և աշխատանքի ոճով ղեկավարը նպաստում է
մասնագետների ու բոլոր աշխատավորների նախաձեռնության դրսևորմանը։
Հասարակական կազմակերպություններին նա առաջադրում է խնդիրներ,
որոնք պետք է լուծի կոլեկտիվը, կազմակերպում է արտադրության զարգաց-
ման հրատապ խնդիրների քննարկում կոլեկտիվի հետ, ուշի-ուշով վերահըս-
կում է հասարակական կազմակերպությունների հանձնարարականների կա-
տարմանը և դրա մասին տեղյակ պահում աշխատավորներին։
Հմուտ ղեկավարները նշանակալի հաջողությունների են հասնում, երբ
հենվում են արտադրական հասարակայնության վրա։ Այդ մասին է վկայում
բազմաթիվ առաջավոր գործարանների՝ Մոսկվայի Վլադիմիր Իլյիչի անվան
գործարանի, Լենինգրադի օպտիկա-մեխանիկական միավորման, Գլուխովյի
բամբակյա գործվածքների կոմբինատի, «Ուրալէլեկտրոտյաժմաշ» և այլ գոր-
ծարանների աշխատանքի փորձը։ Կոլեկտիվի համակողմանի աջակցությամբ
և մասնակցությամբ միայն կարող են հաջողությամբ լուծվել արտադրության
առջև ծառացած բարդ խնդիրները։ Ղեկավարը և հասարակական կազմակեր-





պությունները ունեն աշխատավորների դաստիարակության այնպիսի մի հզոր
զենք, ինչպիսին են բարոյական խրախուսման ամենատարբեր ուղիները։
Վերը քննարկված մեթոդներն օգտագործվում են փոխադարձ կապի և
օրգանական միասնության մեջ։ Սոցիալիստական մրցության զարգացումը
սերտորեն կապված է տնտեսական ու նյութական խթանման միջոցների հետ
և հենվում է դրանց վրա։ Հասարակական կազմակերպությունների աշխա-
տանքն ավելի արդյունավետ է դառնում դրանց լավ մշակված կառուցվածքի
և կառավարման վարչական օրգանների համապատասխան գործունեության
դեպքում։ Տնտեսական, նյութական և բարոյական խթանման հետ կապված
շատ դրույթներ հաստատվում են կազմակերպական, վարչական ակտերով։
Կառավարման մեթոդների բոլոր տարատեսակների միասնությունն ա-
ռավել լրիվ դրսևորվում է, երբ քննարկում ենք այնպիսի կոմպլեքսային մե-
թոդների էությունը, ինչպիսիք են պլանավորումը և տնտեսական հաշվարկը։
Պլանավորման կազմակերպման մեջ զուգորդվում են կենտրոնացված ղեկա-
վարությունը և առանձին օղակների տնտեսական ինքնուրույնությունը։ Սահ-
մանելով դիրեկտիվ առաջադրանքներ արտադրության ծավալի, թողարկվող
արտադրանքի որակի և հիմնական տեխնիկատնտեսական ցուցանիշների վե-
րաբերյալ, որոշելով մատակարարման աղբյուրներն ու արտադրանքի վա-
ճառքի ուղղությունները, աշխատավարձի, մի շարք դեֆիցիտային նյութերի
ու հումքի լիմիտները և այլն, պետությունը որոշում է առանձին ժողովրդա-
տնտեսական միավորների զարգացման համամասնությունները։ Դրա հետ
մեկտեղ ձեռնարկություններն ինքնուրույն կերպով պլանավորում են արտա-
դրությունը և լուծում պետության առաջադրած խնդիրները։ Ներկայումս մեր
երկրում իրականացվում են միջոցառումներ ժողովրդական տնտեսության
պլանավորման հետագա կատարելագործման նպատակով։ Դրանց թվին են
պատկանում ժողովրդական տնտեսության ու նրա ճյուղերի զարգացման եր-
կարաժամկետ կանխատեսումների մշակումը, հեռանկարային պլանավոր-
ման ամրապնդումը՝ հեռանկարային պլանները հասցնելով մինչև դրանց
առանձին կատարողները, պլանավորման գիտական մակարդակի բարձրա-
ցումը, կենտրոնացված ձևով պլանավորվող ցուցանիշների և արտադրանքի
տեսակների քանակի կրճատումը, պլանների տնտեսական և տեխնիկական
հիմնավորվածության բարձրացումը և այլն։
Առանց քննարկելու պլանները կազմելու մեթոդների էությունը, նշենք
միայն, որ պլանավորումն իր մեջ օրգանապես զուգորդում է տնտեսական
ղեկավարման բոլոր մեթոդները։ Ամենից առաջ պլանի մշակմանը ամենից
ակտիվ մասնակցում են գործնականորեն բոլոր աշխատողները։ Ռացիոնա-
լիզատորներն ու գյուտարարները առաջարկություններ են անում արտադրու-
թյան տեխնիկական մակարդակն ավելի բարձրացնելու, դրա կազմակերպումը
կատարելագործելու ուղղությամբ. ամեն մի բանվոր բացահայտում է աշխա-
տաժամանակի, նյութական-էներգետիկ և արտադրական ռեսուրսների լավա-
գույն օգտագործման ռեզերվները։
Հաստատվելուց հետո, պլանը դառնում է դիրեկտիվ, պարտադիր առա-
ջադրանք բոլոր ստորաբաժանումների համար։ Պլանը բաշխվում է ըստ ար-
տադրամասերի և ավելի փոքր օղակների, ընդ որում այդ բաշխումը հաստատ-
վում է ձեռնարկությունում տրվող հրամաններով։ Հիմնական տեխնիկա-
տնտեսական ցուցանիշների հաշվարկը հենվում է նորմաների վրա, որոնք
նույնպես հաստատվում են վարչական կարգով։ Պլանը կազմելու պրոցեսում
պետք է հստակ սահմանագծված լինեն պարտականությունները, որոշվեն
պլանը մինչև անմիջական կատարողին հասցնելու ձևերը, մեթոդներն ու ժամ-
կետները։ Յուրաքանչյուր պլանային առաջադրանք նույնպես որոշում են կոնկ-
րետ կատարողները, կատարման ժամկետը և ճշտությունը։ Հետևաբար, պլա-
նավորման ժամանակ լայնորեն օգտագործվում են կառավարման կազմա-
կերպական մեթոդները։ Դրա հետ մեկտեղ պլանավորումը տնտեսական մե-
թոդների կարևորագույն բաղկացուցիչ մասն է։ Հենց պլանի մեջ են որոշվում
առանձին աշխատողների և ամբողջ կոլեկտիվի խրախուսման չափը, հիմնա-

կան ուղղությունները ու ձևերը։ Դրանում պետք է առավելագույն չափով հաշվի առնված լինեն արտադրության բոլոր ռեզերվները։ Այն հիմնվում է գների գիտականորեն մշակված սիստեմի վրա։ Պլանի կատարման մակարդակով գնահատվում են ձեռնարկության գործունեության արդյունքները և որոշվում լրացուցիչ պարգևները։ Պլանավորումն ապահովում է գործնականորեն բոլոր մակարդակների տնտեսական ղեկավարության օրգանական կապակցումը։ Այսպես, ներարտադրական պլանը կազմելիս, որի հիմնական ցուցանիշները մշակում է ձեռնարկությունը՝ ինքնուրույն կերպով, օգտագործվում են համապետական կարգով սահմանվող գները, նյութական-էներգետիկ ռեսուրսների ծախսման նորմաները, որոնք որոշվում են ճյուղային կարգով և այլն։

Պլանային առաջադրանքների կատարումը կազմակերպելու պրոցեսում վճռական նշանակություն ունի տնտեսական հաշվարկի սկզբունքների օգտագործումը, որը տնտեսական, կազմակերպական և դաստիարակչական միջոցների վրա հենվող կարևորագույն մեթոդներից մեկն է։ Այն հիմնված է ձեռնարկությունների արտադրա-տնտեսական գործունեության արդյունքների և նրանց դրամական ծախսումների համաչափության վրա, ձեռնարկությունների ծախսերը եկամուտներով փոխհատուցելու և արտադրության շահութաբերությունն ապահովելու վրա։ Տնտեսական հաշվարկը պայմաններ է ստեղծում արտադրության էկոնոմիկայի բարելավման գործում ձեռնարկությունների, կազմակերպությունների և առանձին աշխատողների տնտեսական շահագրգռվածության համար։ Դա նպաստում է աշխատողների կոլեկտիվում խնայողություն և ժողովրդական միջոցների ծախսման նկատմամբ պետական մոտեցում դաստիարակելու գործին, որը չափազանց կարևոր է կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում։

Տնտեսական հաշվարկը, որպես պլանային ղեկավարման մեթոդ, նշանակում է մի շարք այնպիսի տնտեսական լծակների գործադրում, որպիսիք խթանում են յուրաքանչյուր ձեռնարկության զարգացումը արտադրության տեխնիկայի և կազմակերպման սիստեմատիկ կատարելագործման հիման վրա, ապահովում են պլանի կատարումը բոլոր ցուցանիշներով։ Այդպիսի լծակներ են՝ գինը, շահույթը, վարկը, որ տրվում է ձեռնարկություններին տարբեր կարիքների համար, ձեռնարկությունների ֆինանսավորման սիստեմը, ձեռնարկությունների տնտեսական շահագրգռվածությունն ու պատասխանատվությունը պայմանագրերով ստանձնած պարտավորությունների կատարման համար, ինչպես նաև՝ ձեռնարկություններում ստեղծվող խրախուսման ֆոնդերը։

Բարձրացնելով յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը, տնտհաշվարկը միաժամանակ կառավարման դաստիարակչական կարևորագույն միջոց է։ Քանի որ առանձին արտադրական օղակների տնտհաշվարկի դրույթների մշակմանը մասնակցում են մեծ թվով աշխատողներ, այն նպաստում է աշխատավորների ստեղծագործական ակտիվության աճմանը։ Առանձին օղակների տնտհաշվարկի մասին հիմնական դրույթները հաստատվում են հատուկ փաստաթղթերում, ձևակերպվում են հրամաններով ու կարգադրություններով, ընդ որին ենթադրվում է կառավարման օրգանների հստակ կառուցվածք և այլն, այսինքն՝ տնտհաշվարկն արմատավորելիս և խորացնելիս օգտագործվում են կառավարման կազմակերպական մեթոդները։

Պլանավորումը և տնտհաշվարկը կառավարման մեթոդների օրգանական զուգորդման օրինակներից են։ Իսկ փաստորեն, կառավարման որ կողմի հետ էլ մենք գործ ունենանք, միշտ էլ ստիպված ենք լինելու հենվել և՛ դաստիարակչական, և՛ տնտեսական, և՛ կազմակերպական մեթոդների վրա։ Եվ որքան ավելի լրիվ են դրանք մշակված և ավելի ստեղծագործաբար են օգտագործվում, այնքան ավելի մեծ է հաջողությունը։

**«Вопросы экономики»**
№ 10, 1972.

---